# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

11 ՆՈՅԵՄԲԵՐ · 1966

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 45-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание







# ՄԵԾ ՎԵՐԱՓՈԽՈՒՄՆԵՐ

Քառասունինը տարի առաջ Հոկտեմբերը սասանեց ողջ աշխարհը՝ Ռուսաստանի մեծ հեղափոխության գալուստն ավետելով: Վ. Ի. Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ կատարված պատմական այդ դարակազմիկ հեղափոխությունը, որպես մի վիթխարի ջահ, հին աշխարհի խավարում լուսավորեց ժողովուրդների վերջնական ազատագրության՝ սոցիալիզմի ուղին:

Այդ արմատական հեղաշրջմամբ դրվեց նոր դարաշրջանի, մարդկային հասարակության գիտակցված պատմության սկիզբը, որը հանճարեղորեն կանխատեսել էին գիտական կոմունիզմի հիմնադիրները:

Լեգենդար ԱՎՐՈՐԱՅԻ համազարկերից մինչև արդի տիեզերական երթերը անցել է գրեթե կես դար: Դա պատմության համար չնչին ժամանակահատված է, ակնթարթ: Սակայն ինչպիսի՜ վիթխարի տեղաշարժեր ու հոյակապ գործեր են կատարվել մեր երկրում: Հոկտեմբերի հայրենիքը տիտանական թռիչք է արել առորից տիեզերանավ, խավարից լույս: Առորից՝ տիեզերանա՞վ... Սրանք լոկ բառեր չեն, այլ վերընթաց շարժման հերոսական մի դյուցազներգություն, սովետական բազմազգ ժողովուրդների խիզախումներով ու մաքառումներով լի փառապանծ պատմություն:

Բուրժուազիայի քաղաքական տիրապետության տապալումն ու իշխանության նվաճումը, որը տեղի ունեցավ 1917 թվականի հոկտեմբերին, բարդ ու դժվարին խնդիր էր: Սակայն առավել ծանր ու դժվարին խնդիրներ էին կանգնած մեր երկրի բանվոր դասակարգի ու կոմունիստական կուսակցության առջև, հեղափոխության հաղթանակից հետո: Անհրաժեշտ էր առանց դրսի տնտեսական օգնության, ռեակցիոն ուժերի մահաբեր շրջապատման պայմաններում, հաղթահարել երկրի տեխնիկա-տնտեսական դարավոր հետամնացությունը, ստեղծել հզոր արդյունաբերություն, վերակառուցել գյուղատնտեսությունը, զարգացնել էկոնոմիկայի բոլոր ճյուղերը, ժողովրդի համար ապահովել բարձր կենսամակարդակ: Այդ խնդիրների բարդությունն ու ծանրությունն ավելի ակնառու կդառնան, եթե նկատի ունենանք այն ելակետը, որտեղից նորաստեղծ հանրապետությունն սկսեց սոցիալիստական շինարարությունը:

Պատերազմների և օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի հետևանքով առանց այն էլ տնտեսապես հետամնաց երկրի էկոնոմիկան ծայրաստիճան քայքայված էր: Բավական է ասել, որ 1920 թվականին, երբ սովետական պետությունը ձեռնամուխ եղավ սոցիալիստական շինարարության, երկրի արդյունաբերությունը տալիս էր գրեթե 7 անգամ պակաս արտադրանք, քան

1913 թվականին: Սովետական ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, մեծ զրկանքների ու զոհաբերությունների գնով, գրեթե ավերակների վրա, կերտեց իր լուսաշող հայրենիքը, ստեղծեց ժամանակակից հզոր արդյունաբերություն, առաջավոր գիտություն, արմատապես վերակառուցեց գյուղատնտեսությունը, իրականացրեց աննախադեպ կուլտուրական հեղափոխություն:

Անցյալ տարի ՍՍՀՄ արդյունաբերության համախառն արտադրանքը, 1913 թվականի համեմատությամբ, ավելացավ 56 անգամ, իսկ արտադրության միջոցների արտադրությունը՝ 130 անգամ: Միայն անցյալ յոթնամյակում երկրում կառուցվել ու գործարկվել են ավելի քան հինգուկես հազար խոշոր արդյունաբերական ձեռնարկություն:

Այժմ, երբ սովետական ժողովուրդները, աշխարհի ողջ առաջադեմ մարդկությունը նշում են մեծ Հոկտեմբերի փառապանծ տարելիցը, մեր հայրենիքի բոլոր ծայրերից ուրախ լուրեր են ստացվում արտադրական նոր ձեռնարկությունների գործարկման, բանվոր դասակարգի, կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատողների, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի մասնագետների հերոսական, հայրենանվեր գործերի մասին: Սովետական միլիոնավոր մարդիկ գործարաններում ու ֆաբրիկաներում, հանրային դաշտերում, գիտահետազոտական ինստիտուտներում ու լաբորատորիաներում, կուլտուրայի, լուսավորության ու առողջապահության հիմնարկներում կենսագործում են ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները, իրենց բեղմնավոր գործունեությամբ առաջ մղում կոմունիստական շինարարությունը:

Մեր երկիրն ընթանում է դեպի կոմունիզմ: Հոկտեմբերի հաղթարշավը շարունակվում է: Եթե հեղափոխականների ավագ ու միջին սերնդին վիճակվեց գերմարդկային ուժերի լարումով առաջինը փշրել կապիտալիստների ու կալվածատերերի տիրապետությունը, առաջինը կառուցել սոցիալիզմ, ապա ներկայիս սերնդին վիճակված է բարդ ու պատասխանատու միսիա՝ շարունակել հայրերի, ավագ եղբայրների ու դուստրերի գործը՝ հաստատակամորեն ու հերոսական ջանքերով իրականացնել մարդկության դարավոր երազանքը՝ կոմունիզմը:

Հեշտ բան չէ կոմունիզմ կառուցելը: Այն մեր մարդկանցից պահանջում է ուժերի գերագույն լարում, բարձր գաղափարայնություն, հավատարմություն մարքսիզմ-լենինիզմի իդեալներին, ժողովրդի ու կուսակցության գործին, լուրջ գիտելիքներ և մասսայական աշխատանքային հերոսություն: Կոմունիստական հասարակարգի կառուցման ճանապարհին շատ դժվարություններ են հանդիպում, աշխատանքային այս կամ այն ճակատում լինում են վրիպումներ, բացեր, թերություններ: Լենինյան կուսակցությունը չի թաքցնում այդ դժվարություններն ու թերությունները, այլ պլանաչափորեն, գիտական հիմքի վրա նշում է դրանց հաղթահարման ուղիները, մշակում կոնկրետ ծրագրեր ու միջոցառումներ էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի հետագա զարգացման համար: Կուսակցությունն ամեն ինչ անում է, որպեսզի սովետական մարդիկ տարեցտարի ավելի բարեկեցիկ ու լավ ապրեն: Սովետական երկրի առավել հզորացման, աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման նկատմամբ կուսակցության հոգատարության վառ վկայությունն է նոր հնգամյա պլանը, որի իրականացումն առաջընթաց քայլ կլինի կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ճանապարհին:



Նոր հնգամյակի հիմնական խնդիրներն են՝ երկրի տնտեսական զարգացման սահմանված տեմպերի ապահովումը և այդ հիման վրա ժողովրդի կենսամակարդակի հետագա բարձրացումը: Հնգամյակի ընթացքում ավելի կզարգանա ծանր արդյունաբերությունը, կհաղթահարվի գյուղատնտեսական արտադրության ետ մնալը, կավելանա ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը, մեծապես կանի ազգային եկամուտը, կբարձրանա աշխատանքի արտադրողականությունը: 1966 թվականի առաջին կիսամյակում ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում ձեռք բերված նվաճումները վկայում են, որ հնգամյա պլանը, կոմունիզմի միլիոնավոր կառուցողների ամենօրյա ջանքերով, հաջողությամբ կիրագործվի:

Սովետական Միության էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի զարմանահրաշ վերափոխությունները, երբեմնի հետամնաց երկրի վերածումը ինդուստրիալ-կոլտնտեսային հզոր տերության՝ կոմունիստական կուսակցության հմուտ ղեկավարության, սոցիալիստական կարգերի վիթխարի առավելությունների արդյունք են: Քաջ գիտենալով այդ, մեր երկրի աշխատավորները, աշխարհի բոլոր առաջադեմ մարդիկ սրտանց փառաբանում են մարդկության նոր կյանքի գարունն ավետող մեծ հեղափոխությունը, մեծարում Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցությունը՝ սովետական ժողովրդի մարտական ղեկավարին ու ավանգարդին:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը հռչակեց և բոլոր պայմաններն ստեղծեց մարդու հիմնական սոցիալական իրավունքները՝ աշխատանքի, հանգստի, ծեր հասակում նյութական ապահովվածության, կրթության ապահովման համար: Կուսակցությունը և կառավարությունը մեծ հոգատարություն են ցուցաբերում մարդկանց նյութական և հոգևոր պահանջմունքները բավարարելուն: Այդ բնորոշ է միայն սոցիալիստական պետություններին, բխում է նրանց էությունից:

Սոցիալիզմի առավելությունները ցայտուն դրսևորվում են ո՛չ միայն նյութական արտադրության ոլորտում: Տարեցտարի բազմապատկվում են նաև մեր հասարակարգի հոգևոր հարստությունները, առնանում է նոր, սովետական մարդը: Մեր հայրենիքն այժմ դարձել է առաջավոր գիտության ու բարձր կուլտուրայի, համատարած գրագիտության երկիր: Հոկտեմբերը բոլոր աշխատավորների առջև բացեց գիտելիքների յուրացման ուղին, արվեստի ու կուլտուրայի ասպարեզում աննախընթաց հաջողությունների հասնելու ուղին: Պատահական չէ, որ մեր երկրում ուսանում են 70 միլիոն մարդ:

Հոկտեմբերյան հեղափոխությունը, վերացնելով մարդու կողմից մարդու շահագործումը, հաստատեց մարդկային նոր փոխհարաբերություններ, պայմաններ և պարարտ հող ստեղծեց նոր մարդու ձևավորման համար, որն իր գործելակերպով, ներաշխարհով, համամարդկային վեհ իդեալներին հասնելու ձգտումով արմատապես տարբերվում է նախորդ ֆորմացիաների մարդուց: Սակայն դժվարին ու տևական է նոր, կոմունիստական հասարակարգի մարդու լինելության պրոցեսը: Ուստի, պարզ է, թե ինչու կոմունիստական կուսակցությունն ամեն ինչ անում է լիովին ու վերջնականապես հաղթահարելու բուրժուական հայացքների ու սովորույթների մնացուկները, ստեղծելու բոլոր պայմանները անհատի բազմակողմանի ու ներդաշնակ զարգացման համար:

Այստեղից էլ այն հսկայական ուշադրությունը, որ մեր կուսակցությունը նվիրում է աշխատավորների կոմունիստական աշխարհայացքի ձևավորմանը:

Արդի էտապում կուսակցությունը գաղափարական աշխատանքի գլխավոր խնդիրն է համարում՝ դաստիարակել նոր մարդուն, կոմունիստական հասարակարգի մարդուն, բոլոր աշխատավորներին տոգորել բարձր գաղափարայնությամբ, կոմունիզմի գործին անհուն նվիրվածության ոգով, զարգացնել կոմունիստական վերաբերմունքն աշխատանքի ու հանրային սեփականության հանդեպ:

Կոմունիստական համակեցության նորմերին համապատասխանող բարոյական վսեմ սկզբունքներն իրենց մարմնավորումն են գտել ՍՄԿԿ ծրագրում՝ կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսում: Կոդեքսի սկզբունքների իրականացումը ո՛չ միայն ապագայի մարդու գործն է, այլև այսօրվա հրատապ, կարևորագույն պահանջը, որը մեր կուսակցությունը հետևողականորեն ներկայացնում է հասարակության բոլոր անդամներին:

Արդիականության հեղափոխական բոլոր ուժերի պայքարի հաջողության համար կենսական նշանակություն ունի միջազգային կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միասնությունը: Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, հավատարիմ մարքսիզմ-լենինիզմին, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին, հաստատակամորեն պայքարել և պայքարում է հանուն սոցիալիստական երկրների եղբայրական համագործակցության, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միասնության, միասնություն, որն իմպերիալիզմի դեմ պայքարի, խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության ու սոցիալիզմի հաղթանակի ճանապարհին նորանոր նվաճումներ ձեռք բերելու կարևոր գրավականն է:

Համաշխարհային կոմունիստական շարժման միասնությունը պահանջում է, ամենից առաջ, ամրապնդել սոցիալիստական երկրների համախմբվածությունը՝ մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի, եղբայրական կուսակցությունների 1957 և 1960 թվականների խորհրդակցությունների սահմանած սկզբունքների հիման վրա:

Սակայն, ինչպես հայտնի է, Չինաստանի կոմունիստական կուսակցության և ՉԺՀ-ի ղեկավարները վերջին տարիներին վարում են այնպիսի քաղաքականություն, որը վնասում է սոցիալիստական լագերի շահերին, հակասում կոմունիստական և բանվորական կուսակցության համատեղ մշակած գծին, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին: Արդի միջազգային իրադրության պայմաններում, երբ անհրաժեշտ է համախմբված և միասնական ճակատով հանդես գալ իմպերիալիզմի ագրեսիվ գործողությունների դեմ, Չինաստանի կոմունիստական կուսակցության ղեկավարությունը հրաժարվում է ընդունել Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների առաջարկները՝ Վիետնամի ժողովրդի դեմ ԱՄՆ-ի ագրեսիային հակահարված տալու ջանքերը կոորդինացնելու վերաբերյալ:

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը հետևողականորեն իրականացնում են Հոկտեմբերի հռչակած արտաքին քաղաքականության լենինյան սկզբունքները: Սովետական պետության կեսդարյա գոյությունը ժողովրդական մասսաներին ցույց տվեց, որ խաղաղությունն ու սոցիալիզմն անբաժանելի են: Մենք խաղաղություն ենք ուզում և հաստատակամորեն պայքարում ենք դրա համար, որովհետև մեր նվիրական նպատակին՝ ամենաարդար հասարակարգի կառուցմանը, խորթ են պատերազմներն ու բռնությունը:



Սակայն իմպերիալիստներն ամեն կերպ ձգնում են կասեցնել մասսաների առաջընթացը դեպի սոցիալիզմ, մարել ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը, բորբոքել պատերազմի նոր օջախներ: Կորցնելով իրենց ոտքի տակի հողը՝ նրանք դիմում են վայրագ միջոցների. դրա ակնհայտ դրսևորումը ԱՄՆ-ի ագրեսիվ պատերազմն է Վիետնամի ժողովրդի դեմ:

Սովետական Միությունը, կատարելով իր ինտերնացիոնալ պարտքը, նյութական ու ռազմական անհրաժեշտ օգնություն է ցույց տալիս եղբայրական Վիետնամին: Ագրեսորներին չի հաջողվի ընկճել մարտնչող Վիետնամի հերոս ժողովրդին: Նրանց սանձազերծած պատերազմը դատապարտված է ձախողման:

Իմպերիալիստական երկրների ագրեսիվ շրջանները մոռանում են, որ վաղուց վերջ է տրված կապիտալի համատարած տիրապետությանը, որ ուժերի հարաբերակցությունը փոխվել է հօգուտ սոցիալիզմի: Այսօր Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս պետություններն ունեն այնպիսի ուժ, ժամանակակից ամենակատարյալ ռազմական տեխնիկայով զինված այնպիսի բանակներ, որոնք ի վիճակի են և պատրաստ՝ արժանի հակահարված տալու յուրաքանչյուր ագրեսորի: Հոկտեմբերի լույսն անմար է, Լենինի գաղափարների հաղթանակն՝ անկասելի:

Հոկտեմբե՜ր. ազատության ու հաղթանակի խորհրդանիշ: Այն առանձնապես թանկ ու հարազատ է հայ ժողովրդի համար, քանզի Հոկտեմբերն էր, որ պատմության քառուղիներում բզկտված ու արյունաքամ, բազմաչարչար ու հյուծված հայ ժողովրդին փրկեց ֆիզիկական կործանումից, տվեց իսկական ազատություն, անկաշկանդ ու համակողմանի զարգանալու լայն հեռանկարներ: Հոկտեմբերի ծնունդ Նոյեմբերին էր, որ հայ բանվորն ու գյուղացին իրենց մեծ եղբոր օգնությամբ, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ նվաճեցին իրենց ազգային անկախությունը, ապրելու ու ստեղծագործելու իրավունքը:

Հայաստանում սովետական իշխանության հաղթանակից հետո անցել է 46 տարի: Այդ կարճ ժամանակամիջոցում երկիրը դարձել է զարգացած արդյունաբերության, ժամանակակից գիտության, հիասքանչ կուլտուրա ունեցող սոցիալիստական ծաղկուն հանրապետություն, որ անճանաչելի է դարձել սովետական իշխանության տարիներին: Հայաստանի էկոնոմիկայի չտեսնված առաջընթացի պերճախոս վկայությունն է այն փաստը, որ հանրապետությունը սպառող երկրից վեր է ածվել արտահանող երկրի: Իրոք, նախասովետական տարիներին Հայաստանը գրեթե ամեն ինչ, սկսած պարզ մեքենայից մինչև քորոցն ու ասեղը, ներմուծում էր: Մինչդեռ այժմ նրա արդյունաբերական արտադրանքի ավելի քան 125 տեսակներ արտահանվում են աշխարհի մոտ 80 երկրներ՝ այդ թվում ԱՄՆ, Անգլիա, Ֆրանսիա, ԳՖՀ, Իտալիա, Բելգիա և այլն:

Մեր ինդուստրիան այժմ արտադրում է ամենաբարդ ու ամենաճշգրիտ տեսակի մեքենաներ ու սարքեր: Գիտնականների, ինժեներների ու բանվորների համատեղ ջանքերով ստեղծված ՀՐԱԶԴԱՆ, ՆԱԻՐԻ հաշվիչ մեքենաները լայն ճանաչում են գտել ինչպես մեր երկրում, այնպես էլ արտասահմանում: Էլ չենք խոսում գինու ու կոնյակի, սննդի և թեթև արդյունաբերության արտադրանքի շատ տեսակների մասին, որոնց արտադրությունը տարեցտարի լայն մասշտաբներով մեծանում է:

Վիթխարի վերելք է ապրել էներգետիկան՝ ժողովրդական տնտեսության

զարգացման ողնաշարը: Հայաստանը վաղուց դարձել է համատարած էլեկտրիֆիկացիայի երկիր: Էներգետիկ ամուր բազայի վրա բուռն զարգացում են ապրել գունավոր մետալուրգիան, քիմիական արդյունաբերությունը, մեքենաշինությունը և մետաղամշակությունը: Ստեղծվել են արդյունաբերության այնպիսի առաջատար ճյուղեր, ինչպիսիք են՝ սարքաշինությունը, ճշգրիտ մեքենաշինությունը, էլեկտրոնիկան, ռադիոէլեկտրոնիկան:

Տարեցտարի մեր արդյունաբերությունը զարգանում է ավելի արագ տեմպերով: Հենց միայն յոթնամյակի տարիներին հանրապետությունում շարք մտան ավելի քան 300 նոր գործարաններ ու խոշոր արտադրամասեր: Այդ տարիներին համախառն արտադրանքի թողարկման ծավալը կրկնապատկվեց:

Այժմ էլ Հայաստանը մի շինարարական հրապարակ է: Ամենուր կառույցներ են, հիմնվում են նոր գործարաններ, հզոր էներգետիկ օջախներ, կուլտուրայի պալատներ, բնակելի գեղեցիկ շենքեր... Այս հնգամյակում Սովետական Հայաստանի էկոնոմիկան նոր մեծ առաջընթաց քայլ կկատարի իր զարգացման ճանապարհին. արդյունաբերական արտադրանքի թողարկումը կավելանա 1,8 անգամ, էլեկտրաէներգիայինը՝ 2,3, հանքային պարարտանյութերինը՝ 3,7, սարքերի ու ավտոմատացման միջոցներինը՝ 1,7 անգամ: Մեծ վերելք կապրի նաև ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը:

Հանրապետության արդյունաբերական հին կենտրոնների՝ Երևանի, Լենինականի, Կիրովականի, Ալավերդու և Ղափանի կողքին աճում են արդյունաբերական բազմաթիվ նոր քաղաքներ՝ Հրազդանը, Քաջարանը, Ագարակը, Սևանը, Լուսավանը, Իջևանը, Աբովյանը, Արթիկը, Սպիտակը և այլն:

Սովետական իշխանության տարիներին անճանաչելիորեն փոխվել է հայկական գյուղը: Կոլտնտեսային կարգի հաղթանակի շնորհիվ գյուղի աշխատավորն այժմ ապրում է բարեկեցիկ ու կուլտուրական կյանքով: Կատարելով Վ. Ի. Լենինի պատգամը՝ հանրապետությունում վիթխարի գործ է կատարվել ոռոգման, ջրանցքների կառուցման ուղղությամբ: Ջրարբի հողատարածությունները ավելացել են ավելի քան երկուսուկես անգամ: Նախկինում անպտուղ ու ամայի հազարավոր հեկտար տարածությունների վրա այժմ փարթամորեն աճում են պտղատու և խաղողի այգիները: Գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման շնորհիվ հեշտացել է գյուղացու գործը, բարձրացել նրա աշխատանքի արտադրողականությունը: Այժմ հանրապետության հանրային դաշտերում բանում են հազարավոր տրակտորներ, կոմբայններ և գյուղատնտեսական ժամանակակից այլ մեքենաներ:

Սոցիալիզմի պայմաններում աննախընթաց զարգացում են ապրել հանրապետության գիտությունը, կուլտուրան, ժողովրդական լուսավորությունը և առողջապահությունը: Ահա մի քանի բնորոշ փաստեր, որոնք ցույց են տալիս, թե ինչպիսի հոյակապ թռիչք է կատարել հայ ժողովուրդը այդ ասպարեզներում:

Նախասովետական Հայաստանը գիտական ոչ մի հիմնարկ չուներ, իսկ այժմ դրանց թիվը հասնում է մոտ 100-ի: Հանրապետությունում կան 1300 մասսայական դպրոց, 44 տեխնիկում և ուսումնարան, 11 բարձրագույն ուսումնական հաստատություն: Հայաստանի յուրաքանչյուր չորրորդ բնակիչը սովորում է: 46 տարի առաջ մեր հանրապետությունում կար այնքան ուսուցիչ, որքան այժմ միայն Աշտարակի կամ Էջմիածնի շրջաններում: Տխուր էր նախասովետական Հայաստանի առողջապահության պատկերը: Բժշկական 16 փոքր հիմնարկ, 57 բժիշկ, 125 միջին բուժաշխատող, ահա ամբողջը: Իսկ այժմ միայն առողջապահության մինիստրության սիստեմում գործում են 1600 բուժհիմնարկներ, որտեղ աշխատում են մոտ 4500 բժիշկ և 13 հազար միջին բուժաշխատող:

Հանրապետության քաղաքներում ու գյուղերում գործում են հազարավոր գրադարաններ ու հարյուրավոր ակումբներ, կուլտուրայի տներ, կինոթատրոններ: Սոցիալիզմի օրոք նոր թափով զարգացան հայ ժողովրդի արվեստն ու գրականությունը: Մեր գրողների, նկարիչների, կոմպոզիտորների ստեղծագործությունները համընդհանուր ճանաչում են ստացել:

Սրանք լոկ թվեր ու փաստեր չեն, այլ կապիտալիզմի հանդեպ սոցիալիզմի անվիճելի առավելություններն ու գերազանցությունը հավաստող փայլուն ապացույցներ:

46 տարի առաջ, երբ Հոկտեմբերի շնորհիվ հայը ձեռք բերեց իր ապահով հայրենիքը, աշխարհի բոլոր ծայրերից լսվեցին հայկական քարավանների տունդարձի ղողանջները: Սովետական իշխանության տարիներին երկրագնդի տարբեր երկրներից Հայաստան են վերադարձել մոտ 200 հազար հայեր: Հայրենադարձությունը մեծ չափեր ընդունեց հատկապես վերջին տարիներին: Սովետական երկրի նոր քաղաքացիներն իրենց ազատ հայրենիքում ապահովվում են աշխատանքով ու բնակարանով, ազնվորեն լծվում երջանիկ կյանքի կերտմանը, անսահման հնարավորություններ ստանում լիովին բացահայտելու իրենց կարողություններն ու եռանդը: Հայրենադարձությունը շարունակվում է: Սփյուռքի տարագիր հայությունն իր փրկության միակ հանգրվանը համարում է Սովետական Հայաստանը:

Սովետական իշխանության տարիներին հայ ժողովրդի ձեռք բերած հոյակապ հաջողությունները, նրա պատմական վիթխարի նվաճումները արգասիք են կոմունիստական կուսակցության լենինյան ազգային ճիշտ քաղաքականության, Սովետական Միության բոլոր ժողովուրդների եղբայրական բարեկամության և սերտ համագործակցության: Առանց ռուս ժողովրդի և եղբայրական մյուս ժողովուրդների օգնության, մենք չէինք հասնի այսօրվա բարձունքներին: Ուստի, հայ ժողովուրդը միշտ պահպանել և այսուհետև ևս աչքի լույսի պես կպահպանի սովետական բազմազգ ժողովուրդների անխախտ բարեկամությունը:

Եկող տարի մեր երկրի բազմազգ ժողովուրդները, աշխարհի առաջադեմ մարդկությունը մեծ հանդիսավորությամբ կնշեն փառապանծ Հոկտեմբերի 50-ամյակը, իսկ 1970 թվականին՝ մեծ Լենինի ծննդյան 100-ամյակը: Այժմ մեր հանրապետության աշխատավորները ջանում են հայրենանվեր նոր սխրանքներով, նվաճումներով դիմավորել այդ մեծանշանակ տարեթվերը:

Հայ ժողովուրդը, իր եղբայրների հետ ձեռք-ձեռքի, Հոկտեմբերի նշած ուղիով վստահ առաջ է ընթանում, արժանի ավանդ մուծելով կոմունիստական հասարակարգի կառուցման վեհ գործում:



## ՀՈԴՎԱԾՆԵՐ

ՀՐ. ՇԱՔԱՐՅԱՆ

# ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ ԿՅԱՆՔԻ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆ Է

*ԵՐԵՎՈՒՅԹՆԵՐԻ արժեքավորման ամենաունիվերսալ միջոցներից մեկն է էթիկական-բարոյական բնութագրությունը։ Բարոյական արժեքավորման են ենթակա կենդանական առօրեական երևույթներից ու հարաբերություններից սկսած մինչև սոցիալական բարդ հարաբերությունները. բարոյական արժեքավորման են ենթակա մարդկային ըմբռնումներն ու պատկերացումները, սոցիալական հայացքների բոլոր հնարավոր սիստեմները՝ քաղաքական, իրավական, էսթետիկական, կրոնական և այլն։ Նման բնութագրությունը հնարավոր է դառնում շնորհիվ այն բանի, որ նշված երևույթներն, ի տարբերություն ինքնին վերցված բնական երևույթների, օբյեկտիվորեն ունեն իրենց էթիկական՝ բարոյական կողմը։ Պարզվում է, որ օնտոլոգիական (գոյաբանական) հիմք ունեն երևույթների ո՛չ միայն իմացաբանական բնութագրությունները, այլև նրանց էթիկական-բարոյական արժեքավորումը։*

*Ուրեմն, որպես սոցիալական երևույթներ, բարոյական բնութագրության են ենթակա նաև իմացական արժեքները, այդ թվում և փիլիսոփայական սիստեմները, սկզբունքներն ու կատեգորիաները։ Այդ իմաստով էլ կարող ենք պնդել, որ փիլիսոփայական ըմբռնումները, իմացաբանական առումով, բովանդակում են ո՛չ միայն ճշմարտություններ ու մոլորություններ, այլև որոշակի էթիկական բնութագրություններ, հետևաբար ունեն ո՛չ միայն իմացական, այլև էթիկական-բարոյական նշանակություն։*

*Հենց այդպիսի էթիկական-բարոյական հատկանիշներ ունեն նաև շարժման դիալեկտիկական ու մետաֆիզիկական ըմբռնումները, իսկ դրանք ենթակա են վերհանման ու իմաստավորման։*

*Դիալեկտիկայի ու մետաֆիզիկայի էթիկական բնութագրությունների գիտական արժեքավորման անհրաժեշտությունն ընդգծվում է նաև այն տեսակետից, որ ժամանակակից բուրժուական փիլիսոփայական ու բարոյագիտական սիստեմներում բոլորովին էլ հազվադեպ չեն մարքսիստական դիալեկտիկայի էթիկական-բարոյական հատկանիշների աղավաղման փորձերը։*

*Փորձենք ցույց տալ, թե իրականում, իբրև իմացական ու սոցիալական երևույթներ, բարոյական ինչպիսի արժեքավորումներ կարող են ունենալ դիալեկտիկան և մետաֆիզիկան։*



*ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ բնութագրվում է իբրև գիտություն, որն իր մեջ իդեականացված ձևով բովանդակում կամ ձգտում է բովանդակել շարժման հնարավոր տենդենցները, կողմերը, ձևերն ու դրսևորումները։ Հայտնի է նաև, որ շարժման հիմնական տենդենցը զարգացումն է. այստեղ է իրականում շարժման գլխավոր արդյունքը՝ նորի առաջացումը։ Միաժամանակ շարժման շրջանակներում նույնպիսի օբյեկտիվ տենդենցներ են վայրընթացությունը, ինչպես և փոփոխությունները՝ նույն սիստեմի շրջանակներում։ Ընդ որում, շարժման նշված տենդենցները գոյություն ունեն ո՛չ թե կողք-կողքի, իբրև իրար նկատմամբ միայն արտաքին հարաբերության մեջ գտնվող ներփակ որակներ, այլ ներքնապես հնարավոր են դարձնում մեկը մյուսին, յուրաքանչյուրը իմանենտ կերպով պայմանավորում է մյուսի իրականացումը։ Ուրեմն, դիալեկտիկան ընդգրկում է շարժման ողջ հակասական բովանդակությունը՝ և՛ վերընթացը, և՛ վայրընթացը, և՛ կյանքը, և՛ մահը, ինչ որ աշխարհում օբյեկտիվորեն գոյություն ունի։ Այլ կերպ ասած, դիալեկտիկայի մեջ, անշուշտ, առկա է բացասական հետևանքը, առկա է մահվան մոմենտը, բայց այն հեռու է միայն տվյալ բնութագրությունն ունենալուց։ Դեռևս Հեգելն է դիալեկտիկայի վերաբերյալ «հիմնական նախապաշարմունք» համարել այն, թե դիալեկտիկան ունի միայն բացասական արդյունք (տե՛ս* Гегель, Соч., т. VI, *էջ 306)։ Ինչպես ասվեց, նման բնութագրություն է վերագրվում, առաջին հերթին, դիալեկտիկայի ամենահիմնական կատեգորիային՝ հակասությանը. նույն Հեգելի արտահայտությամբ՝ այն կետին, որը տարբերում է ամեն մի վատ փիլիսոփայություն նրանից, ինչ կոչված է իրոք փիլիսոփայություն լինելու։*

*Հակասությունների մեջ միայն մերժում են տեսնում և այդ հիման վրա հակասություններից ազատվելու հուսահատ ճիգեր են գործադրում մասնավորապես ժամանակակից կաթոլիկական փիլիսոփայական դոկտրինային դավանող, այսպես կոչված, «օնտոլոգիական դիալեկտիկայի» ջատագովները։ Այսպես, կաթոլիկ փիլիսոփա Մարկի կարծիքով, հակասությունը միայն ենթադրում է հակադիր կողմերի փոխադարձ ոչնչացում, փոխադարձ բացառում, որը հասցնում է կործանման ու անելանելի վիճակի։ Հակասության բովանդակությունը, ըստ էության, սպառվում է կործանման փաստով։ Այն այլ նշանակություն չի կարող ունենալ նաև մարդու ու մարդկության համար։ Ահա թե ինչու բարեպաշտ կաթոլիկը պահանջում է հակասությունը փոխարինել ներդաշնակությամբ, իրական զարգացումը՝ էվոլյուցիայով։ Այսինքն՝ Մարկը պահանջում է «մահագուշակ» դիալեկտիկան փոխարինել կարգ ու կանոն ճանաչող, աստվածային անփոփոխ էության հարազատ մետաֆիզիկական ներդաշնակությամբ։*

*Ժամանակին հակասությունների պայքարի մոմենտից ազատվելու այդօրինակ ապարդյուն փորձեր է կատարել նաև Բ. Կրոչեն, պահանջելով «քո մահը իմ կյանքն է» բանաձևը փոխարինել իտալական լիբերալիզմի սկզբունքներին հարմարեցված «տարաձայնության համաձայնություն» սկզբունքով (տե՛ս* Б. С. Чернышев, Бенедетто Кроче и диалектика. «Вопросы философии», *1958, № 8, էջ 72)։*

*Հակասության մեջ միայն բացասականը տեսնելը, հակասության էության հոռետեսական ընկալումը նույնիսկ ծնունդ է տվել հենց էթիկական բնութա-*

գրություն ունեցող (այն էլ մինուս նշանով) «դիալեկտիկական» մի տեսության, որը հայտնի է «ողբերգական դիալեկտիկա» տխուր անունով։ Վերջինիս ստեղծողների համոզմամբ հակասությունների համընդհանրությունը, այսինքըն՝ այն փաստը, որ հակասության հաղթահարումը հեռու է անհակասական վիճակով փոխարինվելուց, երևույթների համար ստեղծում է մշտական հակասությունների ճիրաններում գտնվող թախծալի վիճակ։

Ակնհայտ է, որ նման պատկերացումների պայմաններում հակասությունը ո՛չ միայն ոչինչ դրական չի կարող խոստանալ, այլև այն դիտվում է իբրև այդպիսին ընդհանրապես, օժտված միշտ միևնույն բովանդակությամբ։ Մինչդեռ իրականում կան հակասություններ, որոնք երևույթի զարգացման առավել ցածր աստիճանի էությունն են կազմում, այն դեպքում, երբ նրանց հաղթահարումը բովանդակող իմանենտ հակասությունները բնութագրում են երևույթի զարգացման առավել բարձր աստիճանը։ Զարգացումը ո՛չ թե հակասությունների չքացում է ենթադրում, այլ միայն հակասությունների տվյալ սիստեմի հաղթահարում։ Այս իմաստով, իրոք, դիալեկտիկան պնդում է, որ յուրաքանչյուր երևույթ պատմական բովանդակություն ունի, որ ամեն ինչի վրա կործանման կնիք է դրված։ Բայց այդ ամենը հեռու է բացարձակ մահ նշանակելուց և նույնիսկ գլխավորապես մահ նշանակելուց։ Դիալեկտիկան ոչ թե ընդհանրապես նշում է անցումը գոյությունից չգոյություն, այլ հիմնականում անբանական, պատմական անհրաժեշտությունը կորցրած գոյությունից դեպի նրա չգոյությունը և հատկապես անցում դեռևս առարկայորեն գոյություն չունեցող բանականից (բանական հնարավորությունից) դեպի նրա անհրաժեշտությամբ հագեցված բանական գոյությունը։

Այդ պատճառով դիալեկտիկան ոչ միայն և հատկապես ոչ այնքան կործանում է, որքան ստեղծում։ Ստեղծումը չի կարող այլ կերպ իրականություն դառնալ, քան կործանման ճանապարհով. որևէ սիստեմ ստեղծելու համար պետք է կործանել մի այլ սիստեմ։ Իսկ կործանումը պարզապես անէացում չէ. ընդհանրապես նման երևույթներ իրականության մեջ գոյություն չունեն։ Այդ մասին են խոսում, մասնավորապես, պահպանման օրենքները։ Հեգելի արտահայտությամբ, անմիջականը մեռնում է ուրիշի մեջ, բայց այդ դատարկ բացասական կամ սոսկ ոչինչ չէ, այլ միայն «առաջինի ուրիշը», որն իր մեջ «ընդհանրապես բովանդակում է առաջինի որոշակիությունը։ Առաջինը, ուրեմն, ըստ էության պահվում ու պահպանվում է մյուսում։ Պահպանել դրականն իր բացասականում, նախադրյալի բովանդակությունն իր արդյունքում,—սա է ամենակարևորը բանական ճանաչողության մեջ» (Гегель, Соч., т. VI, էջ 308)։

Իրականում հենց մետաֆիզիկան է, որ պեսիմիստական բովանդակություն ունի. մետաֆիզիկան է, որ աշխարհը զրկում է ակտիվությունից ու ներքին կենսունակությունից, բազմակերպությունից ու նորի առաջացման հնարավորությունից. մետաֆիզիկական մտածելակերպն է, որ իրականությունը դատապարտում է շարունակ իրեն վերարտադրելու տաղտկալի պրոցեսին կամ ուղղակի հանձնում այն դանդաղ մահանալու դառը ճակատագրին։

Վերն արդեն տեսանք, թե ինչպիսի չարագուշակ բովանդակություն ունի շարժման, օրինակ, վայրընթաց կողմի մետաֆիզիկական բացարձականացումը։ Ջինսի մոտ տիեզերքն այլ ելք չէր գտնում, քան գերեզման տանող ճա-



նապարհը։ Աստղերի համար միայն մահ տեսնելը, աստղային էվոլյուցիան միայն նրանց նյութի կորստի հետ կապելը դժվար թե տեղ թողնի այլ եզրակացության։

Նույնպիսի էթիկական-հոռետեսական բնութագրություն ունի Ն. Վիների տեսակետը տիեզերքի ապագա «ջերմային մահվան» վերաբերյալ.

«Մենք խորասուզված ենք մի կյանքի մեջ, որտեղ աշխարհն ամբողջությամբ ենթարկված է թերմոդինամիկայի երկրորդ օրենքին՝ անկարգությունը մեծանում, կարգավորությունը նվազում է» (Н. Винер. Кибернетика и общество, էջ 49)։

Նման միակողմանի մոտեցումը Վիներին հնարավորություն է տալիս ենթադրելու, թե տիեզերքում կյանքը հազվագյուտ երևույթ է, որ այն սահմանափակված է նաև ժամանակային գործոններով և այլն։

«Տիեզերական» ողբերգության իմացաբանական արմատը, ինչպես ցույց տրվեց, հակասության միայն մեկ կողմով սահմանափակվելն է։ Հակասության միայն մեկ կողմի արձանագրումն ու բացարձականացումը չի կարող չհանգեցնել ոչնչության։ Նման դեպքերի համար է մեծ դիալեկտիկ Հեգելը նկատել. «Հակասությունն իր մեջ բովանդակում է ոչ միայն բացասականը, այլև դրականը... Հակասության արդյունքը միայն զրոն չէ» (Гегель, Соч., т. V, էջ 511)։

Նմանօրինակ էթիկական տխուր երանգավորում է ստանում նաև բացասման օրինաչափությունն իր մետաֆիզիկական աղավաղման մեջ։ Այդ առավել ակնհայտ է երևում մասնավորապես էկզիստենցիալիստական փիլիսոփայական սիստեմում։ Այստեղ, որպես կանոն, միակողմանիորեն բացարձակացվում է բացասման կառուցվածքի ժխտման էլեմենտը։

էկզիստենցիալիստների մոտ փառաբանվում է ամեն ինչին մինչև վերջ «ոչ» հայտարարող անհատը, ամենքից բաժանված ու ամենքի դեմ ծառացած ժխտող անհատը։ Նման փիլիսոփայությունից, էկզիստենցիալիզմի մարքսիստ քննադատ Ռ. Գարոդիի դիպուկ արտահայտությամբ, «գերեզմանային հոտ է փչում»։ «Դիալեկտիկայի Ձեր կոնցեպցիան,— դիմելով Ժ. Պ. Սարտրին՝ գրում է Ռ. Գարոդին,— միաժամանակ հանդիսանում է Ձեր վարքագծի և՛ արտացոլումը, և՛ հիմնավորումը, որը բնութագրվում է... հետևյալ կերպ՝ «Ի սկզբանե է եղել բացասումը»։

Մեզ համար բացասումն այն բանի, ինչը մեր աչքի առջև քայքայվում ու մահանում է, հանդիսանում է ծնվող ու զարգացող առավել բարձր երևույթի հաստատման ու ճանաչման միայն որոշակի մոմենտը» (Р. Городи, Ответ Жан-Полю Сартру, М., ИП, 1962, էջ 14)։ Պատահական չէ, որ էկզիստենցիալիստական փիլիսոփայությունը հաճախ ուղղակի որակվում է իբրև մահվան փիլիսոփայություն։

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ ցույց է տալիս, որ իրականությունից ու նրա իդեալականացված ձևից՝ ճշմարտությունից, խույս են տալիս հենց նույն իրականության զարգացման ընթացքով դատապարտվածներն ու մերժվածները։ Ճշմարտությունը, որպես կանոն, էթիկական դրական բովանդակություն ունի։ Դիալեկտիկան, իբրև շարժման մասին ճշմարիտ ուսմունք, չի կարող բարոյապես դրականաբար չարժեքավորվել։ Եվ, ընդհակառակը, իրական հարաբերությունների աղավաղված արտացոլումներում պետք է փնտրվեն բարոյական բացասական բնութագրությունները։

խոսելով սուբյեկտիվիզմի, մետաֆիզիկական բացասման մասին, Ֆ. Էնգելսը գրում է. «Քանի որ նրա (սուբյեկտիվ բացասման—Հր. Ծ.) ժամանակ ոչինչ չի կարող ստացվել, բացասողը, այսպիսով, պետք է անհաշտ լինի աշխարհի հետ, քրթմնջալով պախարակի ամեն գոյություն ունեցող և ամեն կատարվող բան, ամբողջ պատմական զարգացումը... Ամեն ինչ վատ է—այդ չափով այս տեսակի բացասողները պեսիմիստներ են հանդիսանում,—բացառությամբ մեր սեփական բարձրագույն անձի»:

Նույնպիսի կործանում ու թախիծ են բովանդակում շարժման էության բոլոր հնարավոր աղավաղումները, մասնավորապես, շարժման ողջ գունեղությունն ու բազմակերպությունը նրա որևէ ձևին հանգեցնելու տաղտկալի միօրինակությունը կամ շարժման կողմերից ու հատկանիշներից որևէ մեկի տավտալոգիական բացարձականացումը և այլն:

Մեր պայմաններում նման էթիկական-բարոյական ընդգծված պեսիմիստական տենդենց է բովանդակում մասնավորապես շարժման էության ռելյատիվիստական աղավաղումը: Այսպես, պրագմատիզմի վերջին խոշորագույն ներկայացուցիչ Ջ. Դյուին, երևույթները դիտելով խելահեղ շարժման մեջ, փորձում է նույնիսկ օբյեկտիվացնել, օնտոլոգիզացնել կասկածանքը: Նրա համոզմամբ սիտուացիան ինքնին կասկածելի է. կասկածանքը ոչ թե սուբյեկտին հատուկ երևույթ է, երևույթների գնահատման որոշակի մոտեցում, այլ, իբր, օբյեկտիվ սիտուացիայի հատկանիշն է: Ահա թե ինչու ամերիկյան ժամանակակից պրոգրեսիվ փիլիսոփա Պ. Կրոսերը, իրավամբ, Ջ. Դյուիի փիլիսոփայությունը համարում է որակների ու արժեքների կործանում բովանդակող, նեգատիվ փիլիսոփայություն, մի փիլիսոփայություն, որը կարող է բնութագրվել միայն նիհիլիստական հատկանիշով:

Նույնպիսի նիհիլիստական, սկեպտիկական ոգով փորձեց ընկալել դիալեկտիկան նաև երբեմնի մարքսիստ, այժմ փիլիսոփայող ռևիզիոնիստ, ֆրանսիական մտածող Ա. Լեֆևրը: Նրա կարծիքով դիալեկտիկան գոյություն ունի միայն այն բանի համար, որպեսզի մշտապես կասկածի տակ առնվի ամեն գոյություն ունեցող, որի էությունը որակների կայունության ու որոշակիության մերժումն է:

Պրոլետարիատի հեղափոխական դիրքերը լքողին անհայտ է մնում, որ այդ կարգի դատողությունները վերաբերում են ո՛չ թե դիալեկտիկային, այլ նրա միակողմանի, ռելյատիվիստական, մետաֆիզիկական աղավաղմանը: Դիալեկտիկան իր բազմակողմանիության ու խորության մեջ սովորաբար անմատչելի է մնում սոցիալական դասալիքների համար: Լեֆևրի կողմից՝ իրեն հայտնի «դիալեկտիկային» նման սկեպտիցիզմ վերագրելը ավելին չէ, քան ռելյատիվիզմի սկեպտիկական էության արձանագրում:

Մետաֆիզիկական աշխարհըմբռնման պասսիվ ու տխուր փիլիսոփայական սիստեմ լինելու մասին է վկայում նաև նրա խորապես ճայեցողական բնությունը:

Իրականության զարգացման համընդհանրական օրինաչափությունների ամեն մի ոչ ադեկվատ արտացոլմանը, որը կենդանի իրականությունից հեռանալու արդյունք է, հատուկ է հայեցողականությունը: Իդեալիզմն անգամ, որը, Մարքսի բառերով ասած, ի հակադրություն նախորդ մետաֆիզիկական մատերիալիզմի, ընդգծեց ճանաչողության ակտիվ, ստեղծագործական կողմը, ըստ էության, ինքն էլ ազատ չգտնվեց հայեցողականությունից: Նույնպես



Մարքսի արտահայտությամբ՝ իդեալիզմը սոսկ օրինականացնում է գոյություն ունեցողը և գերզգայական քող գցում նրա վրա:

Այս արատից զերծ չէր նույնիսկ հեգելյան իդեալիստական դիալեկտիկան, որքանով որ վերջինս Հեգելի մոտ միայն պատմական բովանդակություն ուներ, միջոց էր միայն անցյալը բացատրելու համար, և այն Հեգելի մոտ ոչ միայն չծառայեց իբրև իրականության հեղափոխական վերափոխման գործիք, այլև նա փորձեց բանական քող գցել պրուսական միապետական ճղճիմ, խորապես անբանական կարգերի վրա:

Միանգամայն որոշակի է, որ հայեցողականության հաղթահարումը կապված է ո՛չ թե իմացության սուբյեկտիվ, ստեղծագործ կողմի միակողմանի արձանագրման ու բացարձակացման հետ, այլ իմացության պրոցեսում օբյեկտիվի ու սուբյեկտիվի իրական փոխհարաբերության ադեկվատ իմաստավորման հետ: Պատահական չէ, որ Մարքսը նախորդ բոլոր փիլիսոփաներին (և ոչ միայն մատերիալիստներին) է ուղղում իր խոսքը, կատեգորիկ արձանագրելով, որ նրանք միայն տարբեր կերպով են բացատրել աշխարհը, մինչդեռ դիալեկտիկական մատերիալիզմի հետ է կապվում աշխարհի իրական վերափոխման պրոբլեմի լուծումը:

Ուրեմն, հենց մատերիալիստական դիալեկտիկան է բովանդակում հայեցողականության հաղթահարումը: Բայց նույնիսկ նման ուսմունքը որոշակի պայմաններում կարող է իրեն օտար հայեցողական բնութագրություն ստանալ: Այդ այն ժամանակ, երբ նա, իր՛ նկատմամբ արտաքին հանգամանքների ազդեցությամբ, անմիջականորեն չի ծառայում մարդու իմացական ստեղծագործական և պրակտիկ վերափոխիչ գործունեությանը, այլ ներկայանում է միայն իբրև տեսական կցորդ մեկի կամ մյուսի համար, որպես արձանագրումն արդեն իրականություն դարձած փաստերի կամ իբրև որոշ օրինակների կոլեկցիա, իսկ լավագույն դեպքում՝ սոսկ տեղի ունեցած երևույթի իմաստավորում և ոչ որպես որոնելու ակտիվ, ուղեցույց միջոց: Սա ևս աշխարհի միայն յուրահատուկ բացատրություն է, բայց ոչ երբեք վերափոխման միջոց: Թվում է, ասվածից հասկանալի պետք է դառնա, որ մեր փիլիսոփայության մեջ ցիտատաբանությամբ դիալեկտիկան օրինակների հավաքածուի վերածելու ջանքերը պետք է դիտվեն նաև որպես մարքսիստական դիալեկտիկան՝ իրեն իսկ օտար հայեցողական ձևով ներկայացնելու փորձեր:

Ուրեմն, հայեցողականության իմացական-տրամաբանական բովանդակությունը բացատրության ակտով սահմանափակվելն է, որը սոցիալ-քաղաքական տեսակետից անկարող է «հեղափոխական ու քննադատական» դառնալ, իսկ բարոյա-էթիկական իմաստով ենթադրում է միայն պասսիվ ու տաղտկալի վիճակ: Պասսիվության հոգեբանությունը սկզբունքորեն իր գաղափարական արտացոլումն ունի մետաֆիզիկական ու իդեալիստական դոկտրինայում:

Տեսական-իմացաբանական կարգի այս փաստարկները, թվում է, ակնառու են դարձնում, որ ո՛չ թե դիալեկտիկական, այլ մետաֆիզիկական մտածելակերպն է վիշտ ու թախիծ բովանդակում, ոչ թե դիալեկտիկան է մահվան փիլիսոփայություն, այլ մետաֆիզիկան՝ շարժման էության իր այլևայլ աղավաղումների մեջ. ոչ այլ ոք, քան մետաֆիզիկ Բերգսոնն է, որ զարգացումը դիտում էր իբրև ապագայի խժռումը անցյալի կողմից կամ հենց մետաֆիզիկ Ուայթհեդն է, որ անցյալը նույնքան խժռելու վիճակի մեջ է դնում ապագայի համար:

Երբեմնի կենսուրախ բուրժուազիայի կենսուրախ գաղափարախոս Ռ. Դեկարտը մարդու գոյության հիմքում դնում էր նրա խորհելու, մտածելու կարողությունը (նախկին իդեալիստական տեսությունները ևս մարդու ու մարդկային յուրահատուկ մեծարումներն էին, յուրահատուկ հավատ մարդու անսահման ստեղծագործական կարողությունների նկատմամբ), որը մարմնավորվեց «մտածում եմ, հետևաբար կամ» (Cogito, ergo sum) նշանավոր աֆորիզմի ձևով։ Մինչդեռ, ժամանակակից մեռնող բուրժուազիայի նույնքան մեռնող փիլիսոփայական ես-ի գոյությունն արձանագրվում է արդեն բոլորովին նոր հատկանիշով՝ գերմանական ներոպաթոլոգ Մ. Միկորեի հայտնի արտահայտության նույն գերմանական էկզիստենցիալիստ Շմիտցի կողմից ընդհանրացված ձևով՝ «տառապում եմ, հետևաբար կամ» (Doleo, ergo sum)։

Այս փաստը խոսում է նաև այն մասին, որ, եթե ոչ իմացաբանական, գոնե սոցիալ-էթիկական տեսակետից, էապես տարբերվում են ո՛չ միայն հին, կլասիկ իդեալիզմը և ժամանակակից բուրժուազիայի իդեալիստական գաղափարախոսությունը, այլև մետաֆիզիկայի հին, կլասիկ սիստեմները՝ ժամանակակից մետաֆիզիկական փիլիսոփայական սիստեմներից։ Այդ, ինչպես կնշվի ստորև, ակնհայտ է հատկապես սոցիալական երևույթների փոփոխությունների իմաստավորման բնագավառում։

Այսպես՝ խժռում, քայքայում, մահ, տառապանք, կասկածանք, լճացում, միօրինակություն—սրանք և նմանօրինակ հասկացություններն են դոմինանտ նշանակություն ձեռք բերում շարժման մետաֆիզիկական կոնցեպցիայի էթիկական-բարոյական ասպեկտի բնութագրման բնագավառում։

Բայց այդ, անշուշտ, չի նշանակում, թե մահն ընդհանրապես ներկայանում է իբրև մետաֆիզիկայի սեփականություն, իսկ դիալեկտիկան բնութագրվում է միայն կենդանությամբ ու բացարձակ օպտիմիզմով։ Դիալեկտիկայի այդպիսի էթիկական-բարոյական բնութագրությունը դիալեկտիկական կոնցեպցիայի բովանդակությունը միայն վերընթացությամբ կամ զարգացմամբ սահմանափակելու փորձ է։ Ինչպես արդեն նշվեց, բացառված է զարգացումն առանց մահվան մոմենտի, վերընթացությունը՝ առանց վայրընթացության։ Կ. Ա. Տիմիրյազևն իրավամբ որոշակի որակների ոչնչացման մեջ է տեսնում մյուսների կատարելագործման երաշխիքը։ Օրգանական աշխարհում նման ծառայություն է ստանձնում մահը։

«Հենց մահն է օրգանական աշխարհի գեղեցկության ու ներդաշնակության աղբյուրն ու պատճառը, որը վաղ թե ուշ ոչնչացնում է այն բոլորը, ինչ այլանդակ է, անօգտակար ու անհամապատասխան շրջապատի պայմաններին և եթե այդ հավիտենական պայքարը, այդ անվերջ բնաջնջումը սարսափով է լցնում մեր հոգին, ապա չպետք է մոռանանք,— դիմելով Պուշկինի խոսքերին, ավարտում է իր միտքը մեծ գիտնականը,—որ՝

...Գերեզմանի շեմքին
Մատաղ կյանքն է խաղալու
Եվ անտարբեր բնությունը
Հավիտենական գեղեցկությամբ փայլելու»[1]։

Ավելին, մահանում են ո՛չ միայն իր դարն ապրածը (իսկ հիմնականում դա է մահանում), այլև արտաքին առավել զորեղ ուժերի ներքո անհրաժեշտություն բովանդակող սիստեմի որոշ էլեմենտներ։ Հենց այս երկու կարգի երևույթները նկատի ունենալով կարելի է պնդել, որ չկա ինչպես բացարձակ պրոգրես, այնպես էլ, հետևաբար, նրա էթիկական դրսևորումը՝ բացարձակ օպտիմիզմը։ Ուրեմն, ինչպես վայրընթացությունն է ամեն մի զարգացման նախապայմանը (ստեղծումը ոչնչացում է ենթադրում), ինչպես կենդանությունն ու առաջընթացն անհրաժեշտաբար ենթադրում են նաև մահ ու հետընթացություն, այդ նույն օրինաչափությամբ բարոյական դրական որակները ենթադրում են նաև հակառակ որակների գոյությունը. առանց իրենց հակադրության, նրանք ևս կդադարեն իբրև այդպիսիք գոյություն ունենալուց։ Ինչպես կյանքի առաջ իր ծառայությունն ունի մահը (առանց որի կբացառվեր նաև կյանքի գոյությունը), այնպես էլ բարոյական դրական որակները իբրև այդպիսիք արժեքավորվում են իրենց հակադրությամբ։ Հարցը միայն նրանում է, թե այդ բնութագրություններից որն է հակադրության գլխավոր, առաջատար և որը՝ ենթարկյալ կողմը։

Մետաֆիզիկայի՝ թախծի ու մահվան, իսկ դիալեկտիկայի՝ կյանքի ու լավատեսության փիլիսոփայություն լինելն առավել ակնառու է դառնում, երբ գործ ենք ունենում նրանց սոցիալական բովանդակության, հասարակական այն ուժերի հետ, որոնց սոցիալ-տնտեսական վիճակն օբյեկտիվորեն հնարավոր է դարձնում դիալեկտիկական կամ մետաֆիզիկական փիլիսոփայական սիստեմներին ապավինելը։

Այստեղ օրինաչափությունն այն է, որ մեռնող դասակարգի փիլիսոփայությունն իր անհրաժեշտ կողմն ունի՝ նորի ժխտումը, լճացումն ու գորշությունը, որի էթիկական-բարոյական արտահայտությունն է անբավականության զգացումն ու մղձավանջային վիճակը, թախիծն ու վիշտը։ Հազիվ թե պատմության մեջ գտնվի մեռնող դասակարգ, որի գաղափարական փիլիսոփայական դավանանքն օպտիմիստական բովանդակություն ունենար։ Եվ դա միանգամայն հասկանալի է. գաղափարական սիստեմները ոչ այլ ինչ են, քան տվյալ դասակարգի սոցիալ-տնտեսական դրության արտացոլումը։ Վերջինիս դատապարտվածությունն իր անմիջական արտահայտությունն է գտնում տվյալ դասակարգի իդեաներում և համոզմունքներում, նրա պատկերացումներում ու զգացմունքներում։ Շարժման ստրուկտուրայում միայն վայրընթացություն կարող է տեսնել կամ շարժման ողջ բովանդակությունը կարող է վայրընթաց տենդենցին հանգեցնել սոցիալական այն խավը, որը վայրէջք է ապրում։ Տվյալ դասակարգի օբյեկտիվ վիճակին լիովին համապատասխան՝ նա միայն իրականության անցողիկ կողմն է ընկալում. ճշմարիտ է թվում այն, ինչ համապատասխանում է նրա սոցիալ-տնտեսական դրությանը։

Պատահական չէ, որ XVII—XVIII դարերում կենսունակ, վերելք ապրող բուրժուազիայի գաղափարախոսները՝ Դիդրոն, Կոնդորսեն, Հելվեցիուսը և ուրիշներ, նույնիսկ բնության մեջ վերընթաց շարժում չնշմարելու պայմաններում (որի մեղքն ընկնում է հիմնականում իմացության զարգացման՝ ժամանակի մակարդակի վրա), հասարակական կյանքում համարձակորեն ապավինում էին շարժման գլխավոր տենդենցին՝ վերընթացությանը։ Նույնքան անհրաժեշտություն է բովանդակում նաև այն երևույթը, որ բուրժուական հարաբերությունների զարգացման հետագա էտապում այդ հարաբերությունների ջատագովներն առավել մեծ չափով հակվում են դեպի շրջապտույտային տեսության կողմը, կամ երբ պատմության խաչուղիներում մոլորված բուրժուա-

[1] Կ. Ա. Տիմիրյազև, Դարվինի տեսության համառոտ ուրվագիծը. էջ 132։

զիան բարբաջում է միայն ընդհանրապես «սոցիալական փոփոխությունների» մասին, մի փոփոխություն, որը զուրկ է որևէ օրինաչափությունից կամ տենդենցից։ Ի հակադրություն բուրժուական գաղափարական աշխարհի այս «օպտիմիստական» թևին՝ ավելի «ռեալիստ» են ներկայանում նրանք, ովքեր ունայնություն ու մահ են «երգում», որն իրականում ոչ այլ ինչ է, քան իր դասակարգի մահը իբրև ողջ մարդկության մահ ներկայացնելը։

Բուրժուական իրականության պայմաններում գործող մտածողին սովորաբար սուբյեկտիվորեն անհայտ է մնում իր քարոզած իդեաների սոցիալական պատճառավորումը։ Օրինակ, Ն. Վիներին թվում է, թե իր հոռետեսական պատկերացումներն աշխարհի մասին սոսկ «պրոֆեսիոնալ գիտնականի ինտելեկտուալ պեսիմիզմ» է։ Իրականում սկզբունքի աստիճանի բարձրացված նման հայեցակետը հեռու է միայն գիտական դետերմինավորում կամ իմացաբանական կարգի արմատներ ունենալուց։ Այն միաժամանակ խորապես սոցիալական երևույթ է և, նույնիսկ առաջին հերթին, ունի սոցիալական մոտիվներ։ Այս է, որ Վիներն անկարող է ընկալել։ Բայց և այնպես մեծ մտածողին գոնե որոշ սահմաններում շոշափելի է դառնում այդ ճշմարտությունը ևս։

«Մենք,—գրում է Վիները,— մեր տեխնիկական բարելավումների ստրուկներն ենք». «Մենք այնքան ռադիկալ կերպով ենք փոխել միջավայրը, որ այժմ, որպեսզի գոյություն ունենանք այդ միջավայրում, պետք է փոփոխենք մեզ։ Մենք այլևս անկարող ենք ապրել հին միջավայրում։

Պրոգրեսն ստեղծում է ոչ միայն նոր հնարավորություններ ապագայի համար, այլև նոր սահմանափակություններ։ Թվում է, որ ինքը՝ պրոգրեսը և էնտրոպիայի աճման դեմ մեր պայքարը, ըստ էության, պետք է վերջանան մեզ կործանման տանող այն շավիղի վրա, որից մենք ձգտում ենք դուրս գալ» (Н. Винер. Кибернетика и общество, էջ 58)։

Այսպես, շարժումը միայն վայրընթացություն է ներկայացնում այն սոցիալական սիստեմի համար, որին վիճակվել է ղեկավարվել շարժման այդ տենդենցով. հակասությունը չարիք է դառնում միայն այն խավերի համար, որոնց բաժինը հակասության լուծման մեջ միայն բացասական արդյունքն է։ Մեռնող հասարակարգի փիլիսոփայությունը նույնքան մահվան փիլիսոփայություն է, որքան տվյալ կարգը մոտենում է իր հոգեվարքին։ Նույն օրինաչափությամբ դիալեկտիկական մտածելակերպի շողերը, որպես կանոն, իրենց արտացոլումն են գտնում առաջավոր դասակարգի գաղափարական զինանոցում։ Սոցիալական կյանքի զարգացման ժամանակակից էտապում բուրժուազիան այլևս չի կարող հիմնականում չղեկավարվել շարժման վայրընթացության տենդենցով, իսկ վերընթաց տենդենցի կրողը պրոլետարիատն է։ Համապատասխանաբար բուրժուական գաղափարախոսության մեջ իրականության փիլիսոփայական իմաստավորումն ամենից առաջ թախիծ է բովանդակում, իսկ պրոլետարական աշխարհըմբռնումը՝ դիալեկտիկական մատերիալիզմը, իր հիմնական բովանդակությամբ հայացքների կենսալից ու լավատեսական սիստեմ է։

---

Գ. ՍԻՄՈՆՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ԲՆՈՒՅԹԸ[1]

Մեր երկրում կոմունիստական շինարարության գլխավոր առանձնահատկություններից մեկն այն է, որ այդ պրոցեսում՝ ընդ որում ոչ միայն հոգևոր, այլև նյութական արտադրության բնագավառում աշխատանքն ավելի ու ավելի է հարստանում ստեղծագործական բովանդակությամբ, դրսևորում իր ստեղծարար կողմերը:

Ամեն մի նպատակահարմար աշխատանք, անկախ իր կոնկրետ պատմական ձևերից ու պայմաններից, անպայման ստեղծագործական բնույթ ունի այն իմաստով, որ հենց նրանով են ստեղծվում մարդկանց գոյության և, ամբողջությամբ վերցրած, հասարակության զարգացման համար անհրաժեշտ նյութական ու հոգևոր արժեքներ: Աշխատանքը նպատակահարմար գործունեության մի այնպիսի պրոցես է, որի ընթացքում արտաքին աշխարհի առարկաներն ու պայմանները վերափոխվում ու հարմարեցվում են մարդու այն պահանջմունքներին, որոնց բավարարման համար այդ առարկաներն ու պայմաններն իրենց բնական վիճակով պիտանի չեն:

Այնտեղ, որտեղ նման պրոցես չկա և, հետևապես, որտեղ տեղի է ունենում բնության առարկաների պարզ ու անմիջական յուրացում և արտաքին աշխարհի պայմաններին պարզ հարմարեցում՝ առանց դրանք վերափոխելու, այնտեղ աշխատանք չկա: Մարդկային ոչ բոլոր գործողություններն են աշխատանք համարվում: «Գործունեությունն» ու «աշխատանքը» նույնական հասկացություններ չեն: Ամեն մի աշխատանք գործունեություն է, բայց ոչ բոլոր գործունեություններն են աշխատանք: Աշխատանք կարելի է համարել մարդկային նպատակահարմար այն գործունեությունը միայն, որն ինչ-որ նյութական կամ հոգևոր արժեք է ստեղծում մարդկանց գոյության և հասարակության զարգացման համար: Այստեղից հասկանալի է, որ հենց նյութական ու հոգևոր արժեքների ստեղծումն է աշխատանքն աշխատանք դարձնում և որոշում նրա ներքին բնույթն ու էությունը:

Շնորհիվ այդ հանգամանքի, աշխատանքն իր էությամբ ու բնույթով անհրաժեշտաբար և անպայման դառնում է ստեղծագործական: Այսպիսով, ամեն

---

[1] Տպագրվում է քննարկման կարգով.—Խմբ.:

մի աշխատանքի ներքին էությունից բխում է նրա ստեղծագործական բնույթը:

Բայց աշխատանքի այդ առանձնահատկություններից ամենևին էլ չի հետևում, թե ամեն մի ձևի մեջ և ամեն պայմաններում կատարվող աշխատանքն անպայման ստեղծագործական է: Ստեղծել մի որևէ բան (արժեքներ) և իր մեջ բովանդակել ստեղծագործական էություն, ամենևին էլ չի նշանակում արդեն լինել ստեղծագործական: Բանն այն է, որ ստեղծագործական էությունը, կամ բուն իսկ ստեղծագործությունն ամեն մի աշխատանքում հանդես է գալիս սոսկ որպես հնարավորություն, որը ո՛չ միշտ և ո՛չ բոլոր պայմաններում է վերափոխվում իրականության: Լինում է նաև ոչ ստեղծագործական աշխատանք նույնիսկ հոգևոր (մտավոր) գործունեության բնագավառում:

Ոչ ստեղծագործական աշխատանքը դասակարգային հասարակության մեջ ժողովրդի չահագործվող կանգվածների բաժինն է: Դա ծանր, հյուծող, ուժասպառ անող, ոչ որակյալ աշխատանք է, միապաղաղ, մեքենայական (մեխանիկական) և միակերպ, կրկնվող, ձանձրալի, հետաքրքրավուրկ մի աշխատանք, որը չի առաջացնում ակտիվություն, որոնումներ, խանդավառություն, ոգևորություն, սխրանքներ: Որպես բնորոշ օրինակ, վերցնենք արդի, տեխնիկապես բարձր կարգացում ունեցող կապիտալիստական երկրները, թեև դա կարելի էր է՛լ ավելի ցայտուն կերպով ներկայացնել գաղութային երկրների ստրկական աշխատանքի կամ հենց կապիտալիստական երկրներում գոյություն ունեցող ռասայական դիսկրիմինացիայի օրինակով:

Կապիտալիստական արտադրության հարահոս-կոնվեյերային սիստեմի կարգացման պատճառով, մի սիստեմ, որը մեր օրերում լրացվում ու միահյուսվում է մասնակի ավտոմատացմամբ, ինչպես նաև այն պատճառով, որ ամենուրեք կիրառվում են աշխատանքի ամենահնարավոր քրտնաքամ մեթոդներ ու ձևեր, բանվորն այժմ, որպես ընդհանուր կանոն, չի տալիս ոչ միայն ամբողջական արտադրանք, այլ նույնիսկ որևէ արտադրանքի ամբողջական մաս: Այդ պայմաններում բանվորի «աշխատանքը» բնութագրում է ոչ թե արտադրանքների պատրաստումը, այլ մի որոշակի, խստորեն ռեգլամենտի ենթարկված, նրա մարմնի մասերի՝ ձեռքերի, ոտքերի, մարմնի ծայրահեղորեն արագ կատարվող միակերպ շարժումները, որոնք հաճախ այլանդակ պար են հիշեցնում:

Բերենք մի քանի բնորոշ արտահայտություններ, որոնք ցույց են տալիս, թե ժամանակակից կապիտալիստական ձեռնարկություններում բանվորի աշխատանքը որչափով է զրկված ստեղծագործական էությունից: «...Մարդկանց մեծամասնության համար,— ասում է ԱՄՆ-ի հայտնի ավտոմոբիլային արքա Հենրի Ֆորդ հայրը,— մտածելու անհրաժեշտությունը պատիժ է: Նրանց համար իդեալական է այն աշխատանքը, որը ստեղծագործական բնազդին ոչ մի պահանջ չի ներկայացնում» (Генри Форд. Моя жизнь, мои достижения. Ленинград. 1926 թ., էջ 100): Ֆորդը բանվորների համար որպես ընդհանուր կանոն է ձևակերպում՝ «բանվորի մտածողական ընդունակությանը ներկայացվող պահանջների կրճատումը և նրա շարժումների պակասեցումը մինչև նվազագույն սահմանը... Կատարելու միևնույն բանը, միևնույն շարժումով» (նույն տեղը, էջ 80):

Ըստ Թեյլորի՝ ժամանակակից կապիտալիստական արտադրության ռացիոնալացման գլխավոր մարգարեի, բանվորին ներկայացվող հիմնական պահանջն



այն է, որ նա լինի «բթամիտ, անտարբեր և նմանվի եզան» (Тейлор Ф. У., Тейлор о тейлоризме, М-Л., 1931, էջ 45): Թեյլորը պնդում է, թե «...մի մարդ, որ ֆիզիկապես ընդունակ է ձուլակոճղեր տեղափոխել և բավականաչափ անտարբեր ու բթամիտ է, որպեսզի իր համար ընտրի այդ պրոֆեսիան, հազվադեպ է ընդունակ լինում ըմբռնելու ձուլաձողերի տեղափոխման գիտությունը, և իր աշխատանքի կատարմանը հարմարված բանվորի կողմից իր աշխատանքի կատարման գիտությունը հասկանալու նրա այդ անընդունակությունն ավելի բարդ աշխատանքի անցնելուն համեմատ է՛լ ավելի է ակներև դառնում» (նույն տեղը, էջ 59):

Պարզ տեխնիկական փորձի, բարձր տեխնիկական մարզանքի, վարժության ու ճարպկության հիման վրա ամենամանր և նեղ գործողություններում մեքենան օգտագործելու հմտությունն ամենևին էլ չի խոսում այն մասին, թե կապիտալիստական ձեռնարկություններում բանվորներն օժտված են համապատասխան տեխնիկական և գիտական գիտելիքներով: Ս. Լիլին, խոսելով կապիտալիստական արտադրության մասին, նշում է, որ «ավելի քան հարյուր տարի շարունակ գերիշխել է որակյալ բանվորներին ոչ որակյալ ու կիսաորակյալ բանվորներով մշտապես փոխարինելու տենդենցը... Աննշան չափազանցություն կլինի ասել, որ ոչ որակյալ բանվորն արդյունաբերական հեղաշրջման հրեշավոր ծնունդն է» (С. Лилли, Автоматизация и социальный прогресс, 1958, էջ 153): Կլոդ Վենսանը և Վիլյամ Գրոսսենը հարցը դնում են ավելի լայն և խիստ: «Պրոֆեսիոնալ ապաորակավորման տենդենցը,— ասում են նրանք,— նոր բան չէ: Այն կարմիր թելի պես անցնում է տեխնիկայի կարգացման ամբողջ պատմության ընթացքով» (К. Венсан, В. Гроссен, Курс на автоматизацию, ИЛ, 1952, էջ 131):

Ֆրանսիական բուրժուական սոցիոլոգ Ժ. Ֆրիդմանը իր «Գլխովին ջախջախված աշխատանք» գրքի՝ «Պահանջվում են ապուշներ» բնորոշ խորագիրը կրող գլխում բերում է իր զրույցը «Շվեյցարիայի շատ լավ կազմակերպված ժամացույցի գործարաններից» մեկի աշխատանքի հոգեբանության գծով մի մասնագետի հետ: Նրա հետ ունեցած զրույցում մասնագետը պնդել է, թե ամենամանր գործողությունների տրոհված աշխատանքը ոչ միայն ծանր է, այլև «մեր արտադրամասերում կատարվող շատ գործողություններ կարող էին, և պետք է հանձնարարվեին ապուշներին» (տե՛ս «за рубежом», 1961, էջ 22):

Կապիտալիստական արտադրության տեխնիկայի ու տեխնոլոգիայի այդ առանձնահատկությունները, որոնք ավելի ու ավելի էին թուլացնում ու շարունակում են թուլացնել աշխատանքի ստեղծագործական բնույթը կապիտալիստական ձեռնարկություններում, իր ժամանակին բնութագրվել են Մարքսի և Էնգելսի կողմից: Խոսելով կապիտալիստական ֆաբրիկային աշխատանքի մասին, Էնգելսը, օրինակ, նշում է, որ աշխատանքը «բանվորին հոգևոր գործունեության սնունդ չի տալիս և այնուամենայնիվ նրանից այնքան լարված ուշադրություն է պահանջում, որ նա ուրիշ ոչ մի բանի մասին չպետք է մտածի...: Աշխատանքն ամենաբթացնող և ամենաթուլացնող կերպով ներգործում է ինչպես բանվորի մարմնի, այնպես էլ նրա հոգու վրա» (К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. 4, էջ 480):

Իհարկե, դասակարգային հասարակությունների պայմաններում, այդ թվում կապիտալիզմի օրոք ևս, լինում են նաև շահագործվող կանգվածների թվին պատկանող մարդկանց ոգևորված գործունեության և ստեղծագործական աշ-

խատանքի շատ դեպքեր, որպիսի հանգամանքը նրանց հպարտություն և բավականություն է պատճառում: Դասակարգային հասարակության պատմությունը գիտե շատ հիանալի վարպետներ, ճարտարապետներ, քանդակագործներ, գյուտարարներ ու կոնստրուկտորներ, յուրօրինակ ժողովրդական տաղանդներ հասարակ մարդկանցից, որոնք սերունդներին թողել են հիասքանչ ստեղծագործություններ:

Բայց դասակարգային հասարակություններում աշխատանքային ստեղծագործությունն ընդգրկում է գերապանցապես մտավոր գործունեության, ինտելիգենցիայի գործունեության բնագավառը, առանձնապես արվեստի և գիտության ոլորտը և միայն աննշան չափով՝ ֆիզիկական աշխատանքի բնագավառը: Դասակարգային հասարակությունում ոչ ստեղծագործական աշխատանքի գլխավոր պատճառն այն է, որ աշխատավորները տքնում են գերապանցապես ուրիշների, այլ ոչ թե իրենց համար, ուստի և նրանց մոտ մղում չկա դեպի խանդավառությունը, ոգևորությունը, ստեղծագործական որոնումները, չկա հասարակական պարտք և ձգտում, առաջավոր, ոգևորող հասարակական նպատակ, հասարակական վեհ գաղափարներ:

Ստեղծագործական աշխատանքն աչքի է ընկնում որոշ գիտական, ինտելեկտուալ բովանդակությամբ: Ամեն մի աշխատանք ենթադրում է որոշ ինտելեկտուալ բովանդակություն, անմիջական արտադրողների կուլտուր-տեխնիկական մակարդակի որոշ մինիմում: Եթե աշխատանքում չկա ինտելեկտուալ բովանդակության այդ որոշ մինիմումը, ապա անհնար է բուն իսկ աշխատանքը, մարդկանց արտադրական պրակտիկ գործունեությունը, որովհետև արտաքին աշխարհի առարկաների ու պայմանների վերափոխումը և մարդկանց պահանջմունքներին դրանց հարմարեցումը ենթադրում է ոչ միայն ֆիզիկական (մկանային) ուժ, այլև մտավոր ընդունակություններ՝ բնության առարկաների բնական առանձնահատկությունները հասկանալու որոշակի կարողություն:

Ստեղծագործական աշխատանքում, նյութական շահագրգռվածությունից բացի, դրսևորվում է նաև բարոյական մոմենտը՝ իր աշխատանքի հասարակական արդյունքի և գնահատության նկատմամբ աշխատողի խոր կգացմունքը և հպարտությունը:

Ստեղծագործությունն աշխատանքում անփոփոխ դրություն չէ: Այն կարող է փոխվել նրա հիմնական գործոնների կարգացման հետևանքով: Ստեղծագործական աշխատանքի բոլոր հիմնական հատկանիշների ու առանձնահատկությունների մեջ ամենակարևորը, մեր կարծիքով, նրա ինտելեկտուալ բովանդակությունն է, այսինքն՝ անմիջական արտադրողների կուլտուր-տեխնիկական ձգտումների մարմնացումը: Ստեղծագործաբար նորի որոնումները, ճարտարամտությունը, հնարագիտությունը, որպես ստեղծագործական աշխատանքի բնորոշ գծեր, հիմնվում են նախ և առաջ աշխատողի կուլտուր-տեխնիկական մակարդակի վրա: Որքան ավելի բարձր է աշխատանքի ինտելեկտուալ բովանդակությունն, այսինքն՝ անմիջական արտադրողների կուլտուր-տեխնիկական մակարդակը, այնքան ավելի բարձր է աշխատանքի ստեղծագործությունը: Այստեղից հետևում է, որ տարբեր որակավորում ունեցող, տարբեր կուլտուր-տեխնիկական մակարդակի վրա կանգնած, արտադրության տարբեր ճյուղերում աշխատող, նյութական ու հոգևոր արտադրության տարբեր մասնագիտություններ



ունեցող մարդկանց աշխատանքային ստեղծագործության աստիճանը տարբեր է:

Բուրժուազիայի գաղափարախոսները պնդում են, թե ստեղծագործական կարող է լինել ոչ թե ֆիզիկական, այլ սոսկ մտավոր աշխատանքը: Բայց դա ամենևին էլ այդպես չէ: Ոչ միայն մտավոր, այլև ֆիզիկական աշխատանքը կարող է ստեղծագործական լինել, եթե այն միացած է աշխատողի բարձր կուլտուր-տեխնիկական մակարդակի և պրոֆեսիոնալ որակավորման հետ: Մյուս կողմից լինում են դեպքեր, երբ ոչ միայն ֆիզիկական, այլև մտավոր աշխատանքը զուրկ է ստեղծագործական բնույթից, երբ այն պարզ է և կատարվում է միապաղաղ ու միակերպ:

Աշխատանքի ստեղծագործական բնույթը, ինչպես նաև աշխատանքի ինտելեկտուալ բովանդակության մակարդակն ու հարուստ լինելը, այսինքն՝ անմիջական արտադրողների կուլտուր-տեխնիկական մակարդակը, որոշվում են ոչ միայն պարզապես բուն աշխատանքով, այլև կոնկրետ պատմական պայմաններով, նախ և առաջ՝ արտադրության տվյալ եղանակի զարգացման տնտեսական պահանջմունքներով: Վերը նշված էր, որ ոչ ստեղծագործական աշխատանքը դասակարգային հասարակություններում ժողովրդի շահագործվող զանգվածների գործունեության ընդհանուր և հիմնական գիծն է: Սակայն հասարակության պատմության մեջ վրա է հասնում մի այնպիսի վիճակ, երբ յուրաքանչյուր մարդու գործունեության բոլոր ասպարեզներում աշխատանքը ձեռք է բերում ստեղծագործական բնույթ:

Աշխատանքը ստեղծագործության վերածվելու առաջին և արմատական պայմանն այն է, որպեսզի այն դադարի ուրիշի՝ շահագործողների համար աշխատանք լինելուց և դառնա աշխատանք իր համար, աշխատավորների համար, որպեսզի սպառման չափը դառնա աշխատանքի չափ և գործի՝ «ով չի աշխատում, նա չի ուտում» սկզբունքը, այսինքն՝ տեղի ունենա անցում դեպի սոցիալիստական հասարակություն:

Սակայն աշխատանքի ստեղծագործական բնույթը լիովին չի դրսևորվում սոցիալիզմի ժամանակ և այն միատեսակ չէ նրա զարգացման բոլոր էտապներում: Օրինակ, մեր երկրում սոցիալիզմի զարգացման սկզբնական շրջանում (20—30-ական թվականներ) աշխատանքի ստեղծագործությունը սահմանափակվում էր արտադրության դեռևս անբավարար գիտա-տեխնիկական հագեցվածությամբ, աշխատավորների մի զգալի մասի անբավարար կուլտուր-տեխնիկական մակարդակով, շատ դեպքերում ծանր և ոչ որակյալ աշխատանքի գոյությամբ, աշխատանքի վնասակար պայմանների առկայությամբ և այլն: Բայց գիտատեխնիկական առաջադիմության, աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի և պրոֆեսիոնալ որակավորման աճի, աշխատանքի ինտելեկտուալ բովանդակության մեծանալուն համեմատ աստիճանաբար ստեղծագործական աշխատանքի հավասար և ընդհանուր հիմունքներ են ստեղծվում նրա կիրառման բոլոր բնագավառներում:

Ներկայումս, մեր արտադրության գիտատեխնիկական հագեցվածության անշեղ և սրընթաց աճը, արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման լայն զարգացումը՝ էլեկտրոնային տեխնիկայի կիրառումը, կյանքի կոմունիստական սկզբունքների զարգացումն արմատապես փոխում են աշխատանքի բովանդակությունն ու կառուցվածքն արտադրությունում, մեծացնում են նրա մտավոր բովանդակության ծավալը, բանվորների ու կոլտնտե-

սականների աշխատանքը ավելի ու ավելի են մոտեցնում բարձր որակավորում ունեցող ինժեներա-տեխնիկական և ագրոնոմիական ինտելիգենցիայի աշխատանքին: Կոմունիզմի ժամանակ աշխատանքի բոլոր տեսակները, որտեղ էլ այն գործադրվի, իրենց ստեղծագործական բնույթով հավասար նշանակություն կունենան, իսկ այդ հիմնված կլինի արդի գիտության, բարձր նյութատեխնիկական բազայի վրա:

Սոցիալիզմի ժամանակ աշխատանքի ստեղծագործության աստիճանի հիմնական ցուցանիշները հանդիսանում են՝ ա) աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակը, նրանց պրոֆեսիոնալ որակավորման աստիճանը. բ) մասսաների մեջ նորարարության և գյուտարարության ծավալման աստիճանն ու խորությունը. գ) սոցիալիստական մրցության մակարդակը և ընդհանուր վիճակը: Սկսենք վերջինից:

Սոցիալիզմի ժամանակ մարդկանց աշխատանքի և հանրայնորեն-օգտակար գործունեության մեջ ստեղծագործական ակտիվության ձևը սոցիալիստական մրցությունն է: Սոցիալիստական մրցության բնորոշ առանձնահատկությունը կայանում է նրանում, որ այն ժողովրդական մասսաների ստեղծագործական նախաձեռնության, հնարագիտության, գյուտարարության զարգացման համար լայն ասպարեզ է բացում նրանց գործունեության բոլոր բնագավառներում: Բնորոշելով սոցիալիստական մրցությունը, Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ այն աշխատավորներին ներգրավում է «այնպիսի աշխատանքի ասպարեզը, որտեղ նրանք կարող են երևան բերել իրենց, ծավալել իրենց ընդունակությունները, դրսևորել տաղանդները, որոնք ժողովրդի մեջ անսպառ աղբյուր են և որոնց կապիտալիզմը ճմլել, ճնշել, խեղդել է հազարներով ու միլիոններով» (Երկեր, հատոր 26, էջ 293—294) :

Սոցիալիստական մրցությունը, որպես աշխատանքի մարդկանց փոխհարաբերությունների որոշակի ձև, բխում է նրանց ակտիվության, գիտակցական ստեղծարար գործունեության բնույթից և գոյություն ունի մեր հասարակության ամբողջ պատմության ընթացքում: Աշխատանքի մարդը միշտ էլ ձգտում է ցույց տալ նորը, գործունեության, վարպետության, մտքի սրության, ակտիվության, բարձր էֆեկտիվության նմուշներ, հասնել ավելի բարձր աշխատանքային ցուցանիշների, ուրիշներին գերազանցել իր գործունեության ընթացքով ու արդյունքներով: Բայց դասակարգային հասարակությունների, այդ թվում կապիտալիզմի, ճնշող և շահագործողական պայմանները խեղդում են ազնիվ ու անշահախնդիր մրցությունը, խեղաթյուրում նրա բնույթը, նրա մեջ մուծում են ստի, խաբեության, աչքակապության, խորամանկ, անազնիվ կոմբինացիաների տարրեր, մարդկանց անձնական շահերը հակադրում են միմյանց, մրցությունը դարձնում են կոնկուրենցիա մարդկանց միջև, վերջիններիս դարձնում են ախոյաններ, էգոիստներ, արմատավորում են՝ «մարդը մարդու համար գայլ է», «բոլորի պատերազմը բոլորի դեմ» սկզբունքը և այլն:

Հասարակությունների պատմության մեջ առաջին անգամ սոցիալիզմն է մրցությունն ազատում ճնշման, ստի, խաբեության, ու ախոյանական մրցակցության բոլոր ձևերից: Սոցիալիստական մրցությունն արտահայտում է սոցիալիզմի և կոմունիզմի արտադրահարաբերությունների՝ շահագործումից ու ճնշումից ազատագրված և իրենց նպատակների, խնդիրների ու պրակտիկ գործողությունների միասնությամբ ձուլված աշխատանքի մարդկանց համերաշխությունը, բարեկամությունը, համագործակցությունը:



Յուրաքանչյուր մարդու ընդունակությունները խիստ բազմազան են և համակողմանի: Դրանք ընդգրկում են մարդու ֆիզիկական ու մտավոր տվյալները, ձիրքերն ու հակումները, նրա ինտելեկտուալ աշխարհը, բարոյական վարքագիծը, կամքն ու հույզերն արտահայտող գործողությունները, նրա ձգտումներն ու շահերը: Մարդիկ միշտ էլ միմյանցից տարբերվել են, տարբերվում են և տարբերվելու են, մի կողմից, նրանց ֆիզիկական ու մտավոր ընդունակությունների աստիճանով, խորությամբ, կամքի ու հույզերի դրսևորման պայծառությամբ, մյուս կողմից՝ այդ ընդունակությունների ու ձիրքերի տեսակների ու երանգների բազմազանությամբ: Սոցիալիստական մրցությունը հզոր գործոն է անհատական այդ հարստությունները դրսևորելու և օգտագործելու ասպարեզում:

Իմպերիալիստական բուրժուազիայի գաղափարախոսները կոմունիզմը զրպարտում են պնդելով, թե նա, վերացնելով մասնավոր սեփականությունն ու անհատական (մենատնտեսային) նախաձեռնությունը, դրանով իսկ իբր վերացնում է մրցության և անհատական ընդունակությունների ու ձիրքերի իսկական աղբյուրները, համահարթում է այդ ընդունակությունները, մարդկանց «լուծում է» մի ընդհանուր և «մեծ» հասարակական կոլեկտիվում, ստեղծում է «ընդհանուր ստանդարտ» և մարդկանց հոգևոր ու կենսական շահերի և պահանջմունքների աղքատացում: Իհարկե այդ բոլոր պնդումները դժվար չէ հերքել ինչպես սոցիալիստական, այնպես էլ կապիտալիստական երկրների կյանքից վերցված կոնկրետ փաստերի հիման վրա:

Ըստ ունակությունների կոմունիստական աշխատանքի սկզբունքը և սոցիալիստական մրցությունը (կոմունիստական հասարակության թե առաջին, թե բարձրագույն փուլում), ընդհակառակը, ամուր հիմք ու լայն հնարավորություններ է ստեղծում այդ ունակությունները դրսևորելու, ձևավորելու և գործնականապես ու նպատակահարմար օգտագործելու համար, մի բան, որը բացառիկ կերպով օգտակար է ինչպես ամբողջ հասարակությանը, այնպես էլ յուրաքանչյուր առանձին մարդու: Անձնական ընդունակությունները, հակումներն ու ձիրքերը լիակատար և անարգել բացահայտելու, իր ողջ ուժերի ու ունակությունների չափով աշխատելու, իր անհատական, ինչպես նաև իր ընկերների աշխատանքի արդյունքների համար հասարակական ճանաչման և նյութական ու բարոյական բարձր գնահատման արժանանալու և, դրանով իսկ, ամբողջությամբ վերցրած, սոցիալիստական ձեռնարկության աշխատանքի արդյունքների ընդհանուր վերելքին նպաստելու հիման վրա իր հասարակությանն օգտակար լինելը հիանալի միջոց է կոլեկտիվում, հասարակությունում մարդու արժանապատվությունը բարձրացնելու, սեփական անհատականությունը խորապես գիտակցելու համար:

Սոցիալիզմի ժամանակ մրցությունն ընդունում է մասսայական, համապարփակ բնույթ. աշխատանքում մրցում են առանձին մարդիկ, առանձին կոլեկտիվներ՝ օղակներ, բրիգադներ, արտադրամասեր, ձեռնարկություններ, ամբողջ շրջաններ և միութենական հանրապետություններ ըստ նախապես սահմանված որոշակի պլանի և արտադրական ցուցանիշների, որոնք սիստեմատիկաբար ստուգվում ու լայնորեն ժողովրդականացվում են: Սոցիալիստական մրցությունն, ինչ ձևով էլ այն արտահայտված լինի, հանդիսանում է սոցիալիստական հասարակության աշխատավորների ստեղծագործական ունակությունների ու ձիրքերի անշեղ զարգացման դրսևորումը:

Մեր երկրի սոցիալիստական շինարարության ամբողջ պատմության ըն-

թացքում սոցիալիստական մրցությունն ավելի ու ավելի ուժեղ է դրսևորվել, ներգրավել է աշխատավորների նորանոր խավեր, աստիճանաբար ընդգրկել է նաև գյուղատնտեսությունը, նոր գծեր ու ձևեր է ընդունել՝ նայած սոցիալիզմի տնտեսական ու գիտատեխնիկական կարգացման մակարդակին: Սոցիալիստական մրցության առաջին փաստերը մեզ մոտ եղան կոմունիստական շաբաթօրյակները, որոնք ծագեցին սովետական իշխանության առաջին և ռազմական ու տնտեսական տեսակետից ամենադժվար ժամանակաշրջանում: Մեր երկրում սոցիալիստական մրցությունն անցնելով կարգացման տարբեր էտապներ ու ձևեր՝ հարվածայնություն, ստախանովական շարժում և այլն, այժմ դարձել է մասսայական շարժում հանուն կոմունիստական աշխատանքի, որն արդի էտապում սոցիալիստական մրցության բարձրագույն ձևն է:

Հանուն կոմունիստական աշխատանքի շարժումն այժմ արդեն դուրս է եկել նյութական արտադրության շրջանակներից և ընդգրկում է մեր հասարակության կյանքի բոլոր կողմերը: Ի տարբերություն սոցիալիստական մրցության նախկին ձևերի, երբ այն ընդգրկում էր սոսկ միայն արտադրական ցուցանիշները և գերազանցապես նյութական արտադրությունը և արտահայտում էր մարդկանց հարաբերություններն արտադրության բնագավառում, մրցության ժամանակակից ձևը՝ հանուն կոմունիստական աշխատանքի շարժումը, այժմ ընդգրկում է մարդկանց ոչ միայն աշխատանքային գործունեության բոլոր բնագավառներն ու արտադրական ցուցանիշները, այլև նրանց կյանքի բոլոր կողմերը, արտադրական ցուցանիշները կապում է նրանց կուլտուր-տեխնիկական և պրոֆեսիոնալ որակավորման մակարդակի անշեղ աճի հետ, մեր մարդկանց կենցաղի ու բարոյական հատկությունների ձևավորման հարցերի և, հետևապես, մեր ամբողջ հասարակության բարոյական հիմքերի, անհատի ներդաշնակ ու բազմակողմանի կարգացման հարցերի հետ:

Սոցիալիզմի ժամանակ աշխատանքային ստեղծագործության, ժողովրդական մասսաների կուլտուր-տեխնիկական մակարդակի և պրոֆեսիոնալ որակավորման, մարդկանց անհատական ընդունակությունների ու ձիրքերի աճման բնորոշ և ցայտուն ցուցանիշներից մեկը հանդիսանում է այնպիսի կարևոր սոցիալական երևույթը, ինչպիսին ռացիոնալիզատորների ու գյուտարարների շարժումն է ՍՍՀՄ-ում: Այդ շարժումը, որ ծագել է մեր երկրում սոցիալիստական շինարարության սկզբնական ժամանակաշրջանում, ներկայումս այնքան հզոր ու մասսայական է դարձել, որ անհրաժեշտություն առաջացավ 1958 թվականի սկզբին կազմակերպելու «Գյուտարարների ու ռացիոնալիզատորների համամիութենական ընկերություն» և համանման ֆիլիալներ ու բաժանմունքներ միութենական հանրապետություններում, երկրամասերում ու մարզերում:

Սոցիալիստական մրցության արդի վիճակն արդեն առաջադրել է «յուրաքանչյուր բանվոր գյուտարար է» լոզունգը և «կոլեկտիվ ռացիոնալիզատորություն ու գյուտարարություն» նոր սկզբունքը: Մեզ մոտ հիմա քիչ չեն այնպիսի ձեռնարկություններ, որտեղ յուրաքանչյուր երրորդ և նույնիսկ երկրորդ մարդ գյուտարար է կամ ռացիոնալիզատոր:

Մեր արտադրության գիտատեխնիկական առաջադիմությունը և երկրի աշխատավորների կուլտուր-տեխնիկական բարձր մակարդակը որակական փոփոխություններ մտցրին ռացիոնալիզատորների ու գյուտարարների շարժման մեջ:



Եթե առաջ այդ շարժումը հիմնականում շոշափում էր փոքր մեքենայացման հարցեր, ապա ներկայումս այն ուղղված է ժամանակակից արտադրության արմատական հարցերի լուծմանը, շոշափում է արտադրական պրոցեսների ոչ միայն փոքր, այլև լիակատար մեքենայացումն ու ավտոմատացումը՝ էլեկտրոնային տեխնիկայի կիրառումով:

Ռացիոնալիզատորների ու գյուտարարների շարժումն ընդլայնվելու կապակցությամբ հսկայական նշանակություն է ստանում առաջավոր փորձի և արտադրական-տեխնիկական փորձառման լայն տարածումը: Սոցիալիզմի և կոմունիզմի ժամանակ ամբողջ նյութական արտադրությունը դառնում է գիտատեխնիկական հետազոտական մտքի՝ իր մասշտաբներով ու հզորությամբ մի հսկայական փորձնական բազա, առաջավոր փորձը լայնորեն տարածելու հիմնական միջոց: Նյութական արտադրության հետ միասին գիտատեխնիկական հետազոտական մտքի կարգացման փորձնական բազա են դառնում նաև բազմաթիվ արդյունաբերական ու գյուղատնտեսական, գիտահետազոտական ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններ, կոնստրուկտորական բյուրոներ և այլն:

Մեր երկրի աշխատավոր կանգվածների կուլտուր-տեխնիկական մակարդակի ու պրոֆեսիոնալ որակավորման անշեղ աճը ոչ միայն կարևորագույն պայման է գիտությունն ավելի ու ավելի լայնորեն անմիջական արտադրողական ուժ դարձնելու, աշխատանքի արտադրողականությունը կարգացնելու, ֆիզիկական ու մտավոր աշխատանքի էական տարբերությունները և, հետևաբար, ՍՍՀՄ-ում դասակարգային տարբերությունները հաղթահարելու գործում, այլև, հատկապես, ստեղծագործական աշխատանքի կարգացման կարևորագույն պայմանն է: Այս վերջին տեսանկյունից քննարկելով հարցը, մենք հիրավի վիթխարի տեղաշարժեր ենք նկատում ՍՍՀՄ ժողովուրդների կյանքում:

Կապիտալիզմի պայմաններում կուլտուր-լուսավորական հիմնարկների և լուսավորության օրգանների բնույթն ու ուղղությունը որոշվում են ոչ թե աշխատավորների, առանձնապես բանվոր դասակարգի ընդհանուր կուլտուրական մակարդակը և պրոֆեսիոնալ-տեխնիկական որակավորումը վերընթաց գծով բարձրացնելու խնդիրներով, ինչպես դա տեղի է ունենում սոցիալիզմի ժամանակ, այլ կապիտալիստական արտադրության պահանջներով, աշխատավորների շահագործման ու ճնշման կապիտալիստական ձևով՝ կապիտալիստական շահույթի աճման տեմպով, հավելյալ արժեքի աճումով, աշխատանքի արդի տեխնիկայի կիրառման կապիտալիստական բնույթով: «Եթե բուրժուական,— ասում է Մարքսը,— բանվորների գոյության մասին հոգ է տանում սոսկ այնքանով, որքանով դա նրան անհրաժեշտ է, ապա հարկ չկա կարմանալու, եթե նա կրթություն է տալիս սոսկ այն չափով, որչափով դա համապատասխանում է իր շահերին» (К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. 2, էջ 343):

Սոցիալիզմի և կոմունիզմի ժամանակ աշխատավորական լայն մասսաների կուլտուր-տեխնիկական մակարդակի և պրոֆեսիոնալ որակավորման անշեղ վերելքի անհրաժեշտությունը բխում է սոցիալիստական հասարակարգի, սոցիալիստական արտադրաեղանակի էական առանձնահատկություններից, այսինքն՝ ժողովրդական տնտեսության կարգացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրության գիտատեխնիկական ու տեխնոլոգիական հիմունքների կարգացման տնտեսական պահանջմունքներից, հիմնական նպա-

տակը՝ ժողովրդի նյութական ու կուլտուրական պահանջմունքների ավելի ու ավելի լիովին բավարարումը կենսագործելու համար:

Սոցիալիզմի կարգացման յուրաքանչյուր նոր էտապում աշխատավորներից պահանջվում է գիտատեխնիկական պատրաստության ավելի բարձր մակարդակ, ավելի շատ գիտելիքներ, կատարելագործված հաստոցների, ամենանուրբ չափիչների, վերահսկող սարքերի ու ապարատների հետ վարվելու հմտություններ, բարդ տեխնիկական հաշվարկումների ու գծագրությունների իմացություն:

Մեզ մոտ դեռևս տեղի ունեցող այնպիսի փաստերը, երբ աշխատավորների մի որոշ մասի կուլտուր-տեխնիկական մակարդակը ետ է մնում սոցիալիստական հասարակության ընդհանուր գիտատեխնիկական և կուլտուրական մակարդակից, մեր էկոնոմիկայի է՛լ ավելի զարգացման վրա խիստ բացասաբար են անդրադառնում երկու տեսակետից. առաջին, դա խանգարում է լիովին վեր հանել և արտադրության համար օգտագործել արդի գիտության ու տեխնիկայի մեջ պարունակված բոլոր հնարավորությունները, է՛լ ավելի կատարելագործել աշխատանքի տեխնիկան և, երկրորդ, այն խանգարում է բացահայտել ու օգտագործել հենց աշխատավորների անհատական ունակություններն ու ձիրքերը:

Եթե առաջ, մինչև սովետական կարգերի հաստատումը մեր երկրում, ցարական ինքնակալության կիրառած ընդհանուր սոցիալական, տնտեսական, գաղութային ու ազգային ճնշման քաղաքականության հետևանքով մարդկանց կուլտուրականության և գրագիտության տեսակետից խիստ տարբերություն էր զգացվում, մի կողմից, որոշ կենտրոնական քաղաքների և, մյուս կողմից՝ ծայրամասերի ու հեռավոր վայրերի միջև, ապա այդ տարբերությունը սովետական իշխանության տարիներին արդեն գրեթե լիովին չքացել են: Աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի անշեղ ու արագ աճը ապահովելու գծով մեզ մոտ ամենուրեք և հավասարաչափ բազմաթիվ միջոցառումներ են կենսագործվել բոլոր միութենական հանրապետություններում, բոլոր երկրամասերում, մարզերում, շրջաններում և ձեռնարկություններում: Այժմ դրանք բոլորը կանգնած են կուլտուր-տեխնիկական բարձր մակարդակի վրա և համատեղ մասնակցում են կոմունիստական հասարակության կառուցմանը:

Մեր երկրի ժողովրդական տնտեսության և կուլտուրայի տարբեր ճյուղերում աշխատում են 12 միլիոն մասնագետներ, այդ թվում 5 միլիոնը՝ բարձրագույն կրթությամբ: Մասնագետների ու ծառայողների թիվը յոթնամյակում ավելացել է 7 միլիոն մարդով: Այժմ ՍՍՀՄ գիտահետազոտական հիմնարկներում ու բուհերի ամբիոններում աշխատում են ավելի քան 660 հազար գիտական աշխատողներ: Դա աշխարհի գիտական աշխատողների մեկ քառորդ մասն է կազմում: Արդեն հաճախ դժվար է լինում առաջավոր բանվորին տարբերել ինժեներից, առաջավոր կոլտնտեսականին՝ գյուղատնտեսից: Հանրակրթական միջնակարգ, միջնակարգ մասնագիտական և բարձրագույն կրթություն ունեցող բանվորների ու կոլտնտեսականների տոկոսը առանձին ձեռնարկություններում, սովխոզներում և կոլտնտեսություններում հասնում է 70—80 տոկոսի: Մենք քիչ կոլտնտեսություններ չունենք, որոնք ունեն 2 և նույնիսկ 3 լրիվ միջնակարգ դպրոցներ: Այդ ամենը ցույց են տալիս, թե որքան է բարձրացել աշխատանքի ինտելեկտուալ բովանդակությունը և նրա ստեղծագործական բնույթը նյութական արտադրության մեջ: Դրանք վառ կերպով ցուցադրում ու արտահայտում են մեր երկրի ժողովրդական մասսաների աշխատանքային ախրագործության անշեղ աճը:

---

Գ. ՄԽԻԹԱՐՅԱՆ

# ՍՏՐՈՒԿՏՈՒՐԱՅԻՆ ՖՈՒՆԿՑԻՈՆԱԼԻԶՄԻ ԷՈՒԹՅՈՒՆԸ

(Քննադատական համառոտ ակնարկ)

*Յակնելի համալսարանի պրոֆեսոր Հ. Վագները ԱՄՆ-ում հաշվում է 60-ից ավելի սոցիոլոգիական ուղղություններ: Ըստ իրենց ընդհանրական կապերի այդ ուղղությունները նա բաժանում է 12 խմբերի, որոնցից հինգը խիստ արտահայտված պոզիտիվիստական բնույթ ունեն: Այդ հինգ խմբերից մեկը կոչվում է «ստրուկտուրային ֆունկցիոնալիզմ»[1]:*

*Ստրուկտուրային (կառուցվածքային) ֆունկցիոնալիզմի դպրոցն իր մեջ ընդգրկում է 15 զանազան ուղղություններ, որոնք միմյանցից տարբերվում են շատ հաճախ հենց միայն անուններով կամ նրանով, որ մեկը հասարակական կառուցվածքի միայն մե՛կ, ո՛չ-էական, երկրորդական կողմն է քննարկում և միակողմանիորեն բացարձականացնում, մյուսը՝ մեկ այլ: Վերոհիշյալ Հ. Վագները թվարկում է ստրուկտուրային ֆունկցիոնալիզմի մեջ մտնող հետևյալ ուղղությունները. տեսության և մեթոդոլոգիայի ուղղություն, բիոլոգիական ֆունկցիոնալիզմ, բիոլոգիական ցիկլայնության տեսություն, կուլտուրայի ֆունկցիոնալիզմ, սոցիոլոգիական ֆունկցիոնալիզմ, փոփոխության ֆունկցիոնալ տեսություն, միկրոֆունկցիոնալիզմ, ամբողջական կուլտուրայի տեսություն, գյուղական համայնքի սիստեմ, կազմակերպության տեսություն, քաղաքային ֆունկցիոնալիզմ, սոցիալական սիստեմի տեսություն և ունիվերսալ ստրուկտուրային ֆունկցիոնալիզմ:*

*Սրանք բոլորն էլ, ինչպես բնորոշ է արդի պոզիտիվիզմին, ուղղված են պատմության մատերիալիստական ըմբռնման, նրա տեսական, աշխարհայացքային սկզբունքների դեմ ու թեև նրանք գործ են ածում «տեսություն» բառը, այն շատ հաճախ ուղղված է գիտական ընդհանրացման, այսինքն՝ տեսության դեմ:*

*Ստրուկտուրային ֆունկցիոնալիզմի ամենից ավելի ազդեցիկ ու տարածված ուղղությունը հավակնում է տալ ոչ միայն տվյալ դպրոցի, այլև բոլոր սոցիոլոգիական ուղղությունների համար մի ընդհանրական միասնական տե-*

---

[1] *Տե՛ս* Helmut R. Wagner, Types of sociological Theory: Toward a system of Classification, „American Sociological Review", october, 1963.

սություն: Սրա տեսաբաններն են՝ Թ. Պարսոնսը, Ռ. Մերտոնը, Կ. Դէյվիսը և ուրիշներ:

Ինչպե՞ս են բացատրում տվյալ դպրոցի լիդերները «հասարակության ստրուկտուրան», նրա բաղկացուցիչ մասերի փոխադարձ կապը («պատճառականությունը» և «փոխազդեցությունը»), սոցիալական սիստեմի զարգացման ու փոփոխությունների բնույթը: Օրինակ, այս դպրոցի լիդեր, ամերիկյան հայտնի սոցիոլոգ Թալկոտ Պարսոնսը (ծնվել է 1902 թ.) իր տեսության մեջ սոցիալական ստրուկտուրայի հիմքում դնում է «սոցիալական գործողությունը» («social Action»):

Նա իր տեսությունն անվանում է «սոցիալական գործողության տեսություն: Թվում է, թե առարկելու ոչինչ չկա: Բայց դրանից բխող մյուս հարցն այն է, թե հասարակական գործողությունների հիմքում ի՞նչն է ընկած. ի՞նչն է դրդում առանձին անհատներին այսպե՛ս և ոչ մի այլ կերպ գործելու, ո՞րն է նրանց վարքագծի պատճառը:

Պարսոնսի կարծիքով այդ «ակտերը» կամ գործողությունները որոշվում են ո՛չ նյութական շահերով, ո՛չ էլ օգուտի տնտեսական ակնկալություններով: Այդպես մտածում էին, նրա կարծիքով, միայն ուտիլիտարիստները, ընդհուպ մինչև Սպենսերը: «Գործողների» արարմունքների հիմքում ընկած է նրանց բարոյական զգացմունքը («լավ» կամ «վատ», բարի կամ չար). առանձին գործող անձանց փոխադարձ գործողությունները սոցիալական ստրուկտուրայի այն մասնիկներն են, որոնց ամբողջականացումը կամ փոխազդեցությունը հանդիսանում է կամ կազմում սոցիալական սիստեմը (այստեղից էլ նրանց անունը՝ «Ստրուկտուրային ֆունկցիոնալիզմ»):

Կալիֆոռնիայի համալսարանի պրոֆ. Ջոն Ց. Սկոտը, քննարկելով Պարսոնսի «սոցիալական գործողության» սխեման, իրավացիորեն ցույց է տալիս, որ իր նախապատերազմյան ստադիայում այն վոլյունտարիստական բնույթ ունի[1]: Սոցիալական կառուցվածքի ամենապարզ միավորը գործողությունն է, որը ենթադրում է գործողի («actor») առկայությունը: Պարսոնսի տեսակետից գործողությունները դեռ անհատներ չեն ներկայացնում, անհատները հասարակության մակրոստրուկտուրայի մեջ են մտնում, իսկ գործողությունները՝ միկրոստրուկտուրան են կազմում:

«Գործողին» նա չի նույնացնում գործող անձի կամ անհատի և ոչ էլ օրգանիզմի հետ, այն ավելի շատ նման է ատոմային մասնիկին կամ օրգանական բջջին. գործողն ունի ձգտում, իդեալ, նպատակ կամ նպատակներ, որին ուղղված է գործողությունը: Այս բոլորը կազմում են սոցիալական իրադրությունը:

Գործողության նպատակի իրականացման համար ենթադրվում են զանազան միջոցներ. այդ միջոցների ընտրությունը Պարսոնսը համարում է «գործողության նորմատիվ կողմնորոշում»: «Նորմատիվ կողմնորոշումը» ոչ թե օբյեկտիվ պայմանավորվածություն է արտահայտում, այլ մի տեսակ սկզբունք կամ սկզբունքների ամբողջություն, որը տրվում է գործողին կանտյան «կատեգորիկ իմպերատիվի» նման, որպես նրա կողմնորոշման հիմք: Դժվար չէ նկատել, որ սա հին վոլյունտարիզմի նրբացված սխեման է, որը գործողության (անհատի վարքի) հիմքում չի դնում օբյեկտիվ անհրաժեշտությունը, այլ

1 Թ. Պարսոնսի նախապատերազմյան գլխավոր երկը „The structure of social Action“ լույս է տեսել Նյու-Յորքում և Լոնդոնում, 1937 թ.:



նրան թելադրում է գոյություն ունեցող սիստեմի կամքը, ցանկությունը, տիրապետող դասակարգի կողմից սահմանված նորման:

Ինքը, Պարսոնսը, թեև իդեալիզմը համարում է միակողմանիություն, չի թաքցնում իր տեսության վոլյունտարիստական բնույթը: Ավելին. նա այն արտահայտում է գիտակցաբար, որպես համոզմունք, ասելով, թե նպատակի իրականացման միջոցի ընտրությունը պարզապես չի դիտվում որպես սոսկ վարքի նմուշի ընտրություն, այլ նաև որպես սուբյեկտիվ ստեղծագործական գործողություն. այստեղ «մարդկային գոյությունը» խաղում է ակտիվ դեր և ոչ՝ սոսկ հարմարվող: Նրա կարծիքով պոզիտիվիստական ռեակցիան, ընդդեմ փիլիսոփայության, հասարակական գիտությունների մեջ ունեցած իր հետևանքներով, մթագնել է մարդու ակտիվ, ստեղծագործական արարած լինելու էական բնույթը: Ըստ Պարսոնսի թե՛ միջոցների իմացությունը, թե՛ նպատակները և թե գործողությունն ավտոմատիկորեն տեղի չեն ունենում, այլ կամքի վարժություն են:

Եվ, վերջապես, նրա կարծիքով կամքն ազատ է բնական ճարկադրանքից. այսպիսով, «ստեղծագործական» կամ վոլյունտարիստական էլեմենտը, որ Պարսոնսը դնում է գործողության հիմքում և այն ազատում օբյեկտիվ պայմանավորվածությունից, միանգամայն պարզորեն ցույց է տալիս, թե նա ինչպես է պատկերացնում, մի կողմից՝ սոցիալական կառուցվածքը, մյուս կողմից՝ այդ կառուցվածքի բաղկացուցիչ անդամների կամ մասերի ֆունկցիոնալ կապը:

Պարսոնսի հավակնությունը՝ մշակել հասարակական կառուցվածքի ամբողջական տեսություն, նրա գրություններում հանդես է գալիս որպես տիրապետող դասակարգի տեսաբանի սուբյեկտիվ ցանկություն, որի նպատակն է՝ պահպանել ու ամրապնդել գոյություն ունեցող սիստեմը: Այնտեղ իրականության իմացության փոխարեն առաջ է քաշվում վաղուց հերքված վոլյունտարիզմի մի նոր տարբերակ: Ակամայից հիշում ես Ջ. Դյուիի «կենսական իրադրությունը» որպես Պարսոնսի «սոցիալական իրադրության» փիլիսոփայական նախանմուշ, որի պայմաններում կամքի ազատությամբ օժտված սուբյեկտը «սկզբնական իրադրությունը» վեր է ածում «վերջնական իրադրության»[1]:

«Սոցիալական իրադրության» մեջ գործողները փոխազդեցության մեջ են մտնում և, ըստ Պարսոնսի, այդ փոխազդեցության շնորհիվ է, որ դրսևորվում է սիստեմի միասնությունը և ընդհակառակը: Եթե գործողությունները սոցիալական միասնություն են արտահայտում, այդ նշանակում է, որ փոխազդեցության կողմերը «լավ» զգացմունքներով են գործում: Իսկ «լավ» զգացմունքների հիմքում ընկած են լավ բարքերը, մարդկանց վարքի լավ նորմերը, այն արժեքները, որոնք ազգային բնավորության հատկանիշներն են և տվյալ սիստեմի հիմքը:

Դժվար չէ հասկանալ Թ. Պարսոնսի և նրա համախոհների փիլիսոփայական մտածելակերպի սոցիալ-դասակարգային պայմանավորվածությունը. նա այդպես է մտածում ոչ թե այն պատճառով, որ գիտականորեն հանգել է այդպիսի համոզման, այլ որովհետև իր դասակարգի դիրքը և նախապաշարմունք

1 Տե՛ս John Dewey, Problems of Men, New Uo k, 1946. „Unquiry and Undeterminateness of Situations“ հոդվածը:

դարձած մտածելակերպը դարձել են նրա համար համոզմունքի, ճշմարտության չափանիշ։ Նա սոցիալական ստրուկտուրայի ամենապարզ էլեմենտը համարելով գործողությունը, չի ընդհանրացնում գործող անհատներին, չի ուզում ելնել պատմության այնպիսի փաստերից, ինչպես, ասենք՝ սոցիալական մեծ շարժումներն են, հեղափոխությունները, նրանց պատճառները, որոնք իրենց մեջ ընդգրկում են միլիոնների տևական գործողությունները։ Ինչպես բնորոշ է նեոպոզիտիվիստական սոցիոլոգիային, Պարսոնսը խուսափում է ընդհանուր տեսական հարցերի քննարկումից։ Օրինակ, պատմական մատերիալիզմի հիմնական սկզբունքը՝ կեցությունն առաջնային է, գիտակցությունը՝ երկրորդային, նա համարում է միակողմանի «տնտեսական դետերմինիզմ», որն ուղղված է նույնքան միակողմանի հեգելյան իդեալիստական դետերմինիզմի դեմ։

Իբր ստրուկտուրային ֆունկցիոնալիզմը հաղթահարում է այդ «միակողմանիությունը» նրանով, որ պատճառական կապը համարում է բազմապիսի և երկկողմանի։

Նախ, ի՞նչ է արտահայտում բազմազան և երկկողմանի պատճառականության այդ սկզբունքը։ Նրանց ըմբռնմամբ դա նշանակում է հրաժարվել միասնական մոնիստական սկզբունքից և պատմությունը բացատրել բազմաթիվ սկզբունքներով։ Այսինքն՝ հասարակական երևույթների բացատրության մեջ մատերիալիստական հիմքին հավասար և նրանից առաջ պետք է ընդունել և՛ հոգեբանական, և՛ բարոյական, և՛ քաղաքական, և՛ այլ կարգի պատճառներ, որովհետև, նրանց տեսակետով, բոլոր պատճառներն ունեն հավասար սկզբունքային նշանակություն։

Պատմական մատերիալիզմը կեցությունը դիտելով առաջնային, գիտակցությունը՝ երկրորդային, բոլորովին էլ չի ժխտում գիտակցության ակտիվ ներգործությունը կեցության վրա։ Շեշտելով ելակետային սկզբունքը որպես կողմնորոշման ուղեցույց, պատմական մատերիալիզմը ցույց է տալիս հասարակական շարժման մեջ տնտեսականի և հոգեկանի փոխազդեցությունը, առանց որի անհնարին է հասկանալ գիտակցության ծագման իմաստն ու նշանակությունը։

Սակայն ստրուկտուրային ֆունկցիոնալիզմի լիդերները պատճառականության գիտական ըմբռնումը մի կողմ դնելով, այն անհեթեթ դատողությունն են անում, թե պատմական մատերիալիզմը ընդունում է միայն միակողմանի պատճառականությունը, «տնտեսական դետերմինիզմը»։

Բուրժուական այս սոցիոլոգները, առաջ քաշելով պատճառականության մեջ բազմազան, բազմակողմանի կապերի գաղափարը, կոկետություն են անում դիալեկտիկայի առաջ, բայց ըստ էության, աշխատում են միասնական (մոնիստական) աշխարհայացքի հիմնական սկզբունքային հարցը փոխարինել պատճառականության էմպիրիկ դրվածքով։

Պատմական շարժման մեջ կապակցություններն իրոք բազմազան ու բազմակողմանի են, ընդհանուր փոխազդեցության մեջ պատճառի և հետևանքի կապը սոսկ այդ փոխազդեցության մի մոմենտն է, մի մասնիկը, ինչպես գրում է Լենինը։ Բայց ընդհանուր փոխազդեցության բոլոր կապակցություններն էլ այս կամ այն իրադրության, դեպքի, երևույթի ծագման համար միևնույն նշանակությունը չունեն։ Եթե մենք բոլոր կապերին էլ միևնույն նշանա-



կություն վերագրենք, իրադրության մեջ ճիշտ կողմնորոշվել երբեք չենք կարող։ Տարբերելով գլխավորը երկրորդականից, անհրաժեշտը պատահականից, մենք նպաստում ենք անհրաժեշտության ծավալմանը և եթե հասնում ենք ցանկալի նպատակին, այսինքն՝ առաջացնում ենք այնպիսի հետևանքներ, որոնք բխում են անհրաժեշտության մեր իմացությունից, այդ նշանակում է, որ պատճառականության մեր ըմբռնումը ճշմարիտ է։

Իսկ ստրուկտուրային ֆունկցիոնալիզմի տեսաբանները երբեք չեն քննում իմացության գործնական կողմը, հասարակական պրակտիկան որպես իմացության ստուգման ասպարեզ դուրս է մնում նրանց տեսադաշտից։ Նման տեսության դասակարգային խնդիրը հենց սկզբից ոչ թե ճշմարտության հասնելն է, այլ բուրժուական հասարակարգի մշտական կայունությունն ապացուցելը և պատմական մատերիալիզմի հերքումը։

Որպես դրա անմիջական վկայություն բերենք այդ ուղղության մի ուրիշ դրույթ. ըստ Պարսոնսի և նրա համախոհների, հասարակական սիստեմը մշտապես փոփոխվող մի «դինամիկ հավասարակշռություն» է. արտաքին փոփոխությունները ձգտում են նվազագույնի հասցնել սիստեմի փոփոխության ընդհանուր քանակը. գլխավոր տենդենցը կայունությունն ու հավասարակշռությունն է (!), որն ապահովվում է կարգավորման և սոցիալական վերահսկողության միջոցով։

Նախ՝ աստեղ «հավասարակշռություն» բառն այնքան աչք ծակող է, որ իրենք՝ ֆունկցիոնալիզմի բուրժուական քննադատներն են այն մատնացույց անում։ Պարսոնսին և այս ուղղության մյուս ներկայացուցիչներին անհրաժեշտ է եղել երկու իրար անհամատեղելի երևույթներ համատեղել, կապել իրար, ինչպես կասեր դեռևս Դյուրինգը, դինամիկան և ստատիկան, բայց այնպես, որ ստատիկ վիճակը ոչ մի ազդեցություն չկրի դինամիկայից, այսինքն՝ սիստեմը շարժուն է, բայց այդ շարժումը (փոփոխությունները) երբեք նրան հավասարակշռությունից չի հանում ու թեև, ինչպես նրանք են ասում, կատարյալ հավասարակշռություն երբեք հնարավոր չէ, այնուամենայնիվ, դրան պետք է ձգտել։ Ո՛չ Պարսոնսը և ոչ էլ որևէ մեկը նման մտածողներից, որքան էլ կոնկրետ սոցիոլոգիական հետազոտության ջատագովներ են, չեն կարող թեկուզ մի փոքրիկ փաստարկ բերել, ապացուցելու համար, որ հասարակական սիստեմը թեև դինամիկ է, բայց գտնվում է մշտական հավասարակշռության մեջ։ Ուրեմն, մնում է ասել, որ «մշտական հավասարակշռության» գաղափարը նրանց ցանկությունն է, որովհետև նրանք պայքարում են, որ կապիտալիստական սիստեմը հավերժական անդորր վիճակում լինի։ Նրանք հենց այդ նպատակով էլ այստեղ օգտագործում են «կարգավորում» և «սոցիալական վերահսկողություն» արտահայտությունները, որոնք կապիտալիզմի պայմաններում ցույց են տալիս տերերի ու նրանց տեսաբանների ձգտումը՝ կարգավորելու սիստեմն այնպես, որ ապահովվի անճգնաժամ կապիտալիզմ։ Այժմ, ավելի քան երբևէ, դասակարգային այդ խնդրի իրականացման տեսական հիմնավորմանն են ուղղված բուրժուական առաջատար երկրների գաղափարական աշխատողների և պետական գործիչների բոլոր ջանքերը։

Բայց այլ բան են սուբյեկտիվ ցանկություններն ու տեսությունները, այլ է իրական շարժումը։ Եթե հնարավոր լիներ ազատել կապիտալիզմը ներքին հակասություններից և ճգնաժամերից, այդ դեպքում պետք կլիներ ընդհանրապես դուրս նետել գործածությունից շարժում ու փոփոխություն արտահայտող

բառերը, և ֆունկցիոնալիստները ստիպված չէին լինի կեղծավորաբար օգտագործելու այն տերմինները, որոնք դիալեկտիկական իմաստ են արտահայտում, բայց նրանց լեքսիկոնում հակառակ իմաստով են հնչում:

Նրանք գտնում են, որ փոփոխությունները մշտապես տեղի են ունենում, դրանք անընդհատ են, էվոլյուցիոն, բայց ոչ երբեք հեղափոխական: Փոփոխությունները, նրանց կարծիքով, սոսկ աստիճանական են, «կանոնավոր», «կարգավորելի» և ոչ հանկարծակի ու միանգամից: Ինչո՞ւ: Որովհետև հանկարծակի ու միանգամից, այսինքն՝ հեղափոխականորեն տեղի ունեցող փոփոխությունները ազդում են հասարակության միայն վերնաշենքի վրա, իսկ սոցիալական և կուլտուրական ստրուկտուրայի էլեմենտները տևականորեն մնում են անփոփոխ:

Նախ, կարելի է տրամաբանորեն այսպիսի հարց տալ այդ պարոններին. եթե հեղափոխական փոփոխությունները միայն վերնաշենքի մեջ են փոփոխություն մտցնում, իսկ սոցիալական հիմքը և կուլտուրական արժեքները մնում են անփոփոխ, հապա ինչո՞ւ են նրանք հակադրվում այդ կարգի «փոփոխություններին», դա ի՞նչ նախապաշարմունք է ընդդեմ հեղափոխական շարժումների: Բուֆալոյի համալսարանի պրոֆեսոր Պյեռ վան դեն Բերգը ո՛չ կոմունիստ է, ոչ էլ սոցիալիստ, բայց ուղղակի նկատում է ֆունկցիոնալիզմի ներկայացուցիչներին, որ փոփոխությունները լինում են և՛ էվոլյուցիոն, և՛ հեղափոխական, այսինքն՝ հանկարծակի և միաժամանակ արմատականորեն[1]: Ուրեմն, ի՞նչ կարիք կա պատմական փաստերը ժխտել:

Ստրուկտուրային ֆունկցիոնալիզմի սոցիոլոգիական մի այլ դրույթ «արժեքի» ֆունկցիային է վերաբերում, որը նրանց (հատկապես Պարսոնսի) տեսակետից, սոցիալական միասնության և կայունության կարևոր և հիմնական գործոնն է: «Արժեքային սիստեմ» ասելով նրանք հասկանում են, նախ՝ մարդկանց վարքի մշակված նորման, ապա ազգային բնավորությունը, սոցիալական ու կուլտուրական ստրուկտուրայի սկզբունքներն ու նպատակները: Եթե չմոռանանք այն հանգամանքը, որ ըստ Պարսոնսի, «գործողի» վարքի հիմքում անձնական շահի ակնկալությունը չէ ընկած, ապա առանձին գործողությունների միասնության հիմքում, ըստ նրա ըմբռնման, պետք է ընկած լինի «արժեքի փոխհամաձայնությունը»: Այդ նշանակում է՝ եթե տվյալ սոցիալական սիստեմի շատ անդամներ ելնում են միևնույն սկզբունքներից ու նպատակներից, դրանով ապահովում են սոցիալական սիստեմի կայունությունը, այն, ինչը նրանք անվանում են «դինամիկ հավասարակշռություն»: Ինքնըստինքյան պարզ է, թե ինչու նրանք արժեքային սիստեմը հասարակական-կուլտուրական սիստեմի ոչ միայն ամենից ավելի կարևոր ու խորագույն աղբյուրը, այլև կայուն տարրն են համարում:

Պարսոնսի և այս դպրոցի մյուս տեսաբանների դասակարգային նախապաշարմունքը թույլ չի տալիս տեսնելու իրենց տեսության այս արտառոց հակասությունը, անտրամաբանական սխեման: Նրանք ազատ չեն իրենց եզրակացությունների մեջ, որովհետև չեն կարողանում վեր բարձրանալ բուր-

[1] Տե՛ս Pierre van den Berge, Dialectic and Functionalism: Toward a Theoretical Synthesis, „American Sociological Review", october, 1963, p. 698.



ժուական մտածելակերպից: Այնուամենայնիվ, առանձնապես վերջին շրջանում բուն իսկ ԱՄՆ-ում բազմաթիվ քննադատներ են հանդես եկել, որոնք մատնանշում են ստրուկտուրային ֆունկցիոնալիզմի հակասությունները, նրա էկլեկտիցիզմը, անտրամաբանական բնույթը, վոլյունտարիզմը և այլն: Օրինակ, վերոհիշյալ Վան դեն Բերգը քննադատում է ֆունկցիոնալիզմի տեսությունն այն բանի համար, որ նրա ներկայացուցիչները միայն էվոլյուցիոն շարժումն են ընդունում և մերժում են սոցիալական կոնֆլիկտներն ու հեղափոխական շարժումը: Բայց քննադատների ճնշող մեծամասնությունը բաց է թողնում գլխավորը, այն, որ ստրուկտուրային ֆունկցիոնալիզմը ձգնում է թաքցնել իր իդեալիստական սուբյեկտիվիստական բնույթը «սոցիալական ստրուկտուրա», և «սոցիալական գործողություն» անունների տակ: Պարսոնսն իր հոդվածներից մեկում հանձն է առնում, որ Մարքսն այն մտածողներից մեկն է, որ առաջադրել է հասարակության ստրուկտուրայի ուսումնասիրության հարցը, բայց նա միևնույն տեղում վերապահում է անում, թե, իբր, Մարքսի հարցադրումը ամբողջական չէ, միակողմանի է[1]: Բայց մի՞թե այս պարոնին հայտնի չէ, թե Մարքսն ինչպիսի ստրուկտուրալ անալիզի է ենթարկել հասարակական այն սիստեմը, որի համար այժմ պարոնայք սոցիոլոգները «դինամիկ հավասարակշռություն» են ցանկանում:

Պարսոնսը պարզապես խուսափում է «Կապիտալի» մարքսյան վերլուծության ըստ էության քննարկումից, դրա փոխարեն հրամցնելով բազմաթիվ էքսկուրսներ կենսաբանության, հնէաբանության, մարդաբանության բնագավառներում: Այս գիտությունները, անշուշտ, ունեն հասարակական նշանակություն և կարևոր դեր են խաղում հասարակական կյանքում: Բայց սոցիոլոգիական տեսության մշակման համար դրանք կարևոր չեն: Պատմության ընդհանրական օրենքների բացատրության համար ոչ թե պետք է սկսել կենդանական աշխարհի դասակարգումից, այլ այն բանից, թե ինչի շնորհիվ է մարդը զատվում կենդանական աշխարհից, կամ, հասարակական հարաբերությունների հիմքում մարդկանց զգացմունքնե՞րն են ընկած, թե՞ նյութական հարաբերությունները: Եթե մարդկային հասարակությունը դիտվում է որպես մի ամբողջական սոցիալական սիստեմ, իսկ այդ ստրուկտուրային ֆունկցիոնալիզմի տեսաբաններն ընդունում են, և նրանցից շատերն այդ իրենց սկզբունքային դրույթներից մեկն են համարում, ապա բազմաթիվ անհատներից բաղկացած սիստեմը պետք է որ օբյեկտիվորեն ինքնուրույն լինի և անկախ այդ սիստեմի մեջ մտնող բոլոր առանձին-առանձին անհատների կամքից, ցանկությունից ու գիտակցությունից: Այս հարցը ոչ մի բուրժուական սոցիոլոգի քննարկման առարկան չի հանդիսանում: Տվյալ դեպքում ֆունկցիոնալիզմի լիդեր Պարսոնսը թե իր նախապատերազմյան գործերում և թե հետպատերազմյան աշխատություններում, ուր նա, ըստ իր հայտարարության, էվոլյուցիա է կատարել վոլյունտարիզմից դեպի ավելի սինթետիկ, «միակողմանիությունից» (այսինքն՝ թե՛ մատերիալիզմից, թե՛ իդեալիզմից) բարձր մակարդակ, երբեք չի քննում սոցիալական սիստեմը և նրա շարժումը որպես օբյեկտիվ, մարդկանց կամքից ու ցանկությունից անկախ տեղի ունեցող պրոցես: Իբր, հրաժարվելով վոլյունտարիզմից չանի որ այն իդեալիզմ է (Պարսոնսի գրչակիցներից ոմանք դրա համար նրան քննադատում են), նա համաձայն իր էվոլյուցիոնիս-

[1] Տե՛ս „Daedalus", winter, vol. 94, № 2, p. 52, 1965.

տական սկզբունքի, այսինքն՝ որ շարժումը միայն էվոլյուցիոն բնույթ ունի, փորձում է իր «գործողության սխեմայի» և բիոլոգիական սիստեմի միջև ամբողջականության կամ միասնության կամուրջ գցել։ Չնայած այն վերապահմանը, թե «գործողությունը» կյանքի յուրահատուկ ասպեկտն է, սոցիալական սիստեմի նրա տեսությունը կորցնում է իր յուրահատուկ, այսինքն՝ հասարակական (սոցիալական) բնույթը հենց նրանով, որ նա օրգանական (բիոլոգիական) շարժման և սոցիալական սիստեմի միջև միմիայն էվոլյուցիոն շարժում, այսինքն՝ սոսկ քանակական տարբերություն է տեսնում։ Թեև այդ բանը բառացիորեն չի ասում։ Բայց, ըստ էության, այդ ոչ մի նշանակություն չունի։ Նրա ասածներից այդ եզրակացությունը բխում է անմիջականորեն։

1965 թ. իր հոդվածներից մեկում, որը նվիրված է գիտությունների դասակարգմանը, Պարսոնսը փորձում է պարզաբանել այն յուրահատուկ դերը, որն ունեն սոցիալական գիտությունները մեր ժամանակաշրջանի համար։ Նա այդ հոդվածում քննադատում է դասակարգման բնագավառում աչքի ընկած իր բոլոր նախորդներին, այդ թվում և Մարքսին, և առաջադրում է իր «սինթետիկ» տեսակետը։ Նախ, կարելի է միայն տարակուսանք արտահայտել այն առթիվ, թե ինչի հիման վրա է նա դասակարգում գիտությունները, եթե նրա համար տարբերությունները դրանց միջև սոսկ էվոլյուցիոն են։ Դասակարգման հիմքում Պարսոնսը դնում է սոցիալական հայացքները։ Նա առանձնահատուկ տեղ է հատկացնում գերմանական այն մտածողներին, որոնք իր ուսուցիչները կամ գաղափարական նախորդներն են եղել. XIX դարում նա հակադրում է երկու տեսակետ. մեկը՝ պատմականության հեգելյան տեսակետն է, մյուսը՝ նորկանտականների (Ռիկկերտ)։ Իբրև թե «իստորիզմի» տեսակետը պատմությունը չի բաժանում, այլ ներկայացնում է բնական գիտությունների հետ միասնական, քանի որ ընդունում է օրենքների ռեալականությունը, իսկ Ռիկկերտի տեսակետը, ընդհակառակը՝ պատմական գիտությունները հակադրում է բնականին. ըստ այս տեսակետի՝ պատմությունը չունի օրենքներ, այն գործ ունի միայն անհատականությունների հետ։

Գիտությունների դասակարգման սկզբունքը նա ներկայացնում է, անշուշտ, իրավացիորեն, որպես տվյալ մտածողի աշխարհայացքի հիմնական սկզբունք։ Ելնելով դրանից, նա Մարքսի տեսակետը համարում է Հեգելի տեսակետի և ուտիլիտարիստական տեսակետի միացման փորձ։ Իբրև թե Հեգելի իդեալիստական միակողմանի իստորիզմի և ուտիլիտարիստական էմպիրիկ ավանդական տեսակետների միջև Մարքսը կամուրջ է գցել։

Եթե հիշենք, որ Պարսոնսը մերժում է թե՛ մեկը և թե մյուսը, այսինքն՝ թե՛ հեգելյան «միակողմանիությունը», թե՛ ուտիլիտարիստական էմպիրիզմը, Մարքսի դեմ նրա պատասխանը դրանով իսկ պարզ կլինի։ Բայց լսենք նրա առարկությունները։ Մարքսի մոտ ամենուրեք «մատերիալիզմը» վերցվում է որպես հակադրություն իդեալիզմին (իսկ Պարսոնսի և նրա համախոհների տեսակետից դա Մարքսի տեսակետի ամենամեծ թերություններից մեկն է)։ Բացի այդ, Մարքսի տեսությունն իբրև լրջորեն չի քննում ֆիզիկական աշխարհը և ունի մի շարք դժվարություններ բիոլոգիայի ոլորտում։ Այդ դեպքում էլ ի՞նչ է մնում Մարքսի տեսությունից, ո՞րն է այն կարևորը, որ Պարսոնսը համարում է ուշադրության արժանի. նրա կարծիքով, այստեղ կարևորն այն է, որ Մարքսը ուտիլիտարիստական հիմքից գնաց դեպի անգլիական կլասիկ քաղաքատնտեսությունը։



Բայց նույն տեղում Պարսոնսը ետ է վերցնում նաև իր այս գնահատականը, հայտարարելով, թե քանի որ Մարքսի տեսակետի հիմքում «նյութական շահերն» են, տնտեսականը՝ ուտիլիտարիստական իմաստով, իսկ «նյութական շահերը» անհատական ցանկություններ են, հետևաբար, Մարքսն իր սիստեմի հիմքում դնում է այդ տեսակետը, այսինքն՝ դետերմինիզմը. այդպիսի տեսակետի դեպքում գործողության միայն մի ուղղություն է բաց մնում. կապիտալիստների համար այդ նշանակում է՝ շահույթի մաքսիմալ մեծացում, իսկ բանվորների համար՝ անկարգությունների ստեղծում գործադրկության ժամանակ։

Իսկ ո՞րն է իրեն «սինթեզող» տեսակետը։ Ըստ Պարսոնսի տեսության՝ անհատի վարքի հիմքում ընկած է ոչ թե սոսկ նրա նյութական շահը, այլ նաև ուրիշ պատճառներ, ամենից առաջ, բարոյական արժեքները— ազատությունը, ցանկությունը, «լավ» մարդ լինելու ձգտումը և այլն։ Մարդկանց վարքը սոսկ նրանց տնտեսական շահերով բացատրելը, նրա կարծիքով, Արևմուտքի լուրջ ուսանողը ինդուստրիալ երկրների համար սոսկ պարզեցում, սկզբունքի նեղացում կհամարի։

Հազիվ թե Պարսոնսը հավատարիմ է իր այդ խոսքին. ո՛չ Արևմուտքի և ոչ էլ Արևելքի լուրջ ուսանողները երբեք չեն հավատա այն բանին, որ մարդկանց արարմունքի հիմքում ընդհանուր առմամբ նրանց տնտեսական շահը չէ ընկած, այլ բարի կամքը կամ բարոյական «պարտքի» զգացումը։ Պատմական մատերիալիզմը երբեք չի սովորեցնում, թե ամեն մի առանձին մարդու ամեն մի արարք զուտ շահադիտական է և այլ կերպ լինել չի կարող։ Այդպիսի պատասխան կարող են տալ հարցին միայն բուրժուական ինդիվիդուալիստները և հասարակական կյանքը բիոլոգիականի հետ նույնացնող այն մտածողները, ովքեր մոռանալով մարդու տարբերությունը կենդանական աշխարհի ներկայացուցիչներից, իրենց տեսական երկերում հիմնավորում են ուժի դիրքերից ելնող քաղաքականությունը, ջունգլիների օրենքը։

Ի՞նչն է, որ Պարսոնսին Մարքսի տեսության մեջ առանձնապես դուր չի գալիս։ Այն, որ Մարքսը տնտեսական շահերով է բացատրում նաև քաղաքականը, դասակարգային կոնֆլիկտը։ Եվ Պարսոնսը համարում է այդպիսի տեսակետը պարզապես հեգելյան դիալեկտիկայի փոխադրում գաղափարների բնագավառից շահերի բնագավառը։ Սակայն նրա համեմատությունները ամենուրեք կաղում են։

Եթե տնտեսական շահերը չեն թելադրում քաղաքական միջոցառումները, ինչո՞վ է այդ դեպքում բացատրում պարոն Պարսոնսը ԱՄՆ-ի պրեզիդենտին առընթեր տնտեսագետ խորհրդականների առկայությունը պետական ապարատում, որոնցից ամենահեղինակավորներից մեկը՝ Ու. Ու. Ռոստոուն, հանդիսանում է նրա արտաքին քաղաքականության առաջին խորհրդականը։

Պետք է նշել ի պատիվ Պարսոնսի, որ հակառակ բազմաթիվ պոզիտիվիստ սոցիոլոգների ու փիլիսոփաների, նա իր սուբյեկտիվիզմը չի թաքցնում. նույնիսկ ավելին, նա գտնում է, որ այն անհրաժեշտ է թե՛ գործողության տեսության և թե գործողների կողմնորոշման սիմվոլների մշակման համար։ Վերոհիշյալ Ջոն Ց. Սկոտը բերում է Պարսոնսի հետպատերազմյան երկերից, որտեղ վերջինս իբր ուզում է խուսափել վոլյունտարիզմից, հետևյալ միտքը. սուբյեկտիվիզմն անհրաժեշտաբար ընդգրկվում է գործողության սիստեմի մշակման ոլորտում, ուր մասնակցում են մշակույթի սիմվոլիկ նմուշները.

այդ մշակույթի նմուշներն ու արժեքները, որոնք որոշում են գործողի վարքը և կապում գործողներին իրար հետ, զուտ սուբյեկտիվիստական բնույթ ունեն և կապված չեն իմացաբանության հետ[1]։

Հետպատերազմյան իր աշխատություններում Պարսոնսը ցանկանում է ոչ այնքան հրաժարվել իր սուբյեկտիվիզմից, որքան հաշտեցնել նատուրալիզմը (բիոլոգիզմը) սուբյեկտիվիզմի հետ։ Դրա համար նրա քննադատ Ջ. Սկոտը այս շրջանի նրա դիրքորոշումը անվանում է «զգույշ նատուրալիզմ» («cautious naturalism»)։

Բայց, եթե այն ըստ էության կոչենք, փիլիսոփայական իմաստով կնշանակի «զգույշ էկլեկտիզմ», քանի որ նա վերջին հաշվով ցանկանում է իր վոլյունտարիզմն ու սուբյեկտիվիզմը հաշտեցնել սոցիոլոգիական էմպիրիզմի հետ, ավելի ճիշտ՝ թաքցնել իր իդեալիստական հայացքները էմպիրիզմի տակ։

Իր հետպատերազմյան գործերում Պարսոնսը հայտարարում է, թե իր սիստեմի հիմքում նա այժմ դնում է պսիխոանալիզի տեսությունը, վարքի հոգեբանության և կուլտուրայի մարդաբանական անալիզի նվաճումները։ Ինչպես երևում է այս անուններից, նրա հիմունքներից ոչ մեկը ցույց չի տալիս, որ նա թեկուզ մի չնչին չափով հրաժարվել է իդեալիզմից, թեև բավական շարժվել է դեպի էմպիրիզմը, կամքի միջոցով սոցիալական սիստեմ կառուցելու մեթոդից՝ դեպի հոգեբանական ու բիոլոգիական ստրուկտուրաները։

Բնականաբար կարող են հարց տալ, թե ի՞նչն է ստիպել նրան այդպիսի էվոլյուցիայի, չէ՞ որ աշխարհում դեռ շատ կան և վոլյունտարիստներ. վերջապես, որպես բուրժուական մտածելակերպ, էմպիրիկական սոցիոլոգիան ոչ պակաս սրությամբ է այժմ քննադատվում, քան վոլյունտարիզմը և այդ ոչ միայն մարքսիստների կողմից, այլև հենց իրենց՝ բուրժուական որոշ սոցիոլոգների կողմից։

Նախ, նշենք այն հանգամանքը, որ Պարսոնսը փիլիսոփայական կրթություն է ստացել 20-ական թվականներին Եվրոպայում և, հատկապես, Գերմանիայում (Հայդելբերգի համալսարանում), ինքը մեծ համարումով է խոսում գերմանական ու եվրոպական այն իդեալիստների մասին, ովքեր հրաժարվելով հեգելյան դիալեկտիկայից կամ հակադրվելով դրան, մշակում են իդեալիստական (վոլյունտարիստական) սխեմա։

Բայց երկրորդ համաշխարհային պատերազմում վոլյունտարիզմը գործնականում (ֆաշիզմը) պարտություն կրեց. այդ պատմական մեծ դասը չէր կարող չունենալ իր հուժկու ներգործությունը բուրժուական իդեոլոգիայի վրա։ Պատահական չէ, որ Եվրոպայում պատերազմից հետո վոլյունտարիզմին զգալի չափով փոխարինել են էկզիստենցիալիզմն ու կրոնական փիլիսոփայությունը, որոնք կոչ են անում հրաժարվել բանականությունից, տրամաբանությունից, ապավինել զգացումների աշխարհին, հավատին, այսինքն՝ անտրամաբանականին, քանի որ այն մտածողից ոչ մի ապացույց չի պահանջում։

Բայց ցնցող ներգործությունը, որ ունեցել է ֆաշիզմի պարտությունը Եվրոպայում, Ամերիկայում թույլ է արտահայտվում, մի կողմից այն պատճառով, որ նա հաղթող կողմի երկրներից է, երկրորդ, որ իմպերիալիզմի

1 Տե՛ս Iohn Finly Scott, The changing Foundations of the Parsonian Action Scheme, „American Sociological Review", october, 1963, p. 729.



այժմյան ամենից ավելի մարտական կենտրոնն է, որին են նայում նաև ֆաշիզմի մնացուկները Եվրոպայից։

Պարսոնսը, որպես իմպերիալիստական վերնախավի պաշտոնական սոցիոլոգ չի կարողանում լիովին հրաժարվել իր հին հայացքներից, բայց և միաժամանակ աշխատում է հաշվի առնել ամերիկյան բիզնեսմենի պրակտիցիզմը, որի տեսական արտահայտությունը «կոնկրետ սոցիոլոգիայի» արագ զարգացումն է հետպատերազմյան ԱՄՆ-ում։ Պարսոնսը և նրա գրչակիցները չեն կարող հաշվի չառնել այդ գործնական պահանջը։

Թ. Պարսոնսի էվոլյուցիոնիստական և բիոլոգիզմի (կամ անթրոպոլոգիզմի) հայացքների ցուցադրման տիպիկ նմուշ է հանդիսանում նրա վերջին շրջանի հոդվածներից մեկը, ուր նա փորձում է, հակառակ պատմական մատերիալիզմի (թվում է թե այդ հոդվածը նա գրել է Ֆ. Էնգելսի «Աշխատանքի դերը կապկի մարդացման պրոցեսում» աշխատության դեմ՝ նրա թարմ տպավորությունների ազդեցության տակ), ապացուցել, որ հասարակության էվոլյուցիայի մեջ երկու համընդհանուր գործոններ են ընկած՝ մարդու ձեռքը և ուղեղը[1]։ Պարսոնսը չի ուզում նույնիսկ հիշատակել, որ Էնգելսը մարդու ձեռքի կատարելագործումը, մտածողության ծագումն ու զարգացումը կապում է աշխատանքի հետ. նա ուղղակի սկսում է պատրաստի ձեռքից, նրա մատներից, ձեռքի տեղի (թևի վերջավորությունը) և երկու ձեռքերի շարժման պոտենցիալ հնարավորություններից։ Հետաքրքրական է, որ նա խուսափում է ուղեղի մասին կանխակալ որևէ խոսք ասելուց, կարծելով, թե այդ կարող է իդեալիստականորեն հնչել, բայց դրա փոխարեն բազմաթիվ չպատճառաբանված ֆունկցիաներ է վերագրում ձեռքերին, երբեք չմտածելով, որ ձեռքի ոչ մի շարժում, այդ թվում նաև բնազդային, առանց ուղեղից եկող «հրամանի» տեղի չի ունենում։ Կարդալով նրա այս հոդվածը, ակամայից գալիս ես այն եզրակացության, որ արդի սոցիոլոգիական էմպիրիզմը (կամ նրա տեսական հիմք նեոպոզիտիվիզմը փիլիսոփայության մեջ) պատրաստ է հրաժարվել մարդու խելքից հանուն նրա ձեռքերի, այսինքն՝ մի երևույթ, որն ըստ էության նշանակում է բուրժուական իդեոլոգիայի հրաժարումը բանականությունից ընդհանրապես, քանի որ սեփական ճակատագրի, դատապարտվածության գիտակցությունը սարսափով է պատում տիրապետող դասակարգին և նրա պաշտոնական գաղափարախոսին։ Նման փիլիսոփայական էվոլյուցիան միանգամայն օրինաչափ է, որքան էլ այդ հանգամանքը չընդունեն կամ փորձեն ժխտել այդ մտածելակերպի կրողները։

Այդ տեսակետից ավելի անկեղծ էր Ջ. Դյուին, երբ ասում էր, թե մենք համաձայն ենք, որ մենք չգիտենք թե ուր ենք գնում, ինչու ենք անում այն, ինչ որ անում ենք[2]։ Ամերիկյան սոցիոլոգներ Բեքերը և Բոսկովը դրան մի խոսք էլ են ավելացնում, թե մենք չգիտենք, թե ուր ենք գնում, բայց մենք գտնվում ենք ճանապարհին[3]։ Այո, պարոններ, բայց ամբողջ հարցն այն է, որ երբ ձեզ ասում են, թե որն է այդ ճանապարհը, դուք հակադրվում եք իսկական

1 Տե՛ս Talcott Parsons, Evolutionary Universals in Society. „American sociological Reviev", april, 1964.

2 Տե՛ս John Dewey, Problems of Men, p. 144, № y. 1946.

3 Տե՛ս *Беккер Г. и Босков А.*, Современная социологическая теория в ее преемственности и изменении, М., 1961, стр. 7.

գիտությանը, տրամաբանությանը, որով մտածում եք, լեզվին, որով դուք խոսում եք և հանուն միայն ձեր սուբյեկտիվ դասակարգային շահի՝ պատրաստ եք ապավինել խավարամտությանը և ընդունել նույնիսկ ամբողջ մարդկության կործանման անհրաժեշտությունը: Այդ մասին արդեն բազմիցս արտահայտվել են գերմանական էկզիստենցիալիստները, որոնց կապը ստրուկտուրային ֆունկցիոնալիզմի հետ միանգամայն ակնհայտ է:

Այսպիսով, չնայած ստրուկտուրային ֆունկցիոնալիզմի տեսաբանների հավակնություններին, ըստ էության նրանց տեսության մեջ չկա ոչ մի նորություն, ոչ մի ընդհանրացնող («սինթեզող») դրույթ, որը նրա համար յուրահատուկ տեղ ապահովի սոցիոլոգիական մտքի զարգացման մեջ: Այն բուրժուական սոցիոլոգիայի բազմաթիվ ուղղություններից մեկն է, թերևս համեմատաբար ավելի ճկունը, որի հիմնական «առավելությունն» այն է, որ երբեմն փորձում է դիալեկտիկայի անունից հանդես գալ, համեմատաբար արագ արձագանքել բուրժուական աշխարհում և միջազգային կյանքում տեղի ունեցող խոշոր իրադարձություններին և պատմական մատերիալիզմի քննադատության ավելի նրբին եղանակներ մշակել:

Սակայն պատմական մատերիալիզմի անսասան տրամաբանության դեմ և այն բանի դեմ, որ պատմական առաջընթացի ամեն մի քայլ հաստատում ու հարստացնում է այդ տրամաբանությունը, սոցիոլոգիական դպրոցների կամ նրանց տեսաբանների (որքան էլ փայլուն ընդունակություններով օժտված լինեն նրանք) ջանքերը սիզիֆյան են:





Հ. Ե. ԹՈՒՄԱՆՅԱՆ

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԵՂԱՆԱԿՆԵՐԸ

## 1. ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹՅՈՒՆԸ ՆԵՐԿԱ ԷՏԱՊՈՒՄ

Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը շատ բարդ պրոբլեմ է և ընդգրկում է պլանավորման ու արտադրության կազմակերպման բոլոր կողմերը: Հարցի լուծումը պահանջում է արտադրությունն ավելացնելու բոլոր գործոնների կատարելագործում, ինչպես նաև արտադրության ծախսերի առավելագույն իջեցում: Հասարակական արտադրության արդյունավետությունը բնութագրում է հասարակության տրամադրության տակ գտնվող նյութական և աշխատանքային ռեսուրսների օգտագործման աստիճանը: Հասարակական արտադրության բարձր արդյունավետության մեջ դրսևորվում են արտադրության սոցիալիստական եղանակի վճռական առավելությունները կապիտալիստական արտադրաեղանակի նկատմամբ:

Արտադրության արդյունավետության բարձրացման ընդհանրական ցուցանիշը հասարակական արդյունքի մեջ ազգային եկամտի մասսայի և բաժնի ավելացումն է: Ազգային եկամուտը հարաբերականորեն այնքան մեծ է, որքան՝ արտադրամիջոցների տնտեսումը և որքան ավելի շատ արտադրանք է թողարկվում աշխատանքի մեկ միավորի հաշվով: Բարձր ինդուստրիալ զարգացում ունեցող երկիրը հնարավորություն ունի նյութական ու աշխատանքային ռեսուրսների նվազագույն ծախսումներով հասնել արտադրանքի առավել աճի:

Ազգային եկամտի և նյութական ծախսերի արժեքային հարաբերությամբ է արտահայտվում հասարակական արտադրության արդյունավետությունը: Եթե նշված հարաբերությունը փոփոխվի այնպես, որ ազգային եկամտի համեմատությամբ տեղի ունենա նյութական ծախսերի առավել աճ, ապա կդանդաղի ազգային եկամտի աճը, կպակասի նրա բաժինը հասարակական արդյունքի մեջ, հետևապես և կիջնի հասարակական արտադրության արդյունավետության աստիճանը: Ընդհակառակը, եթե ազգային եկամտի աճի տեմպերը գերազանցեն նրա արտադրության վրա ծախսված նյութական արժեքների աճի տեմպերին, ապա այդ կհանգեցնի հասարակական արդյունքի մեջ ազգային եկամտի բաժնի և մասսա-

ղի ավելացմանը, որը և կնշանակի հասարակական արտադրության արդյունավետության բարձրացում:

Հասարակական արտադրության արդյունավետության աստիճանի առավել կոնկրետ ցուցանիշ է՝ ազգային եկամտի բացարձակ ու հարաբերական աճման հետ մեկտեղ, ազգային եկամտի աճը մեկ շնչի հաշվով: Ազգային եկամտի արտադրության անփոփոխ մնալը կամ պակասելը (մեկ շնչի հաշվով) ապացույց է նյութական արտադրության անբավարար արդյունավետության, ինչպես նաև այդ հասարակության անկարողությանը՝ ընդարձակելու սպառման և կուտակման աղբյուրը: Ընդհակառակը, ազգային եկամտի արտադրության աճի տեմպերը որքան գերազանցեն բնակչության աճի տեմպերը, այնքան կաճի մեկ շնչի հաշվով ազգային եկամտի արտադրությունը, որը հնարավորություն կընձեռի հասարակության բարեկեցության բարձրացման հետ միասին ընդլայնել արտադրությունը:

ՍՍՀՄ ազգային եկամտի արտադրությունը 1940—1965 թվականներին ավելացել է 5,9 անգամ, մինչդեռ բնակչությունն ավելացել է 1,2 անգամ, որը նշանակում է՝ ազգային եկամտի արտադրությունը մեկ շնչի հաշվով ավելացնել մոտ 5 անգամ:

Սոցիալիստական շինարարության փորձը Սովետական Միությունում և սոցիալիզմի լագերի մյուս երկրներում ակնառու ցույց է տալիս, որ, կապիտալիզմի համեմատությամբ, մենք ունենք կարգացման տեմպերի գերազանցություն: Թեև չի կարելի մոռանալ, որ կապիտալիզմը տակավին չի սպառել իր հնարավորությունները և առանձին էտապներում կարող է արագ կարգանալ:

Հայտնի է, որ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի սեպտեմբերյան պլենումը (1965) ձեռնարկումների մի ամբողջ սիստեմ մշակեց բարելավելու արտադրության կառավարումը՝ որպես միջոց հասարակական արտադրության տեմպերը բարձրացնելու: Արտադրության աճի բարձր տեմպերի պահպանման անհրաժեշտությունը թելադրվում է, ո՛չ միայն բավարարելու հասարակության ընթացիկ, այլև կարգացման գալիք ժամանակաշրջանի պահանջները:

Արտադրաուժերի անընդհատ կարգացման անհրաժեշտությունից ելնելով, պահանջվում է մշտապես ներդնել միջոցների համապատասխան քանակություն՝ գիտության ու տեխնիկայի կարգացման համար, առանց որի կամ տեղի չի ունենա, կամ կդանդաղի հասարակական առաջադիմությունը. նույնքան անհրաժեշտ է միջոցներ ունենալ նաև ժողովրդի բարեկեցության բարձրացման համար: 1959—1964 թվականների ժամանակաշրջանում ՍՍՀՄ արտադրության կարգացման միջին տարեկան տեմպերը ցածր էին այն հնարավորությունից, որով օժտված էր մեր երկիրը. այդ տեմպերը չէին ապահովում սոցիալիստական էկոնոմիկայի առջև ծառացած խնդիրների կենսագործումը: Դրանք բավարար չէին ո՛չ միայն այն պատճառով, որ կարող էին դանդաղեցնել առաջընթացը դեպի կոմունիզմ, այլև այն, որ դժվարացնում էին այնպիսի կարևորագույն խնդրի լուծումը, ինչպիսին ժողովրդի կենսամակարդակի բարձրացումն է: Այդ մասնավորապես նկատելի է գյուղատնտեսական արտադրանքի բնագավառում, որը 1959—1964 թվականներին նշանակալի չափով նվազեց: Դա նշանակում է, որ երկրում սահմանափակվեցին բնակչության կենսամակարդակի բարձրացման հնարավորությունները: Այսպիսով, ակնհայտ դարձավ, որ անհրաժեշտ է բարձրացնել արտադրության կարգացման տեմպերն ընդհանրապես և գյուղատնտեսությանը՝ մասնավորապես:

Տնտեսության կարգացման տեմպերը հնարավոր է արագացնել արտադրական կուտակման նորման կամ արտադրության արդյունավետությունը բարձրացնելով:



նելով: Առաջին դեպքում՝ հասարակական արդյունքի մեջ, արտադրամիջոցների արտադրության ավելացման նպատակով կմեծանա արտադրամիջոցների բաժինը: Այդ կնշանակի, այս կամ այն չափով կրճատել սպառողական ֆոնդերի աճը, քանի որ ազգային եկամտի աճի մեծ մասը պետք է տրամադրել արտադրության նպատակներին: Երկրորդ դեպքում՝ հարկ չի լինի բարձրացնել արտադրական կուտակման նորման: Ընդհակառակը, քանի որ արտադրության արդյունավետության բարձրացումը նշանակում է ներդրվող միջոցների միավորի հաշվով ազգային եկամտի ավելացում, ուստի, հնարավորություն կստեղծվի առանց արտադրական կուտակման նորման բարձրացնելու, բարձրացնել ժողովրդական սպառումը, անփոփոխ թողնելով և՛ հասարակական արդյունքի աճման տեմպերը, և՛ արտադրական կուտակման նորման:

Տնտեսական կարգացման օբյեկտիվ պրոցեսների վերլուծությունը ցույց է տալիս, որ առաջիկա 5—10 տարիներին հնարավոր է հասնել հասարակական ամբողջական արդյունքի և կապիտալ ներդրումների հավասար աճի: Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պրոցեսը իրականանալու է արտադրության ինտենսիվացման բարձրացման ուղղությամբ, որը, սակայն, ուղեկցվելու է աշխատանքային շաբաթի տևողության կրճատման հետ: Հաշվի առնելով այդ, հասարակական արտադրության արդյունավետությունը կբարձրանա այն չափով, որչափով անփոփոխ թողնելով արտադրական կուտակման նորման, տնտեսական կարգացման տեմպերը ավելի բարձր կլինեն 1965 թվականից:

Ներկա էտապում բարձր տեմպեր ապահովելու վճռական միջոցը արտադրության արդյունավետության բարձրացումն է՝ նրա ինտենսիվացման ճանապարհով: Արտադրության պրոցեսների ինտենսիվացման անհրաժեշտությունը պայմանավորված է նաև ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության գոյությամբ, այդ հեղափոխության ընձեռած հնարավորություններն առավել արդյունավետ օգտագործելով: Ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության այնպիսի կողմերը, ինչպիսիք են՝ ավտոմատացումը, պոլիմերները, ատոմային էներգիան և նորագույն տեխնոլոգիայի մի շարք տեսակներ, փոխում են ժամանակակից խոշոր արդյունաբերության բնույթը: Սակայն, հաշվի առնելով այն, որ, բացի նշված միջոցներից, արտադրության մեջ կան և մեծ չափերով օգտագործվում են նաև ներկայիս տեխնիկան և տեխնոլոգիան, ո՛չ միայն այսօր, այլև նոր հնգամյակում, արտադրության արդյունավետության հարցերը լուծելիս պետք է միմյանց հետ զուգակցել առկա և ապագա տեխնիկայի ու տեխնոլոգիայի ընձեռած հնարավորությունները:

Այդ զուգակցումը գործնականորեն այն է, որ նախ, նոր արտադրությունը կազմակերպելիս չպետք է կիրառել հին տեխնիկան և տեխնոլոգիան, մյուս կողմից՝ անհրաժեշտ է առկա միջոցներն առավելագույն չափով ինտենսիվացնել, այսինքն՝ սարքավորումներն ըստ կարողության օգտագործել:

Սակայն, անհրաժեշտ է նշել, որ ժամանակակից արդյունաբերության տեխնիկական մակարդակը, ձեռնարկությունների և ճյուղերի միջև գոյություն ունեցող բարդ կապերն անհնար են դարձնում ինտենսիվացման հարցերը սահմանափակել ձեռնարկության նեղ շրջանակներով: Արտադրության տեխնոլոգիայի բարձրացումը, միջճյուղային կապերի հարաճուն ընթացքը և այլն հասցնում են այն բանին, որ արտադրության ինտենսիվացումը ավելի ու ավելի է կախման մեջ մտնում արդյունաբերության ճյուղային կառուցվածքից:

Անցած յոթնամյակում արդյունաբերության ճյուղային կառուցվածքում կա-

տարված տեղաշարժերի վերլուծությունից երևում է, որ տեխնիկական առաջադիմությունը ներկայացնող գլխավոր ուղղությունների՝ էլեկտրաէներգիայի, մեքենաշինության և քիմիական արդյունաբերության տեսակարար կշիռն ամբողջ արդյունաբերության մեջ բարձրացել է 35 տոկոսով: Կուսակցության XXIII համագումարի դիրեկտիվները նոր՝ 1966—1970 թվականի հնգամյա պլանում նախատեսում են վերը նշված ճյուղերի գերապանց վարգացում: Դրան համապատասխան էլեկտրաէներգիայի արտադրությունը, 1965 թվականի համեմատությամբ, 1970 թվականին կաճի 68 տոկոսով և կկազմի 850 կիլովատ ժամ, հարմարանքների ավտոմատացման միջոցների արտադրությունը՝ 77 տոկոսով, քիմիական սարքավորումներինը՝ 2,1 անգամ, քիմիական արդյունաբերության արտադրանքը՝ 2 անգամ և այլն: Սրանք գործոններ են, որոնք կանխորոշում են արտադրության ինտենսիվացումն արդյունաբերության մեջ:

Արտադրության ինտենսիվացմամբ երկար տարիներ առանց նոր հողեր հերկելու կարող է նշանակալիորեն ավելանալ գյուղատնտեսության արտադրանքը: Ո՛չ միայն հողագործության, այլև անասնաբուծության մեջ էլ է հնարավոր անասունների գլխաքանակը չփոխելով (անասունների մթերատվության բարձրացմամբ) ավելացնել անասնապահական մթերքները: Այսպիսով, արտադրության պրոցեսների ինտենսիվացումն այն կարևոր ուղին է, որը հնարավորություն կընձեռի բարձրացնելու արտադրության տնտեսական արդյունավետությունը, ապահովելու զարգացման բարձր տեմպեր և բարձրացնելու ժողովրդի կենսամակարդակը:

Հաշվի առնելով արտադրության արդյունավետության բարձրացման ռեալ հնարավորությունները, կուսակցության XXIII համագումարը 1966—1970 թվականների համար ժողովրդական տնտեսության զարգացման տեմպեր և կարևորագույն համամասնություններ սահմանեց: Դրան համապատասխան ազգային եկամտի միջին տարեկան աճը կազմելու է 7 տոկոս, արդյունաբերության համախառն արտադրանքինը՝ 8—8,4, գյուղատնտեսությանը՝ ավելի քան 5, կապիտալ ներդրումներինը՝ ավելի քան 8, բնակչության ռեալ եկամուտներինը մեկ շնչի հաշվով՝ 5,5 տոկոս: Ինչպես տեսնում ենք, ժողովրդական տնտեսության գլխավոր ցուցանիշների գծով զարգացման տեմպերն այս հնգամյակում ավելի բարձր են, քան յոթնամյակում էր: Տնտեսական բարձր տեմպերը արդյունք են ո՛չ միայն մեր հասարակարգի առավելությունների, այլև վերջինների ճիշտ պլանավորման: Հնգամյակում հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը հնարավորություն կընձեռի ապահովելու էկոնոմիկայի զարգացման արագացումը և ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը՝ առանց արտադրական կուտակման նորման բարձրացնելու:

Կուսակցության XXIII համագումարի հնգամյա պլանի վերաբերյալ դիրեկտիվները ժողովրդական տնտեսության էլեմենտների այնպիսի հարաբերակցություններ են սահմանել, որ զարգացումն ընթանա բարձր տեմպերով ո՛չ միայն առաջիկա տարիներին, այլև երկարատև ժամանակաշրջանում: Միաժամանակ, անհրաժեշտ է նշել, որ հնգամյա պլանով սահմանված տեմպերը բոլոր դեպքերում չի կարելի համարել առավելագույնը, որ դրանք կարող են բարձրանալ նյութական, աշխատանքային ռեսուրսների առավել լրիվ օգտագործմամբ. մասնավորապես պլանների կատարման ընթացքում կարող են երևան գալ նոր, չօգտագործված ռեզերվներ, որոնք չեն նախատեսված պլանում:

Կուսակցության XXIII համագումարը բարձր տեմպերի ապահովման հուսա-



լի միջոցը համարեց հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը: Արտադրության արդյունավետության բարձրացման հարցերն են քննարկված կուսակցության Կենտկոմի մարտյան և սեպտեմբերյան (1965 թ.) պլենումներում, որոնց որոշումները լիակատար հավանություն ստացան XXIII համագումարի կողմից:

Նշված պլենումների որոշումների և XXIII համագումարի դիրեկտիվների օրգանական կապը հենց նրանում է, որ համագումարի մշակած արտադրության արդյունավետության բարձրացման ծրագիրը հենվում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում (սահմանված ժամկետներում) արմատական տնտեսական ռեֆորմ կիրառելու վրա: Տնտեսական ռեֆորմի արդյունավետությունը, վերջին հաշվով, չափվելու է արտադրության արդյունավետության բարձրացման աստիճանով: Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը պայմանավորված է բազմաթիվ գործոններով, որոնցում էական նշանակություն ունի կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացումը:

## 2. ԿԱՊԻՏԱԼ ՆԵՐԴՐՈՒՄՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ

Ժողովրդական տնտեսության զարգացման տեմպերի, նրանց արդյունավետության բարձրացման կարևորագույն գործոններից մեկը կապիտալ շինարարությունն է: Արտադրության մասշտաբների ընդարձակման համար բացի այլ պայմաններից, անհրաժեշտ է արտադրական ֆոնդերի համապատասխան քանակություն, որի ստեղծումն էլ կապված է կապիտալ ներդրումների հետ: Բավական է նշել, որ ՍՍՀՄ ազգային եկամտի կուտակման ֆոնդի մոտ 80 տոկոսը ուղղված է ժողովրդական տնտեսության արտադրական ֆոնդերի և պետական ռեզերվների աճի նպատակին: Նոր հնգամյա պլանով նախատեսվում է հիմնական ֆոնդերի համապատասխան աճ ստանալու համար ժողովրդական տնտեսության մեջ 310 միլիարդ ռուբլու կապիտալ ներդրումներ կատարել: Ներդրումներից գոյացած ֆոնդերը, բարձրացնելով աշխատողների ֆոնդազինվածությունը, պայման պետք է ծառայեն բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և մեծացնելու ազգային եկամտի ծավալը: Այսպիսով, կապիտալ ներդրումները, լինելով ազգային եկամտի մի մասը, իրենցով պայմանավորում են ազգային եկամտի հետագա աճ:

Հասկանալի է, որ կապիտալ ներդրումների միևնույն ծավալի պայմաններում ազգային եկամուտն ավելի մեծ չափերով կաճի այն դեպքում, երբ ներդրումներն ավելի խելացիորեն օգտագործվեն: Այդ կապակցությամբ կենսական անհրաժեշտություն է, որ ՍՍՀՄ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման պրոցեսը զուգակցվի կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացմամբ՝ որպես հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման բաղկացուցիչ մաս: Նկատի առնելով կապիտալ ներդրումների և ազգային եկամտի աճի միջև գոյություն ունեցող օրգանական կապը, ժողտնտեսության մեջ կապիտալ ներդրումների արդյունավետությունը որոշվում է ազգային եկամտի ֆիզիկական ծավալի մեծացմամբ: Ազգային եկամտի ծավալի մեծացումը կարող է կատարվել կապիտալ ներդրումների՝ աշխատանքի ֆոնդազինվածությունը նոր, առավել կատարյալ աշխատամիջոցների կիրառման ու այդ հիման վրա աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին: Դրա

հետ մեկտեղ, կապիտալ ներդրումների մի մասը հնարավոր է ուղղել գոյություն ունեցող արտադրական ֆոնդերի սովորական ընդլայնմանը ու այդ հիման վրա՝ աշխատողների նոր կոնտինգենտ ներգրավել արտադրության պրոցես, որը նույնպես ազգային եկամտի աճի գործոն է:

Կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետությունը բարձրացնելու կարևոր պայման է այդ ներդրումները ժողովրդական տնտեսության ճյուղերի միջև նպատակահարմար ձևով բաշխելը, այն հաշվով, որ նախապատվությունը տրվի առաջադիմական ճյուղերի զարգացմանը:

Կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացման գործում էական դեր ունի տեխնիկական առաջադիմությունը, որի շնորհիվ բարձրանում է ֆոնդահատույցը: Տեխնիկական առաջադիմությունը հանգեցնում է այն բանին, որ նոր տեխնիկայի արտադրողականությունն աճում է ավելի արագ, քան նրա արժեքը, որը փաստորեն նշանակում է ֆոնդահատույցի բարձրացում:

Ահա թե ինչու կապիտալ ներդրումները պլանավորելիս դրանց տնտեսական արդյունավետությունը բարձրացնելու նպատակով պետք է նախապատվություն տալ այնպիսի հիմնական ֆոնդերի ընդլայնված վերարտադրությանը, որոնք խարսխված լինեն նորագույն տեխնիկայի վրա և ապահովեն աշխատանքի արտադրողականության բարձրացումը:

Հասկանալի է, որ տեխնիկական առաջադիմությունը ֆոնդահատույցը բարձրացնելու գործում տարբեր ճյուղերի վրա տարբեր չափով կարող է ներազդել, կախված իր իսկ տեխնիկական առաջադիմության ձևից: Հայթայթող արդյունաբերության մեջ տեխնիկական առաջադիմության ձևերն ու ներգործությունը կախում ունեն օգտակար հանածոյի հանույթի լեռնային երկրաբանական պայմաններից. ուստի, արդյունաբերության այդ ճյուղերը հիմնական ֆոնդերի կատարելագործումը պլանավորելիս հաշվի են առնում յուրաքանչյուր հանքավայրի առանձնահատկությունները:

Վերամշակող արդյունաբերության մեջ կարևոր նշանակություն ունի հումքի կազմը և արդյունքը: Նկատի առնելով այդ, նախքան հիմնական ֆոնդերի կազմի հետ կատարվելիք տեխնիկական փոփոխությունների որոշումը, պետք է սահմանել տվյալ ճյուղի հումքային բազայի զարգացման թողարկվելիք արտադրանքի փոփոխման հեռանկարները: Այսպես, մեքենաշինության և քիմիական արդյունաբերության մեջ արտադրանքի նորացումը նախադրյալ է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական առաջադիմության համար, ուստի, այս ճյուղերի տեխնիկական վերազինումը առաջնահերթ խնդիր է:

Կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետության բարձրացման կարևոր միջոց է գործարկվող արտադրական կարողության միավորին հասնող կապիտալ ծախսումների կրճատումը, որին կարելի է հասնել մեքենաների առավել խնայողաբար ներդրման, կոնստրուկցիաների թեթևացման, շինարարության ինդուստրացման և մեքենայացման ճանապարհով: Կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետության բարձրացման գործոն է նաև արտադրության ֆոնդատարողության իջեցումը: Սակայն, անհրաժեշտ է նշել, որ տեսակարար կապիտալ ներդրումների հաշվարկի մեթոդիկան կատարյալ չէ, քանի որ այն հաշվի չի առնում միևնույն ելահումքից ստացվող արտադրանքի որակը (օրինակ, պողպատի մեկ տոննայի վրա արված տեսակարար կապիտալ ծախսումները): Կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետությունը բարձրացնելու կարևոր ազդակներից է շինարարության ժամկետների կրճատումը և հիմ-



նական ֆոնդերի գործարկման արագացումը, որին կարելի է հասնել շինարարության տեմպերն արագացնելու, անավարտ շինարարության մասշտաբները կրճատելու միջոցով:

Պետք է նկատել, որ դեռ այսօր էլ շինարարության ցիկլի տևողությունը երկար է, ուստի, անավարտ շինարարության ծավալը գնալով ո՛չ միայն չի կրճատվում, այլ ավելանում է: 1963 թվականին անավարտ շինարարության ծավալը հասել էր 26,1 միլիարդ ռուբլու: Անավարտ շինարարության մեջ գտնվող նյութական և դրամական ռեսուրսները դուրս են հանված ակտիվ ժողովրդատնտեսական շրջանառությունից և դրանց հատուցումը կիրականանա տարիներ հետո միայն: Այսպիսով, որքան բարձր է անավարտ շինարարության ծավալը, այնքան ավելի են անէանում ներդրումները: Անավարտ շինարարությունից ստացվող վնասը հաշվվում է ո՛չ միայն ներդրված ռեսուրսների արժեքով, այլև նրանց անէացման, որ կրում են շինարարական կազմակերպությունները:

Շինարարության ցիկլի երկարատևության գլխավոր պատճառը միջոցների փոշիացումն է՝ շատ օբյեկտների կառուցումը: 1959—1964 թվականներին տեղի է ունեցել կապիտալ ներդրումների փոշիացում, որի մասին մանավորապես նշվեց ՍՄԿԿ ԿԿ-ի սեպտեմբերյան (1965) պլենումում: Հասկանալի է, որ ներդրումների կենտրոնացումը առավել կարևորագույն օբյեկտների շինարարության վրա, կարողությունների գործարկման արագացումը, նոր ձեռնարկությունների յուրացման ժամկետների կրճատումը հնարավորություն կընձեռեն առաջիկա տարիներին նշանակալիորեն բարձրացնելու ներդրումների արդյունավետությունը:

Կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետության բարձրացման խոշոր ռեզերվ է նրա ճյուղային կառուցվածքի հետագա կատարելագործումը: Քիմիական արդյունաբերության արագացած զարգացումը կնշանակի կապիտալ ներդրումների ճյուղային կառուցվածքի փոփոխում, ընդ որում, արդյունաբերության մյուս ճյուղերի համեմատությամբ, այստեղ կապիտալ ներդրումները կհատուցվեն ավելի կարճ ժամանակամիջոցում:

Գազի և ածխի տեսակարար կշռի բարձրացումը վառելիքի բալանսում արտացոլում է աշխատանքի արտադրողականության բարձրացումը վառելիքի արդյունաբերության և ամբողջ ժողտնտեսության մեջ: Հասկանալի է, որ վառելիքի արդյունաբերության մեջ կապիտալ ներդրումների արդյունավետությունը պետք է չափել ո՛չ թե վառելիքի մեկ տոննայի վրա կատարվող տեսակարար կապիտալ ծախսերով, այլ պայմանական վառելիքով: Ինքնըստինքյան հասկանալի է. տարբեր ավազաններից ստացված ածխի մեկ տոննան բավարարում է տարբեր չափի պահանջներ:

Գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետությունը որոշելիս, անհրաժեշտ է հաշվի առնել նրա մի քանի առանձնահատկությունները: Նախ այն, որ այստեղ արտադրության գլխավոր միջոցը և պայմանը՝ հողն է. վերարտադրության տնտեսական պրոցեսը միահյուսվում է բնական պրոցեսի հետ, իսկ աշխատանքի արտադրողականության բարձրացման երկու հիմքեր կան՝ բնական և հասարակական արտադրաուժերը: Հողի բնական բերրիությունը, անշուշտ, իր ներգործությունն է ունենում նրա տնտեսական բերրիության վրա: Եթե արդյունաբերության տեխնիկական պինվածության աստիճանի բարձրացումն անմիջականորեն ներգործում է աշխատանքի արտադրողականության վրա, բարձրացնում այն, ապա գյուղատնտեսության

բնագավառում այդպես չէ: Այստեղ արտադրության վերջնական արդյունքը կախում ունի բազմաթիվ գործոններից (մեքենայացում, ոռոգում, պարարտացում, հողի մշակման եղանակներ, անասունների պահպանում ու նրանց կոստեխնիկական սպասարկում և այլն) : Այդ ամենի միաժամանակյա ներգործումը հնարավորություն չի տալիս չափելու յուրաքանչյուրից ստացվող արդյունավետությունը: Հողի բերքատվության, անասունների մթերատվության բարձրացումը կարող է տեղի ունենալ, եթե միաժամանակ կիրառվում է ագրո և կոոտեխնիկական միջոցների կոմպլեքսը: Հակառակ պարագայում աշխատանքի արտադրողականությունը արտադրության միջանկյալ փուլերում կիջնի:

Նկատի առնելով գյուղատնտեսության նշված առանձնահատկությունները, կապիտալ ներդրումների արդյունավետությունը պետք է չափել մի շարք ցուցանիշներով: Դրանք են՝ արտադրանքի միավորի ինքնարժեքը, արտադրանքի միավորի վրա աշխատանքի ծախսումները, 100 հեկտար հողատարածությունից ստացվող գյուղատնտեսական արտադրանքը, լրացուցիչ կապիտալ ներդրումների յուրաքանչյուր 100 ռուբլու դիմաց արտադրանքի աճը, կապիտալ ներդրումների հետգնման ժամկետը և այլն: Նշված ցուցանիշներից յուրաքանչյուրը բնութագրում է կապիտալ ներդրումների արդյունավետության այս կամ այն կողմը, իսկ այդ ցուցանիշների ամբողջությունը՝ գյուղատնտեսության տընտեսական արդյունավետությունը:

Գյուղատնտեսության ետ մնալը հաղթահարելու և նրա տնտեսական արդյունավետությունը բարձրացնելու նպատակով 1966—1970 թվականներին կապիտալ ներդրումների ծավալը կրկնապատկվում է: Գյուղատնտեսության կապիտալ ներդրումների տեսակարար կշիռը ներդրումների ընդհանուր ծավալի մեջ 1959—1963 թվականների 11,3 տոկոսից, 1966—1970 թվականներին բարձրանալու է 17,4-ի: Հնգամյակի տարիներին գյուղատնտեսությունը կստանա՝ 1,6 անգամ ավելի տեխնիկա, երկու անգամ ավելի պարարտանյութ: Դրանց յուրացման հետ միասին հողն ավելի ռացիոնալ կօգտագործվի, որը և կհանգեցնի գյուղատնտեսական արտադրության տնտեսական արդյունավետության բարձրացմանը:

Ժողովրդական տնտեսության այս կամ այն ճյուղի արդյունավետության վրա ավելի կամ պակաս չափով ազդում են նաև մյուս ճյուղերը. ուստի, արդյունավետությունը որոշելիս պետք է նկատի ունենալ այդ ճյուղերի հարակցությունը: Այսպես, մետաղաձուլական գործարան կառուցելիս չի կարելի սահմանափակվել միայն գործարանի վրա կապիտալ ներդրումների արդյունավետությունը հաշվարկելով, այլ անհրաժեշտ է նկատի ունենալ նաև հանքաքարի, վառելիքի, տրանսպորտի ներդրումները, առանց որոնց մետաղաձուլական գործարանը չի կարող աշխատել: Ջերմաէլեկտրակայանների կառուցման համար կապիտալ ներդրումների չափերը և արդյունավետությունը որոշելիս նույնպես պետք է հաշվի առնել վառելիքի արտադրության համար կատարվելիք կապիտալ ներդրումները: Կամ, երբ կառուցում ենք արդյունաբերական, գյուղատնտեսական և այլ արտադրական ձեռնարկություններ, չի կարելի նկատի չառնել այն ներդրումները, որոնք անհրաժեշտ են բնակարանային և կուլտուր-կենցաղային շենքերի կառուցման համար: Այսպիսով, կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետությունն այս կամ այն ճյուղի կամ ձեռնարկության մասշտաբով որոշելիս, պետք է նկատի ունենալ այն հարակցական կապերը, որոնք կյանքի են կոչում լրացուցիչ կապիտալ ներդրումներ:



Հայտնի է, որ հիմնական արտադրաֆոնդերի աճը կատարվում է նոր արտադրամիավորների կառուցման և եղածների վերակառուցման ու ընդլայնման միջոցով: Ներդրումների տնտեսական արդյունավետության բարձրացումը կախում կունենա նրանից, թե արտադրահզորությունների ավելացման ինչպիսի ուղղություն է ընտրված: Գործող ձեռնարկությունների ընդլայնումն ու վերակառուցումը նորերի կառուցման համեմատությամբ ունի մի շարք առավելություններ: Նախ, դա արտադրական կարողություններն ավելացնելու ամենակարճ ճանապարհն է, ինչպես և ունի ներդրումների հետգնման կարճ ժամկետ: Նկատի առնելով այդ, մասնավորապես վերամշակվող արդյունաբերության ճյուղերում ծավալված են վերակառուցման ու ընդլայնման մեծ մասշտաբի աշխատանքներ: ՍՍՀՄ արդյունաբերության շատ թվով ձեռնարկություններ, որոնք ստեղծվել են նախապատերազմյան առաջին և երկրորդ հնգամյակներում, իրենց սարքավորումներով հնացել են և խիստ անհրաժեշտություն է առաջացել դրանք փոխարինել նորերով: 1966—1970 թվականներին կապիտալ ներդրումների խոշոր մասը կծախսվի գործող ձեռնարկությունների ընդլայնման ու վերակառուցման վրա: Հաշված է, որ գործող ձեռնարկությունների հնացած սարքավորումները նորերով փոխարինելիս, այդ ձեռնարկությունների արտադրանքը հնարավոր է ավելացնել առնվազն մեկ երրորդով: Կապիտալ ներդրումների որոշակի մասը գործող ձեռնաքկությունների ընդլայնմանն ու վերակառուցմանը ուղղելով, ստեղծում ենք ներդրումների առավել ռացիոնալ կառուցվածք, դրանով բարձրացնում ներդրումների այն մասի տեսակարար կշիռը (ողջ ներդրումների մեջ), որը ծախսվում է ակտիվ արտադրական ֆոնդերի ստեղծման նպատակով և, ընդհակառակը, իջեցնում ֆոնդերի պասսիվ մասի ծախսերի տեսակարար կշիռը:

Կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացումը բացի շինարարությունից, կախում ունի նաև գործարկման հանձնած արդյունաբերական ձեռնարկությունների յուրացման ժամկետների կրճատումից: Ներկայումս գործարկվող ձեռնարկությունների նախագծային կարողությունների և տնտեսական ցուցանիշների (աշխատանքի արտադրողականությունը, ինքնարժեքը և այլն) յուրացման ժամկետները շատ մեծ են: Արդյունաբերության տարբեր ճյուղերում դրանք տատանվում են 3—7 տարվա միջև, այդ ժամանակամիջոցում նոր գործարկվող ձեռնարկությունների կգալի մասը վնասով է աշխատում: Այս, իհարկե, իջեցնում է ներդրումների տնտեսական արդյունավետությունը և խոշոր կորուստներ պատճառում ժողովրդական տնտեսությանը:

Ներդրումների տնտեսական արդյունավետությունը բարձրացնելու նպատակով անհրաժեշտ է սահմանել գիտականորեն հիմնավորված յուրացման ժամկետներ և աշխատողներին շահագրգռող նյութական խթաններ: Կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետության բարձրացումը մեծ չափով կախված է նաև դրանց տերիտորիալ տեղաբաշխումից: Ներդրումների տերիտորիալ տեղաբաշխումը պետք է ապահովի հումքային ու էներգետիկ ռեսուրսների նոր, առավել ձեռնտու աղբյուրների ներգրավումը տնտեսական շրջանառության մեջ, այն հաշվով, որ արտադրանքի թողարկումը կատարվի նվազագույն ծախսումներով:

Կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետությունը բարձրացնելու առումով նոր կառուցվող ձեռնարկությունները տեղաբաշխելիս, անհրաժեշտ է կատարել նորակառույցների տեխնիկա-տնտեսական հիմնավորում: Արդյունաբերության յուրաքանչյուր ճյուղ իր տեխնիկա-տնտեսական բնույթով տարբեր է

և ազդում է ձեռնարկությունների տեղաբաշխման վրա: Կան ճյուղեր, որոնց ձեռնարկությունները նյութատար են կամ աշխատատար, կամ էլ՝ էներգատար: Որոշ ճյուղերի ձեռնարկությունների տեղաբաշխման համար առաջնակարգ նշանակություն ունեն հումքի աղբյուրները, մյուսների համար՝ էներգիան և այլն:

Կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետության հետագա բարձրացման անհրաժեշտությունից ելնելով, բավական շատ միջոցներ են ներդրվելու երկրի արևելյան շրջաններում: Դրան համապատասխան, 1966—1970 թվականներին Սիբիրում և Ղազախստանում ստեղծվելու են վառելիքա-էներգետիկ հզոր բազաներ՝ բաց եղանակով հայթայթվող ածխի և Անգարայի ու Ենիսեյի հսկայական հիդրոռեսուրսների հիման վրա: Այդ շրջաններում շարունակվելու է խոշոր էներգատար արտադրությունների կարգացումը: Սիբիրում կավարտվի երկրի խոշորագույն մետաղաձուլական բազայի շինարարությունը: Մեծ տեղաշարժեր կկատարվեն քիմիական արդյունաբերության տեղաբաշխման գործում:

Մեծ քիմիայի նոր կենտրոններ են ստեղծվում Ղազախստանում, Ուրալում, Միջին Ասիայում և բնական գազ ու նավթ ունեցող շրջաններում: Արտադրության տեղաբաշխման մեջ մեծ տեղաշարժեր կմտցնեն նոր գազամուղների կառուցումը: Գազամուղների կառուցման հիման վրա ՌՍՖՍՀ-ի Եվրոպական մասում, Ուրալում, Անդրկովկասում կվերացվի վառելիքի դեֆիցիտը: Գազի հիման վրա նշված շրջաններում կարգանալու է քիմիական և այլ էներգատար արդյունաբերությունը:

Այսպիսով, կապիտալ ներդրումների արդյունավետությունը բարձրացնելու համար պետք է օգտագործել տնտեսական աճին խթանող բոլոր օբյեկտիվ գործոնները և մասնավորապես՝ տեխնիկական առաջադիմությունը: Կապիտալ ներդրումների հսկայական ծավալն ու մասշտաբները, գիտության և տեխնիկայի արագ առաջադիմությունը հրամայաբար պահանջում են՝ պլանավորման գիտական մակարդակի հետագա բարձրացում, նրա մեթոդների կազմակերպման կատարելագործում:

*(շարունակելի)*



# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՇԱՀՈՒԹԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

ՔՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

*Գյուղատնտեսական մթերքների վաճառքի և հանձնման գործող գները որոշ չափով տարբերվում են ընդհանուր, հասարակայնորեն անհրաժեշտ ծախքերից: Դրա հետևանքով էլ հաճախ միևնույն մթերքների գները առաջիններին տալիս են բարձր շահույթի նորմա, երկրորդներին՝ ցածր, իսկ երրորդներին՝ վնաս: Գները ոչ բոլոր տեղերում են հատուցում ծախքերը և նըպաստում կոլտնտեսականների ու սովխոզի բանվորների նյութական շահագրգռվածության բարձրացմանը:*

*Կոլտնտեսությունների տարեվերջի հաշվեկշիռների ուսումնասիրությունները ցույց են տվել, որ 1959—1964 թվականներին Գորիսի շրջանի կոլտընտեսություններում համախառն արտադրանքը մեկ մարդ-օրվա հաշվով աճել է 74,8 տոկոսով, զուտ եկամուտը՝ 70, իսկ կոլտնտեսականներին տրված վարձատրությունը՝ 80 տոկոսով:*

*Սակայն, նկատելի են անբարենպաստ երևույթներ: Համախառն եկամուտը, 100 ռուբլի հիմնական ֆոնդերի հաշվով, այդ նույն ժամանակաշրջանում աճել է 10,5, զուտ եկամուտը՝ 9 տոկոսով: Խիստ ցածր էր նաև արտադրության շահութաբերության նորման, որն այդ տարիներին կազմել է 15 տոկոս: Ցածր շահութաբերության պատճառներից մեկն այն է, որ գյուղատնտեսական մթերքների գնման գները ցածր են եղել դրանց ինքնարժեքից, որի հետևանքով էլ տնտեսությունները տրնտեսական տարին միշտ փակել են վնասով:*

*ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումը գյուղատնտեսության վերելքն ապահովելու նպատակով ձեռնարկած մի շարք կոնկրետ միջոցառումների հետ միասին ցուցում տվեց՝ բարձրացնել կոլտնտեսությունների և սովխոզների արտադրած մի շարք մըթերքների պետական գնման և մթերման գները, որը նպաստեց նաև տըրնտեսությունների շահութաբերության բարձրացմանը:*

*1965 թվականին շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում շահութաբերության նորման, 1964 թվականի համեմատությամբ, բարձրացավ 21,4 տոկոսով: Խնձորեսկ գյուղի* Լենինյան ուղի *կոլտնտեսությունը բարելավելով աշխատանքի կազմակերպումը և արտադրության վարման կուլտուրան, 1965 թվականին հացահատիկի համախառն արտադրանքը հասցրեց 18370 ցենտների կամ մեկ տարվա ընթացքում ավելացրեց 8.300, իսկ ամեն մի հեկտարի բերքատվությունը՝ 3,5 ցենտներով: Մսի արտադրությունը մեկ տարում, նախորդ տարվա համեմատությամբ, աճեց 500 ցենտներով, կաթինը՝ 4 հազար ցենտներով, իսկ մեկ ֆուրաժային կովի կաթնատվու-*

թյունը՝ 460 կիլոգրամով։ Դրա տնտեսական արդյունքը եղավ այն, որ կոլտնտեսությունը միայն հացահատիկի իրացումից ստացավ ավելի քան 103 հազար ռուբլի զուտ եկամուտ, կաթի արտադրությունից՝ 7,5 հազար ռուբլի։ Բարձրացավ շահութաբերության նորման։ Չնայած ոչխարաբուծությունն այս տնտեսության համար գլխավոր մասնագիտացված ճյուղն է, բայց 1965 թվականի տնտեսական տարին վնասով փակվեց։ Դրա գլխավոր պատճառն այն չէ, որ այստեղ ոչխարաբուծության զարգացման համար պայմաններ չկան։ Ընդհակառակը, կոլտնտեսությունն ունի ընդարձակ և փարթամ արոտներ, փորձված մասնագետներ։ Վնասի հիմնական պատճառն այն է, որ 1963—1964 թվականներին հեռավոր ձմեռանոցներում, ոչ բարենպաստ պայմանների հետևանքով, տնտեսությունը ավելի քան 5 հազար ոչխարի անկում ունեցավ, որը բացասաբար անդրադարձավ ոչխարաբուծության զարգացման վրա։ Դրանից խուսափելու համար, անցած ձմռանը կոլտնտեսությունը գյուղում կազմակերպեց ավելի քան 10 հազար գլուխ ոչխարների ձմեռումը։ Հոտը ժամանակին կերով ապահովելու շնորհիվ արդյունքները հիանալի են։ Ստացվել է 4,5 հազար առողջ գառ։ Միայն առաջին խուզից կոլտնտեսությունն ստացավ 36 տոննա բարձրորակ բուրդ և կատարեց բրդի արտադրության տարեկան առաջադրանքը։ Այս տարի բրդի և ոչխարի մսի արտադրությունից ստացված եկամուտները կծածկեն ոչխարաբուծության անցյալ տարվա 61 հազար ռուբլու վնասը և տնտեսությունը կունենա ավելի քան 90 հազար ռուբլու լրացուցիչ եկամուտ։ Կոլտնտեսությունը լավ եկամուտ ստացավ նաև մեղվաբուծությունից։

Անցյալ տարի շրջանը 80 հազար ցենտների փոխարեն արտադրեց 94 հազար ցենտներ հացահատիկ, պլանը գերակատարելով 14 հազար ցենտներով։ Բայց շրջանը պլանը չկատարեց անասնաբուծության առանձին ճյուղերում։ Հիմնական պատճառն այն է, որ առաջավոր տնտեսությունների կողքին կային այնպիսիները, որոնք չկատարեցին հացահատիկի բերքատվության, անասնապահության մթերքների արտադրության առաջադրանքները։ Բայանդուր գյուղի կոլտնտեսությունը շրջանի միջին ցուցանիշներից (մեկ հեկտարի հաշվով) պակաս ստացավ 7 ցենտներ հացահատիկ, 8 ցենտներ ծխախոտ, 35 ցենտներ պտուղ, յուրաքանչյուր ֆուրաժային կովից՝ 350 կիլոգրամ կաթ, մեկ ոչխարից 0,8 կգ բուրդ և այլն։ Տնտեսությունը ո՛չ միայն չստացավ զուտ եկամուտ, այլև տնտեսական տարին փակեց վնասով։ Նման վիճակում էին նաև Սվարանց, Տանձատափ, Կուրթկուլաղ և ուրիշ գյուղերի կոլտնտեսությունները։ Առանձին ճյուղերի գծով ցուցանիշները ցածր էին նաև Շինուհայրի, Ջանգեզուրի և մյուս սովխոզներում։ Դրա գլխավոր պատճառը ագրոտեխնիկայի և զոոտեխնիկայի կանոնների սիստեմատիկ խախտումն էր, որոշ դեպքերում՝ անտնտեսվարությունը, թափթփվածությունը։

Գյուղատնտեսության ճյուղերի շահութաբերության հետագա բարձրացումը կարևոր խնդիր է։ Գոյություն ունեցող գների պայմաններում, գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի իջեցումով կաճեն զուտ եկամուտն ու շահույթը։ Հաշվի առնելով այդ, շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները գործի են դնում շահութաբերության բարձրացման չօգտագործված ռեզերվները։

Դրանցից ամենակարևորը գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացումն է։ Այդ նպատակով ձեռնարկված միջոցներն արդեն տալիս



են ցանկալի արդյունք։ Բոլոր տնտեսություններում գարնանացանն անցավ կազմակերպված. պարարտացվեցին ցանքատարածությունները, սնուցվեցին աշնանացանի և գարնանացանի թույլ ցանքերը, երկու հազար հեկտարով ընդարձակվեցին բազմամյա խոտաբույսերի և սիլոսային կուլտուրաների ցանքերը, ժամանակին կատարվեց դաշտային կուլտուրաների մշակությունը։ Այս տարի շրջանի անասնապահները առանց անկումների ավարտեցին ոչխարների ձմեռումը և ստացան ավելի քան 30 հազար գլուխ գառ (98 գլուխ՝ 100 մայր ոչխարից)։ Այսպիսի աճ շրջանում չէր եղել։ Ավելի շատ բարձրորակ բուրդ ստացվեց։ Ակնհայտ են նաև առաջին հաջողությունները խոշոր եղջերավոր անասնաբուծության բնագավառում։

Շահութաբերության բարձրացման մյուս ռեզերվը գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի իջեցումն է։ Ինքնարժեքը ռեալ բազա է գնագոյացման համար։ Իսկ գինն էլ պետք է մոտենա ծախսված անհրաժեշտ աշխատանքի մակարդակին, հատուցի մեքենաների մաշվածքը, ծախսված աշխատավարձի ֆոնդը, նյութերը և շահույթ բերի։

Գորիսի շրջանում գյուղատնտեսական մթերքների արտադրության վրա դեռ շատ աշխատանք և նյութական միջոցներ են ծախսվում, որի հետևանքով առանձին մթերքների ինքնարժեքը խիստ բարձր է։

Բարձր ինքնարժեքը, առաջին հերթին, արտադրության անբավարար մեքենայացման հետևանք է։ Շատ տնտեսություններում հացահատիկի, դաշտային մյուս կուլտուրաների մշակման և բերքահավաքի ընթացքում մեքենաներ չեն օգտագործվում, որոշ անասնապահական ֆերմաներում կիթը, կերակրումը, ջրումը, աղբի հեռացումը կատարվում է ձեռքով։ Մինչդեռ, գյուղատնտեսական աշխատատար պրոցեսների մեքենայացումը նորմալ պայմաններ է ստեղծում մթերքների ինքնարժեքի իջեցման և աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։ Քանի որ մեքենաների օգտագործումը զանազան տնտեսություններում տարբեր է, ուստի, տարբեր է նաև գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը։ Կոռնիձորի Կիրովի անվան և Տեղ գյուղի Սովետական բանակ կոլտնտեսություններում դաշտային բոլոր աշխատանքները կատարվում են մեքենաներով։ Անցյալ տարի մեկ ցենտներ եգիպտացորենի կանաչ մասսայի ինքնարժեքը Կոռնիձորի կոլտնտեսությունում կազմեց 30, Տեղի կոլտնտեսությունում՝ 31 կոպեկ։ Մինչդեռ Արավուսի կոլտնտեսությունում, որտեղ եգիպտացորենի ցանքը, մշակությունը, բերքահավաքը կատարվել էր ձեռքով, մեկ ցենտներ կանաչ զանգվածի ինքնարժեքը կազմեց 1 ռուբլի, Քարաշենում՝ 1,05, Շինուհայրի սովխոզում՝ 1,5 ռուբլի և այլն։

Այս տարի Հայգյուղտեխնիկայի շրջանային բաժանմունքի միջոցով կոլտնտեսություններն ու սովխոզներն ստացել են մեծ քանակությամբ կոմբայններ, բարձող, դիզող, կապող մեքենաներ, իսկ շատ գոմեր մեքենայացված են, ձեռք են բերվել ոչխարի խուզի նոր ագրեգատներ և այլ մեքենաներ։ Դրանցից շատերն այժմ աշխատում են անխափան, նպաստում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Գործադրվել է շահութաբերության բարձրացման այնպիսի ռեզերվ, ինչպիսին աշխատանքի նյութական խթանումն է։ Կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման նպատակով բոլոր կոլտնտեսություններում վերանայվել են արտադրական նորմաները, սահմանվել է հիմնական և լրացուցիչ վարձատրու-

թյան ճկուն սիստեմ, որը նպաստել է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Բացի աշխատանքի հիմնական վարձատրությունից, անասնապահները լրացուցիչ վարձատրություն կստանան պլանից ավելի ստացած կաթի 10—20 տոկոսի չափով, իսկ անասնապահ-հովիվը՝ անասունների մթերատվության ավելացման համար՝ 2—10 տոկոսի չափով։

Նյութական խրախուսանքը, լրացուցիչ վարձատրության ձևով, շատ տնտեսություններում տրվում է ոչ միայն արտապլանային արտադրանքի, որակի բարձրացման և ինքնարժեքի իջեցման, այլև այն աշխատանքների համար, որոնց շնորհիվ կբարձրանա գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, կզարգանա հանրային տնտեսությունը։ Լրացուցիչ վարձատրություն է տրվում գյուղատնտեսական կուլտուրաների մշակության առաջավոր եղանակների արմատավորման համար։

Իրականացվում է նաև լրացուցիչ վարձատրության բնամթերային ձևը։ Խնածախ գյուղի Դիմիտրովի անվան կոլտնտեսությունը հացահատիկի, բանջարեղենի, բոստանային կուլտուրաների բերքատվության և անասնապահության զարգացման պլանների գերակատարման համար, որպես լրացուցիչ վարձատրություն, տալիս է հացահատիկ, բանջարեղեն, մատղաշներ, կաթ, միս և այլն։ Կոռնիձոր գյուղի Կիրովի անվան կոլտնտեսությունում լրացուցիչ վարձատրություն է տրվում պլանային առաջադրանքից ավելի ստացած հացահատիկի 30 տոկոսը, խոտի՝ 10, խաղողի՝ 15 և ծղոտի՝ 20 տոկոսը։

Նյութական բարիքներ ստեղծողների անձնական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով Խնձորեսկ գյուղի կոլտնտեսությունը դեռ տարեսկզբին, մասնագետների օգնությամբ, մշակել է լրացուցիչ վարձատրության նոր կարգ։ Այսպես. անասնաբուծության բնագավառում ինչպես հարկն է նյութապես խրախուսվում են մսի, բրդի, կաթի արտադրության և անասունների գլխաքանակի ավելացման, մատղաշների անկորուստ պահպանման համար։ Այսպես, բրդի արտապլանային արտադրանքի 30 տոկոսի արժեքը տրվում է հովվին։ Յուրաքանչյուր 100 մաքիից 100-ից ավելի գառ ստանալու և անկորուստ պահպանելու դեպքում լրացուցիչ վարձատրության կարգով տրվում է ավելի ստացված մատղաշի 20 տոկոսը։ Միջակից բարձր գիրության մսամթերման հանձնված ամեն մի ոչխարի համար հովիվն ստանում է 50 կոպեկ լրացուցիչ վարձատրություն։ Կթվորուհուն տրվում է կաթի արտապլանային արտադրանքի 20 տոկոսը կամ դրա արժեքը, 15 կովից նույնքան հորթ ստանալու և 20 օրական դարձնելուց հետո՝ մեկ հորթ։ Լրացուցիչ վարձատրություն է սահմանված նաև դաշտավարության, այգեգործության և այլ բնագավառներում։

Ամփոփելով ՍՄԿԿ XXIII համագումարի պատվին ծավալված առաջին եռամսյակի մրցության արդյունքները, խնձորեսկցիները համագումարին ուղարկած իրենց հեռագրում հաղորդեցին, որ իրենք կատարել են անասնաբուծական մթերքների վաճառքի ընթացիկ տարվա 4 ամսվա առաջադրանքը։ Նախատեսված 450-ի փոխարեն մթերակայան է հանձնված 560 ցենտներ կաթ, 200-ի փոխարեն՝ 350 ցենտներ միս։

Կոլտնտեսականները, ոգևորված ժողովրդական տնտեսության զարգացման կուսակցության կանխագծումներով, որոնում են կոլտնտեսության հարստությունները բազմապատկելու նոր ուղիներ։ Այս տարի 100 հեկտարով ավելացել են հացահատիկի, 150 հեկտարով ցանովի խոտաբույսերի և 59 հեկտարով եգիպտացորենի ցանքատարածությունները։ Համագումարի բացման օրը կոլտնտեսության մեխանիզատորներն սկսեցին ջրամբարի կառուցումը։ Շուտով պատրաստ կլինի 600 հազար խորանարդ մետր տարողության ավազանը, որը հնարավորություն կընձեռի ոռոգելի դարձնելու ավելի քան 100 հեկտար ծխախոտի պլանտացիաներ ու այգիներ։

Շահութաբերության բարձրացման չօգտագործված ռեզերվ են գյուղատնտեսության արտադրության մասնագիտացումն ու ինտենսիվացումը։ Ժողովրդատնտեսական մեծ նշանակություն ունի արտադրության գիտականորեն հիմնավորված տեղաբաշխումն ու մասնագիտացումը՝ ըստ բնակլիմայական պայմանների։

Գյուղատնտեսության մասնագիտացման գործում, ամենից առաջ, պետք է հաշվի առնել, թե տվյալ կոլտնտեսությունն ու սովխոզը արտադրած մթերքներով ինչ չափով է բավարարում իր և պետության պահանջները։ Այդ հնարավորություն է ընձեռում համակենտրոնացնելու արտադրությունը, ընդարձակելու (իհարկե, որոշակի սահմաններում) այն ճյուղերը, որոնք ավելի արդյունավետ են փոքր և բազմաճյուղ տնտեսությունների նկատմամբ։ Դրա շնորհիվ հնարավոր կլինի ավելի լավ օգտագործել արտադրության միջոցները, աշխատանքային և նյութական ռեսուրսները, նորմալ պայմաններ կստեղծվեն բարձրացնելու գյուղատնտեսության կուլտուրան և այլն, որոնք տվյալ տնտեսության բնակլիմայական պայմաններում, աշխատանքի և միջոցների նվազագույն ծախսումով, հողի յուրաքանչյուր միավորի դիմաց կապահովեն բարձր բերք և կնպաստեն անասնաբուծության մթերատվության առավել ավելացմանը։

Մինչև վերջերս շրջանի տնտեսություններին տրվում էին գյուղատնտեսական համարյա բոլոր տեսակի մթերքների արտադրության չհիմնավորված պլաններ և հետևանքը լինում էր այն, որ դրանք չէին կատարվում և արտադրությունը չէր ընդլայնվում։ Շրջանի կոլտնտեսություններում պայմաններ չկան խոզաբուծության ու թռչնաբուծության զարգացման համար։ Մինչդեռ պլանավորված է պահել 750 խոզ և 15 հազար թռչուն։ Փորձը ցույց է տվել, որ տնտեսության այդ ճյուղերը, սեփական կեր չունենալու պատճառով, տարին փակում են վնասով, իսկ գնովի կերը բարձրացնում է խոզի մսի և ձվի ինքնարժեքը։

Գորիսի շրջկենտրոնի Ավանգարդ և Վերիշենի սովխոզներն ստանում են հացահատիկի ցածր բերք, քանի որ նրանք չունեն մեքենահարմար հողատարածություններ և եղածներն էլ գտնվում են ծովի մակերևույթից 1500—2000 մետր բարձրության վրա, որտեղ հացաբույսերի վեգետացիան կարճ է տևում, ցանքերը չեն հասունանում և շուտ ցրտահարվում են։ Դրա հետևանքով նշված տնտեսություններում հացահատիկի արտադրությունը շահութաբեր չէ։ Այստեղ շահութաբեր է անասնապահությունը։ Մեր կարծիքով, ավելի նպատակահարմար է զարգացնել անասնապահությունը։

Ճիշտ օգտագործելով շահութաբերության բարձրացման նշված և մյուս ռեզերվները, Գորիսի շրջանի աշխատավորները կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ ամեն ինչ կանեն աշխատանքի և նյութական միջոցների նվազագույն ծախսումներով ապահովելու գյուղատնտեսության բոլոր ճյուղերի զարգացումն ու արդյունավետությունը։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԱՄՐԱՊՆԴԵՆՔ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ

Էլեկտրալամպերի գործարանի բազմահազարանոց կոլեկտիվը պայքարում է ՍՄԿԿ XXIII համագումարի պատմական որոշումները հաջողությամբ կենսագործելու, նոր հնգամյակի հոյակապ խնդիրները լուծելու համար։ Լամպագործները տրադիցիա են դարձրել կուսակցության և ժողովրդի կյանքում տեղի ունեցող կարևոր իրադարձությունները, նշանավոր տարեթվերը աշխատանքային նորանոր նվաճումներով դիմավորելը։ Այս անգամ նրանք պատրաստվում են արժանավայել նշել Մեծ հոկտեմբերի 50-ամյակը և Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը։

Գործարանի կուսկազմակերպության, ողջ կոլեկտիվի համար 1965 թվականը համեմատաբար դժվարին ու պատասխանատու տարի էր՝ արտադրական նոր հզորությունների յուրացման, որոշ արտադրամասերի տեղափոխման ու վերակառուցման, բնական գազով աշխատելուն անցնելու և պետական ավելի մեծ պլանների կատարման տարի։ Կոլեկտիվը հաջողությամբ դուրս եկավ այդ դժվարին քննությունից։ Համախառն արտադրանքի պլանը կատարվեց 103,3 տոկոսով, ապրանքային արտադրանքինը՝ 104,1։ Նախորդ տարվա համեմատությամբ, համախառն արտադրանքն աճեց 39,3 տոկոսով, այդ թվում նորմալ լուսավորման լամպերինը՝ 15,1, լյումինեսցենտային լամպերինը՝ 58,7, ավտոլամպերինը՝ 8,7 և ստարտերներինը՝ 176,2 տոկոսով։ Գործարանը թողարկեց 465 հազար ռուբլու արտապլանային արտադրանք։

Լուրջ նվաճումներ են ձեռք բերվում նաև նոր հնգամյակի առաջին տարում։ Ութ ամսվա պլանը կատարված է բոլոր տեխնիկա-տնտեսական ցուցանիշների գծով։ Թողարկված է 730 հազար ռուբլու արտապլանային համախառն արտադրանք, այդ թվում՝ 763 հազար հատ էլեկտրական լամպ։ Հատկանշական է, որ անցած տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ համախառն արտադրանքն աճել է 30 տոկոսով, իսկ էլեկտրական լամպերի արտադրությունը՝ ավելի քան 8 միլիոն 679 հազար հատով։ Յոթ ամսվա արտադրանքի ինքնարժեքի իջեցման հաշվին տնտեսվել է ավելի քան 99 հազար ռուբլի։ Որոշակիորեն բարելավվել է արտադրանքի որակը։ Համամիութենական լուսատեխնիկական գիտահետազոտական ինստիտուտի տվյալներով երևանյան 220.100 և 220.75 տիպի լամպերը այժմ լավագույնն են համարվում Միության մեջ։

Լավ աշխատանքի համար գործարանի կոլեկտիվը արժանացել է ՀԿԿ 26



կոմիսարների շրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ կարմիր դրոշին, ինչպես նաև ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության և էլեկտրակայանների ու էլեկտրատեխնիկական արդյունաբերության բանվորների արհմիության Կենտրոնական կոմիտեի 2-րդ մրցանակին։

Այս հաջողություններն իրենք իրենց չեն եկել, դրանք ձեռք են բերվել կուսակցական-կազմակերպական և քաղաքական-դաստիարակչական համառ աշխատանքով։ Գործարանի կուսկոմն ու դիրեկցիան, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններն իրենց ուշադրության կենտրոնում են պահում աշխատանքային ու արտադրական կարգապահության ամրապնդման, կոլեկտիվի անդամների մեջ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակման հարցերը։

Հայտնի է, որ արտադրության մեջ մեծ է վարպետի դերը։ Կուսկոմը, դիրեկցիայի հետ միասին, զգալիորեն բարելավել է արտադրության այդ հրամանատարների կազմը, նրանց դերի և պատասխանատվության բարձրացման ուղղությամբ տարվող աշխատանքը։ Կուսկոմի նիստերում քննարկվել է լավագույն վարպետներ Մ. Մարգարյանի, Ռ. Հակոբյանի և ուրիշների փորձի մասսայականացման հարցը և այդ առթիվ ընդունված որոշումները նպաստել են գործին. նրանց աշխատանքին ընդօրինակել են շատերը։

Հենց վերջերս կուսկոմը քննարկեց և մասսայականացրեց նորմալ լուսավորման լամպերի հավաքման արտադրամասի տեղամասային վարպետ Վ. Արզումանյանի աշխատանքի փորձը։ Նա տեղամասի վարպետ է ընդամենը մեկ տարի, բայց արդեն կարողացել է յուրացնել իր կոլեգաների առաջավոր փորձը, արտադրամասում բարձր հիմքերի վրա դնել աշխատանքային ու արտադրական կարգապահությունը, համախմբել և մոբիլիզացնել իրեն վստահված կոլեկտիվի ուժերը։ Վ. Արզումանյանը պայմաններ է ստեղծում, որպեսզի տեղամասի աշխատողները, առանց արտադրությունից կտրվելու, սովորեն բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում։ Կադրերի արտադրական ուսուցման ասպարեզում նրա ցուցաբերած նախաձեռնության շնորհիվ բանվորների մեծ մասը տիրապետում է երեք մասնագիտության։

Կուսկոմիտեում լյումինեսցենտային լամպերի հավաքման արտադրամասի սկսնակ վարպետ կոմունիստ Վ. Պողոսյանի հաշվետվության քննարկումը ցույց տվեց, որ տեղամասում ընկած է կարգապահությունը, լուրջ թերություններ կան աշխատանքի կազմակերպման գործում, որի պատճառով չեն կատարվում առաջադրանքները։ Կուսկոմի նիստին հրավիրված էին սկսնակ վարպետները։ Կոմունիստ Վ. Պողոսյանը զգուշացվեց։ Որոշ ժամանակ անց, նրա տեղամասում բարելավվեց մարդկանց հետ տարվող աշխատանքը, համարյա կրկնապատկվեց հոսքային գծի արտադրողականությունը, նյութերի և կիսաֆաբրիկատների գերածախսը կրճատվեց 47 տոկոսով, տեղամասն արժանացավ գործարանի «Նյութերի ու կիսաֆաբրիկատների խնայողության եռամսյակ»-ի մրցանակին։ Կուսկոմի որոշումը աշխուժացրեց նաև գործարանի մյուս տեղամասերի աշխատանքը։

Կուսկոմը և արտադրամասային կուսկազմակերպությունները պարբերաբար քննարկում են առանձին վարպետների զեկուցումները։ Այսպես, նորմալ լուսավորման լամպերի հավաքման արտադրամասի կոմունիստ բրիգադիրներ Ժ. Նիկողոսյանի և Վ. Միքայելյանի զեկուցումների քննարկումը արտադրա-

մասի կուսբյուրոյում ցույց տվեց, որ վերջերս նրանք անբավարար են զբաղվել կարգապահության ամրապնդմամբ, որի հետևանքով բրիգադներում իջել է աշխատանքի արտադրողականությունը։ Կոմունիստ բրիգադավարները կուսակցական տույժի ենթարկվեցին։ Այժմ դրությունը զգալիորեն լավացել է, երկու բրիգադներն էլ հուլիսին իրենց արտադրական ցուցանիշներով դուրս եկան առաջավոր բրիգադների շարքը։

Կուսկոմը հետևում է արտադրամասային կուսկազմակերպությունների գործունեությանը, նրանց ուշադրությունը սրում բանվորների դաստիարակության հարցերին։ Այսպես, լյումինեսցենտային լամպերի հավաքման արտադրամասի գործարկման կապակցությամբ աշխատանքի էին ընդունվել մեծ թվով երիտասարդներ։ Արտադրամասի կուսբյուրոն (քարտուղար՝ Հ. Վանյան) հաշվի չէր առել այդ հանգամանքը, անհրաժեշտ ուշադրություն չէր նվիրել կոլեկտիվի նոր անդամների դաստիարակության, նրանց ուսուցման հարցերին։ Կուսկոմն անդրադարձավ դրան. ղեկավար աշխատողները զգուշացվեցին։ Նրանք պարտավորվեցին այսուհետև լրջորեն զբաղվել այդ կարևոր գործով։ Շուտով արդյունքը երևաց, և լյումինեսցենտային արտադրամասը մրցանակային տեղ նվաճեց միջարտադրամասային սոցմրցությունում։

Մենք պարբերաբար անց ենք կացնում վարպետների համագործարանային և արտադրամասային խորհրդակցություններ ու հավաքներ։ Վարպետը որպես դաստիարակ, Վարպետի դերը աշխատանքային ու արտադրական կարգապահության բարձրացման գործում, Առաջավոր վարպետի աշխատանքի փորձը և այլ թեմաներով զեկուցումներ ու դասախոսություններ են կարդացվում։

Կոլեկտիվի դաստիարակման համար մեծ նշանակություն ունի հատկապես ղեկավար աշխատողների անձնական օրինակը։ Մինչդեռ, մեզ մոտ որոշ ղեկավար աշխատողներ թերանում էին իրենց պարտականությունները կատարելիս։ Կոնստրուկտորական բաժնի կոնստրուկտոր Գ. Գասպարյանը, նորարարության և գյուտարարության ավագ ինժեներ Ռ. Վարդապետյանը, ֆինանսական բաժնի վարիչ Ա. Մկրտչյանը և ուրիշներ սիստեմատիկաբար ուշանում էին աշխատանքից, իսկ առանձին ընկերներ էլ արդյունավետ չէին օգտագործում աշխատաժամերը, խուսափում էին հասարակական միջոցառումներից։

Կուսկոմն անդրադարձավ այդ հարցին ևս։ Բարձրացավ բաժինների վարիչների պատասխանատվությունը ինչպես իրենց անմիջական պարտականությունների, այնպես էլ ամբողջ ձեռնարկությունում աշխատանքային կարգապահության բարելավման ուղղությամբ։

Գործարանի կուսկազմակերպությունը ներկայումս միավորում է 500 կուսանդամ-թեկնածու։ Գրեթե բոլոր կոմունիստները պատվով են կատարում իրենց պարտականությունները և անձնական օրինակ ցույց տալիս։

Իսկ եթե լինում են ՍՄԿԿ կանոնադրության պահանջներն ու կուսկոմի որոշումը չկատարելու, աշխատանքային կարգապահության խախտման դեպքեր, կուսկոմը անդրադառնում է նաև այդ խնդրին։ Այսպես, Վ. Մանվելյանին կուսակցական խիստ նկատողություն է հայտարարվել։ Աշխատանքը լքելու, կուսակցական կյանքից կտրվելու, հանրօգուտ աշխատանքով չզբաղվելու համար խիստ տույժ է կրել կոմունիստ Հ. Մանուկյանը։

Մենք լուրջ ուշադրություն ենք նվիրում մարդկանց հետ տարվող անհատական աշխատանքին։ Մարդու վրա ոչ մի դասախոսություն ու զեկուցում



այնքան չի ազդում, որքան աշխատանքի ընկերոջ սրտաբաց զրույցը, երբ այն ուղեկցվում է նրան օգնելու պատրաստակամությամբ և հոգատարությամբ։ Կարելի է բերել շատ օրինակներ, երբ աշխատանքային ընկերոջ օգնությամբ սխալներն ուղղել և ճիշտ ճանապարհի են կանգնել բազմաթիվ մարդիկ, որոնք անուղղելի էին թվում։

Ահա բազմաթիվ օրինակներից մեկը։ Յու. Սարգսյանը նոր էր աշխատանքի ընդունվել ապակու արտադրամասում։ Առաջին օրից նա իրեն վատ դրսևորեց. մեծ ու փոքր չէր ճանաչում, հաճախ տեղի-անտեղի վեճի էր բռնվում ավագ ընկերների հետ, կոպտում ու հայհոյում էր աշխատողներին և, նույնիսկ, հակահասարակական արարքներ թույլ տալիս։ Թվում էր, ամեն ինչ վերջացած է, այլևս հնարավոր չէ Յու. Սարգսյանին դուրս բերել կյանքի ուղիղ ճանապարհ։ Շատերն առաջարկում էին վռնդել նրան գործարանից, դատի տալ։ Այս առաջարկությանը դեմ էին քչերը, այդ թվում և արտադրամասի կուսբյուրոյի քարտուղար Հ. Հայրապետյանը։ Նա գտնում էր, որ անուղղելի մարդիկ գրեթե չկան։ Իհարկե, Սարգսյանի անձնական արատներն այնպիսին էին, որ միայն դասախոսություններով ու զեկուցումներով վերացնել չէր լինի և ոչ էլ՝ խիստ միջոցներով։ Նրան ուղղելու համար մեծ ջանքեր էին պահանջվում, համբերատար աշխատանք։

Եվ կուսբյուրոյի քարտուղարը ձեռնամուխ եղավ այդ գործին. նրան սկսեցին օգնել ակտիվ կոմունիստներ Լ. Գևորգյանն ու Ռ. Մալայանը։

Նա ուշի-ուշով հետևում էր Սարգսյանին, լինում նրա տանը, սրտաբաց զրուցում հետը, բարեկամական խորհուրդներ տալիս։ Յուրիկը զգում էր մեծ հոգատարությունը, իրեն անընդհատ հետևող ուշիմ աչքը։ Երիտասարդը սկզբում զայրանում էր, իսկ հետո խորապես հասկացավ, որ այդ ամենը արվում է լավ, բարի նպատակով։ Նրան հանձնարարություններ տվեցին, ընտրեցին արտադրամասի սանիտարական հանձնաժողովի կազմում։ Զգալով իր նկատմամբ ցուցաբերվող վստահությունը, Սարգսյանը սկսեց աշխատել կրկնապատկված եռանդով։ Այժմ նա ընկերների օգնությամբ պատրաստվում է շարունակել ուսումը։

Կոլեկտիվի անդամների դաստիարակության, աշխատանքային կարգապահության բարձրացման գործին նպաստում է նաև դասախոսական նպատակասլաց պրոպագանդան։ Գործարանի աշխատողների համար դասախոսություններ են կարդացվում հիմնականում կուսկոմի դասախոսական խմբի անդամների և գիտելիք ընկերության դասախոսների ուժերով։ Գործարանի դասախոսներից 41-ը ղեկավար աշխատողներ են։ 1965—66 թվականներին դասախոսությունների թեմատիկայում լայն տեղ է հատկացվել արտադրության կազմակերպման, կարգապահության ամրապնդման և մարդկանց մեջ աշխատանքի հանդեպ կոմունիստական վերաբերմունք դաստիարակելու հարցերին։

Գործարանում բեղմնավոր աշխատանք է տանում 155 հոգուց բաղկացած ագիտկոլեկտիվը։ Ագիտատորները բարեխղճորեն են կատարում իրենց պարտականությունները, նրանք ազդեցիկ խոսքով և բարեխիղճ աշխատանքի անձնական օրինակով օգնում են կարգապահության ամրապնդմանը, արտադրական պլանների կատարմանը։ Կուսկոմում, նրա գաղափարական հանձնաժողովի նիստերում և արտադրամասային կուսկազմակերպությունների ժողովներում հաճախակի են քննարկվում ագիտատորների հրահանգավորման, արտադրամասերում տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքի վիճա-

կի բարելավման հարցերը, միջոցներ են ձեռնարկվում բացահայտված թերությունների վերացման և քաղաքական ագիտացիան ավելի ներգործուն դարձնելու համար։

Կոլեկտիվի անդամների դաստիարակությանը նպաստում են նաև աշխատողների նյութական և բարոյական խրախուսանքը, ամենօրյա հոգատարությունը, որ ցուցաբերում են նրանց նկատմամբ կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները։ Ամեն տարի փորձի փոխանակման նպատակով Միության տարբեր էլեկտրալամպերի գործարաններն են ուղարկվում հարյուրավոր բանվորներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ։ Ամեն մի նշանավոր տարեթվի, կոլեկտիվի առանձին անդամի կյանքում տեղի ունեցող նշանավոր օրվա կապակցությամբ հանդիսավորությամբ նշվում են նրանց ծառայությունները, շնորհվում պատվոգրեր, տրվում դրամական պարգևներ։ Միայն վերջերս գործարանի 31 աշխատող արժանացան կառավարական բարձր պարգևների։ Լենինի շքանշանով պարգևատրվեցին Գ. Սարյանը, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով՝ առաջավոր բանվորներ Վ. Մալոյանը, Բ. Սահակյանը և ուրիշներ։

Առանձնահատուկ տեղ է տրվում աշխատանքի վետերանների առաջավոր փորձի մասսայականացմանը։ Գործարանն արդեն ունի 15 տարվա պատմություն, այդ ժամանակամիջոցում աճել և դաստիարակվել են արտադրության հարյուրավոր փարոսներ, որոնց աշխատանքային գործունեությունը, հարուստ կենսափորձը ուսանելի են երիտասարդ բանվորների համար։ Այդ նպատակով վետերանների և երիտասարդության հանդիպումներ ենք կազմակերպում։ Գործարանի բազմավաստակ աշխատողներից էր, օրինակ, Վ. Դուլգարյանը։ Բարձր պահելով կոմունիստի կոչումը, նա իր հարուստ փորձը սիրով հաղորդում էր երիտասարդությանը։ Եվ, պատահական չէ, որ Վ. Դուլգարյանի հասցեին գովեստի և շնորհակալական այդքան ջերմ խոսքեր ասվեցին նրա մեծարման երեկոյին (ծերության կենսաթոշակի անցնելու կապակցությամբ)։

Կոլեկտիվը խոր հարգանքով ու շնորհակալությամբ ծերության թոշակի ուղեկցեց նաև բեռնակիր-բանվոր, հայրենադարձ է. Սիմոնյանին։ Սակայն թոշակի անցած ընկերները կապը չեն կտրում գործարանի հետ, շարունակում են իրենց հմտությունը, մեծ փորձը հաղորդել երիտասարդներին։

Կուսկոմը ամեն կերպ ձգտում է բարձրացնել արտադրամասերի կուսկազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը, ճիշտ զուգակցել կուսակցական աշխատանքը տնտեսական խնդիրների լուծման հետ։ Այդ կապակցությամբ կուսկոմը պարբերաբար լսում է արտադրամասային կուսկազմակերպությունների բյուրոների հաշվետվությունները, ուղղություն տալիս նրանց գործունեությանը։

Դրա շնորհիվ կուսկազմակերպություններն ավելի կոնկրետ են զբաղվում դաստիարակության հարցերով, ավելի լավ գլխավորում հասարակական հիմունքներով գործող հանձնաժողովների աշխատանքը։ Վերջիններս ռեյդեր և ստուգումներ են անցկացնում, բացահայտում թերությունները, որոնք քննարկվում են կոլեկտիվի ժողովներում։

Այդ գործում մեծ դեր ունի նաև գործարանի «Իլյիչի լամպեր» բազմատիրաժ թերթը, որի էջերում հաճախակի հրապարակվում են քննադատական



հոդվածներ, ռեյդի ու ստուգումների արդյունքներ, երգիծական նյութեր ու ծաղրանկարներ։

Նույն նպատակին են ծառայում նաև արտադրամասերի պատվո տախտակները, պատի և երգիծական թերթերը, կոմերիտական լուսարձակները, որոնց միջոցով խրախուսվում են արտադրության առաջավորները, ընդհանրացվում ու մասսաների սեփականությունը դարձվում նորն ու առաջավորը։

Բարձր է ընկերական դատարանների դաստիարակչական նշանակությունը։ Առաջներում դրանք տարեկան քննարկում էին 60—70 գործ, իսկ վերջին տարիներին այդ թիվը նկատելիորեն նվազել է։ Կան ընկերական դատարանի կողմից դատվածներ (Ա. Բաբայան, Ս. Մկրտչյան և ուրիշներ), որոնք ժամանակին խորապես գիտակցել են իրենց սխալները և ուղղվել։

Հատուկ ուշադրություն է նվիրվում երիտասարդության դաստիարակությանը։ ԼԿԵՄ կոմիտեի ու արտադրամասային կոմերիտական կազմակերպությունների բարձրացրած շատ հարցեր ժամանակին ստանում են անհրաժեշտ լուծում։ Ստեղծված են բարենպաստ պայմաններ ազատ ժամանակը կազմակերպված անցկացնելու համար։ Գործարանն ունի հիանալի ակումբ։ Այստեղ ցուցադրվում են կինոնկարներ, կա գրադարան (7021 կտոր գրքերի ֆոնդով), որից օգտվում են ավելի քան 12000 ընթերցող։ Սիստեմատիկ աշխատանք է տարվում երիտասարդության ֆիզիկական դաստիարակության ուղղությամբ։

Կուսակցական կոմիտեն, սկզբնական կուսկազմակերպությունները պարբերաբար քննարկում են կոմերիտական կազմակերպությունների ներմիութենական աշխատանքի բարելավման, նրանց նկատմամբ կուսակցական ղեկավարության ուժեղացման հարցերը, լսում ԼԿԵՄ բյուրոների հաշվետվությունները։ Այս օգնում է կոմերիտական կազմակերպությունների գործունեության բարելավմանը, արտադրության մեջ երիտասարդների դերի բարձրացմանը։ Ներկայումս գործարանի բոլոր կոմերիտականները կատարում և գերակատարում են արտադրական պլանները։

Սակայն կոլեկտիվի ընդհանուր գործունեության վրա բացասաբար են անդրադառնում մատակարարման և պլանավորման գործում գոյություն ունեցող լուրջ բացերը։ Այսպես. այժմյան հզորությունների մակարդակով գործարանը կարող է լրացուցիչ արտադրել ավելի քան 3 միլիոն լյումինեսցենտային լամպ, 5 միլիոն ստարտեր, 10 միլիոն սրվակ, ընդհանուր առմամբ՝ 5 միլիոն ռուբլու արտադրանք։ Ելնելով այդ հնարավորություններից, 1965 թվականին պատրաստել ենք համապատասխան թվով և մասնագիտության կադրեր։ Բայց, դժբախտաբար, պլանավորման և մատակարարման գործում եղած լուրջ թերությունները խանգարում են լրիվին օգտագործելու եղած հնարավորությունները, առաջանում է կադրերի հոսունություն, ընկնում են արտադրանքի որակական ցուցանիշները։

Սակայն գործարանի կուսկոմը և կուսկազմակերպությունները ջանում են վերացնել թերությունները, մոբիլիզացնել կոմունիստների, բոլոր բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների ստեղծագործական ուժերը՝ պատվով կատարելու նոր հնգամյակի առաջին տարվա պլանը։

Ա. ԳՈՒՐՈՒՆՅԱՆ
Երևանի էլեկտրալամպերի գործարանի
կուսկոմի քարտուղար

## ԱՌԱՎԵԼԱԳՈՒՅՆ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՆԱՄԱԿՆԵՐԻՆ

ՍՄԿԿ XXIII համագումարը կուսակցական կազմակերպությունների առջև խնդիր դրեց՝ մոտիկից զբաղվել բնակչության պահանջներն ու կարիքները բավարարելու հարցերով, հաշվի առնել մարդկանց անձնական տրամադրությունները, ցանկությունները։ Ընդամին, կոմունիստներն ու բոլոր կադրերը պետք է ունենան մարդկանց հետ աշխատելու, նրանց ուժերը մոբիլիզացնելու անհրաժեշտ հմտություններ։ Կուսակցական աշխատանքը, ամենից առաջ, աշխատանք է մարդկանց հետ, այն, միաժամանակ, արվեստ է, որին պետք է կատարելապես տիրապետեն բոլոր կուսաշխատողներն ու կոմունիստները։

Հայտնի է, որ կուսկազմակերպությունների խնդիրն է մոբիլիզացնել աշխատավորների ստեղծագործական ուժերը՝ կատարելու պետական առաջադրանքները։ Խոսքն այն մասին է, թե ինչպե՞ս և ի՞նչ մեթոդներով է իրականացվում դրանց կատարումը։ Առաջադրանքները կարելի է կատարել վարչական մեթոդներով, այսպես ասած, չոր ու ցամաք հրամանների և կարգադրությունների միջոցով, և մարդկանց կազմակերպման, նրանց շրջանում քաղաքական-դաստիարակչական աշխատանք ծավալելու միջոցով։

Վարչական մեթոդը խորթ է կուսակցական աշխատանքի ոգուն, այն չի նպաստում աշխատողների քաղաքական աճին, նրանց հուզող բազմապիսի հարցերը մնում են առանց պարզաբանման, մարդիկ չեն նախապատրաստվում աշխատանքի պրոցեսում ծագած դժվարությունների հաղթահարմանը։ Իսկ քաղաքական-կազմակերպական աշխատանքը, համոզման մեթոդը գլխավորն է կուսակցական աշխատանքում, այն քաղաքական լիցք է հաղորդում մարդկանց, նրանց կազմակերպում և համախմբում է կուսակցության քաղաքական գծի շուրջը, դաստիարակում գիտակցական կարգապահության, դժվարությունների հաղթահարման ոգով։

Կենսագործելով ՍՄԿԿ XXIII և ՀԿԿ XXIV համագումարների որոշումները, Լենինյան կուսշրջկոմը ձգտում է բարելավել աշխատավորների շրջանում տարվող կուսակցական-կազմակերպական և քաղաքական-մասսայական աշխատանքը։ Շրջկոմի աշխատողներն ուշադրությամբ ուսումնասիրում են քաղաքացիներից ստացված դիմումներն ու նամակները, ծանոթանում բնակչության տրամադրություններին և մտահղացումներին, ուշադիր քննում նրա բարձրացրած հարցերը և կոնկրետ ընթացք տալիս դրանց։ Կուսակցական կազմակերպությունների, սովետական և տնտեսական հիմնարկ-ձեռնարկությունների հոգատարության շնորհիվ վերջերս անհամեմատ կրճատվել է բնակչությունից ստացվող դիմում-բողոքների քանակը։ Եթե 1965 թվականին շրջկոմը ստացել էր 968 դիմում-բողոք, ապա 1966 թվականի անցած 10 ամսում ստացել է ընդամենը 508-ը։ Գրեթե լիովին կրճատվել են անստորագիր դիմումներն ու նամակները։

Կուսշրջկոմի փաստի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ այն հիմնարկ-ձեռնարկություններում, ուր կուսկազմակերպությունները և տնտեսական ղեկավարներն իրենց պարտականությունները կատարում են բարեխղճորեն, հարցերը լուծում են սկզբունքորեն, ճիշտ և օբյեկտիվ, թույլ չեն տալիս ձևական բյուրոկրատական վերաբերմունք, դժգոհություններ քիչ են լինում, գրեթե չեն ստացվում անձնական բնույթի դիմումներ ու բողոքներ։

Փոխվել է ստացվող դիմումների էությունը. նեղ անձնական նամակների փոխարեն այժմ ստացվում են նամակներ խելացի առաջարկություններով, որոնք օգնում են վերացնելու այս ու այն թերությունը կամ իրականացնելու որևէ միջոցառում։

Ժամանակի ընթացքում կուսշրջկոմում մշակվել է կոմունիստներից և աշխատավորներից







«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ

# ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԻ ԴՊՐՈՑ

ՆՈՅԵՄԲԵՐ
1966

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԻՄՔԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆ Է (1926—1932)

## ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ: ԻՆԴՈՒՍՏՐԱՑՄԱՆ ԿՈՒՐՍԸ

*Ավարտվեց 1925 թվականը։ Թերթերի հանրագումարային հոդվածները շնչում էին վստահությամբ և օպտիմիզմով։ Ժողովուրդը բուժեց պատերազմի վերքերը և նայում էր դեպի ապագան։ Այն, ճիշտ է, առանց մշուշի չէր։ ՍՍՀՄ-ը տնտեսական զարգացման մակարդակով Եվրոպայում գրավում էր վերջին տեղերից մեկը։ Սովետական երկրի վիթխարի բնական հարստությունները դեռևս մնում էին ձեռք չտրված։ Այնպես, ինչպես հարյուրամյակներ առաջ, Դնեպրն իր ջրերը տանում էր Զապորոժյեի ալեհեր սահանքներով, անտառն աղմկում էր Ամուրի ափերին՝ երիտասարդության ապագա քաղաքի վրա, ձյան տակ քնած էին խիբինները։*

*Բայց արդեն մշակվել էր Դնեպրոգէսի նախագիծը։ Նոր տարվա նախօրյակին Շատուրի էլեկտրակայանը հոսանք տվեց։ Քռի և Արագվի միացման տեղում ծավալվեց նշանավոր ԶԱԳԷՍ-ի շինարարությունը։ Հետախույզ երկրաբանների ջոկատները գնում էին տարբեր ուղղությունների անհայտ արահետներով։ Ամբողջ երկիրը գտնվում էր շարժման մեջ։ Ժողովուրդն ստեղծում էր սոցիալիզմի նյութատեխնիկական բազան՝ ագրարային երկիրը դարձնում ինդուստրիալ երկիր։ Կուսակցությունը միշտ հիշում էր Լենինի պատգամը՝ առանց ծանր արդյունաբերությունը վերականգնելու և զարգացնելու «մենք, որպես քաղաքակիրթ պետություն,— էլ չեմ ասում սոցիալիստական պետություն,— կորած ենք» (4-րդ հրատ., հատոր 33, էջ 507)։*

*Այդպիսի իրադրության մեջ գումարվեց XIV կուսակցական համագումարը, որի պատգամավորները ներկայացնում էին կուսակցության 643 հազար անդամ և 445 հազար թեկնածու։ Նա աշխատեց երկու շաբաթ՝ դեկտեմբերի 18-ից մինչև 31-ը և ավարտվեց 1926 թվականի նոր տարուց մեկ ու կես ժամ առաջ։ Օրակարգը շատ ընդարձակ էր։ Համագումարը հիմնական ուշադրությունը դարձրեց Կենտկոմի քաղաքական և կազմակերպական հաշվետվությունների քննարկման վրա (զեկուցողներ Ստալին և Մոլոտով), լսեց Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը (Կուրսկի), ԿՎՀ-ի հաշվետվությունը (Կույբիշև), զեկուցում կուսակցության կանոնադրության*

մասին (Անդրեև)։ Համագումարում նաև զեկուցումներ էին դրված Կոմինտերնի Գործկոմում ՀամԿ(բ)Կ-ի ներկայացուցչության գործունեության, կոմերիտմիության աշխատանքի և արհմիությունների աշխատանքի մասին։

Համագումարում իրադրությունը առաջին իսկ րոպեներից սրվեց. վեճերը բռնկվեցին արդեն նախագահություն ընտրելիս։ Իսկ երբ երկրորդ օրը օպոզիցիոներները պահանջեցին օրակարգի մեջ մտցնել Զինովևի հարակից զեկուցումը Կենտկոմի հաշվետվության վերաբերյալ, տեղերից հարցեր տեղացին՝ «Այդ ինչ է, նո՞ր պլատֆորմ է», «Այդ ի՞նչ ֆրակցիա է»։

Պատգամավորների զայրույթը հասկանալի էր, քաղբյուրոյի անդամի, Կոմինտերնի գործկոմի նախագահի հանդես գալը հարակից զեկուցումով՝ ուղղված Կենտկոմի դեմ, արտակարգ երևույթ էր։ Դրությունը սաստկացավ ուրիշ օպոզիցիոներների ճառերով։ Հաշվի առնելով այդ բոլորը, և մասնավորապես Կենտկոմի հաշվետվության քննարկման առթիվ Կամենևի ելույթի ֆրակցիոն բնույթը, համագումարը, օրակարգից հանեց տնտեսական շինարարության մասին նրա զեկուցումը։ Համագումարը գերադասեց սահմանափակվել Կենտկոմի հաշվետվության առթիվ բանաձևի մեջ տնտեսական պրոբլեմների ընդհանուր դիրքորոշումով։ Միաժամանակ հանձնարարվեց նոր Կենտկոմին ծավալուն կերպով նախապատրաստել այդ հարցերի քննարկումը կուսակցական հերթական կոնֆերանսում։

Համագումարում, ինչպես և նրան նախորդող դիսկուսիայում, «նոր օպոզիցիան» կրկին փորձ արեց կուսակցությանը շեղել ՍՍՀՄ-ում սոցիալիզմ կառուցելու վերաբերյալ արդեն որոշված հարցից։ Դա զայրույթ առաջացրեց պատգամավորների ճնշող մեծամասնության մեջ։ «Նոր օպոզիցիան» ջախջախվեց, ինչպես որ ջախջախվել էին բոլոր օպոզիցիաները։ Հանրագումարի բերելով դիսկուսիայի արդյունքները, կուսակցությունը նորից ընդգծեց պայքարի անհրաժեշտությունը երկու ճակատներում՝ ընդդեմ լենինիզմից աջ և «ձախ» թեքումների։ Ընդ որում համագումարը նշեց, որ գլխավորը «ձախ» վտանգն է։

Օպոզիցիան պարտություն կրեց նաև Լենինգրադում, որը նրա հիմնական բազան էր։ Համագումարը Լենինգրադի կուսակցական կազմակերպությանն ուղղված հատուկ դիմում ընդունեց։ Համագումարի նիստերի օրերին Լենինգրադ մեկնեցին Կենտկոմի անդամներ Գ. Կ. Օրջոնիկիձեն և Ա. Ի. Միկոյանը։ Նրանք կոմունիստներին պատմեցին, որ Լենինգրադի պատվիրակության մեջ մտնող օպոզիցիոներների վարքագիծը միահամուռ դատապարտվել է բոլոր կուսակցական կազմակերպությունների կողմից։ Լենինգրադի մի շարք գործարանային և բանակային բջիջներ համագումարին ողջունելու համար ուղարկեցին իրենց ներկայացուցիչներին։ Համագումարից հետո Լենինգրադ մեկնեցին նորընտիր Կենտկոմի մի խումբ անդամներ՝ Ա. Ա. Անդրեևը, Կ. Ե. Վորոշիլովը, Մ. Ի. Կալինինը, Ս. Մ. Կիրովը, Գ. Ի. Պետրովսկին և ուրիշներ։ Լենինգրադի կոմունիստների 97 տոկոսը հավանություն տվեց համագումարի որոշումներին։ Շուտով ընտրվեց կուսակցության նահանգական կոմիտեի նոր կազմ՝ Կիրովի գլխավորությամբ։

Երկրի վերակառուցման խնդիրները կատարելու համար XIV համագումարի որոշումները մոբիլիզացրին ոչ միայն կուսակցությանը, այլև կուսակցության ղեկավարության ներքո աշխատող մասսայական հասարակական կազ-





387

մակերպություններին՝ կոմերիտմիությանը, արհմիություններին։ Համագումարի պատգամավորները ուշադրությամբ քննարկում էին այդ կազմակերպությունների գործունեության մեջ եղած դժվարություններն ու թերությունները։ Այսպես, Անդրեևը, հանդես գալով արհմիությունների մասին Տոմսկու զեկուցման առթիվ, նշեց, որ արհմիութենական պրակտիկայում «թերագնահատվել է արհմիությունների հիմնական դերը», այսինքն նրանց՝ որպես կոմունիզմի դպրոցի, դերը։ Համագումարում խոսվեց բանվորների նյութական շահերը պաշտպանելու գործում արհմիությունների նշանակությունը բարձրացնելու, նրանց գործունեության մեջ միակողմանի-տնտեսական թեքումը հաղթահարելու անհրաժեշտության մասին։ Այդ ցուցումների իրականացումը ապահովեց բանվոր դասակարգի ակտիվության աճը, նրան ավելի համախմբեց կուսակցության ղեկավարության ներքո։

XIV համագումարի որոշումները հսկայական դեր խաղացին սոցիալիստական շինարարության հեռանկարները մշակելու ասպարեզում։ Ի զարգացումն առաջներում ընդունված որոշումների, կուսակցությունը իր բարձրագույն օրգանի հեղինակությամբ կրկին անգամ հաստատեց լիակատար սոցիալիստական հասարակություն կառուցելու վերաբերյալ գլխավոր գիծը՝ որպես օրենք յուրաքանչյուր կոմունիստի համար. «Համագումարը գտնում է, որ ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության հաղթանակի համար մղվող պայքարը մեր կուսակցության գլխավոր խնդիրն է»։

Բացառիկ կարևորություն էր ներկայացնում համագումարի առաջադրած այն խնդիրը, որ Սովետական Միությունը մեքենաներ ու սարքավորումներ ներմուծող երկրից պետք է դառնա դրանք արտադրող երկիր։ Միայն այդպես կարելի էր ապահովել սովետների երկրի տնտեսական ինքնուրույնությունը, պաշտպանել նրան կապիտալիստական համաշխարհային տնտեսության կցորդը դառնալուց։ Կուսակցությունը վճռական ցուցում տվեց՝ «վերցնել երկրի ինդուստրացման, արտադրության միջոցների արտադրության զարգացման և տնտեսական մանևրումներ անելու համար ռեզերվներ ստեղծելու կուրս» («ՍՄԿԿ-ն... բանաձևերում», մաս II, էջ 248)։ Դա կենտրոնական խնդիրը դարձավ։ Ահա թե ինչու սկսեցին կուսակցության XIV համագումարն անվանել ինդուստրացման համագումար։

Ինդուստրացումը դնելով կուսակցության ուշադրության կենտրոնում, համագումարը չսահմանափակվեց արդյունաբերության հարցերով, այլ տվեց ժողովրդատնտեսական պրոբլեմների մի ամբողջ կոմպլեքսային դիրքորոշում։ Այդ կապակցությամբ ընդգծվում էր գյուղատնտեսության զարգացման անհրաժեշտությունը այն ինտենսիֆիկացնելու, ագրոտեխնիկան, հողաշինարարությունը բարելավելու «և գյուղատնտեսության կոլեկտիվացման զանազան ձևերն ամեն կերպ պաշտպանելու» միջոցով։

Այդպես սահմանեց համագումարը ժողովրդական տնտեսության վերակառուցման հիմնական ուղղությունները։

Ինչպես միշտ, բեկումային ելագծերում, կուսակցությունն սկսեց իր կազմակերպությունների ամրապնդումից։ XIV համագումարը նոր խմբագրությամբ հաստատեց կուսակցության կանոնադրությունը, որի մեջ ամրապնդեց առաջներում ընդունված որոշումները՝ կուսակցության մեջ ընդունելություն կատարելիս սոցիալական կատեգորիաներ սահմանելու և կուսակցության

շարքերում բանվորների ընդունելությունը հեշտացնելու մասին։ ՍՍՀՄ կազմակերպվելու կապակցությամբ և դեռևս XII և XIII կուսհամագումարների կողմից արված առաջարկություններին համապատասխան XIV համագումարը որոշում ընդունեց կուսակցությունը վերանվանելու մասին։ Այն սկսեց կոչվել Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) կուսակցություն։

XIV համագումարում սահմանելով իր հիմնական խնդիրները, կուսակցությունը աշխատավոր գյուղացիության հետ դաշինքի մեջ գտնվող բանվոր դասակարգին առաջնորդում էր դեպի մեր հայրենիքի ինդուստրիալ վերափոխություն։ Այդ կենսականորեն անհրաժեշտ խնդիր էր։ Դեռևս XIX դարի վերջում Ռուսաստանում սկսված կապիտալիստական ինդուստրացումը, որը կարողացել էր ընդգրկել գլխավորապես թեթև արդյունաբերությունը և մասամբ արտադրության միջոցների արտադրությունը, Հոկտեմբերյան հեղափոխության պահին չէր ավարտվել։ Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովրդին վիճակվեց լուծել մեր երկիրը ինդուստրիալ տերության վերափոխելու խնդիրը։

20-ական թվականների առաջին կեսում նախահեղափոխական տեխնիկական բազան վերականգնվել էր, իսկ մի քանի շրջաններում ավելի էր զարգացել։ 1926 թվականին սկսվեց արտադրության միջոցների արտադրության արագ աճ։ Այն կազմում էր սոցիալիստական ինդուստրացման հիմնական բովանդակությունը։ Դրա հետ միասին նրա կարևոր խնդիրն էր սպառման միջոցների (այսինքն՝ արդի թեթև արդյունաբերության) մեքենայական արտադրության հետագա զարգացումը։

ՍՍՀՄ ինդուստրացումը կրում էր սոցիալիստական բնույթ, որի պատճառով էլ արմատապես փոխվեցին նրա նպատակներն ու միջոցները՝ կապիտալիստական ինդուստրացման համեմատությամբ։ ՍՍՀՄ ինդուստրացումը նպատակ էր հետապնդում ստեղծելու սոցիալիզմի նյութատեխնիկական բազա։ Բայց որտե՞ղ գտնել արդյունաբերության մեջ կապիտալ ներդրումների մեծացման աղբյուրներ։ Կուսակցության առջև նախ և առաջ ծառացավ այդ հարցը։

Սովետական պետության համար, ըստ նրա բուն էության, բացառված էին կապիտալիստական ինդուստրացման այնպիսի աղբյուրները, ինչպես պատերազմներն էին և գաղութների թալանը։ Նա չէր կարող դիմել նաև արտաքին փոխառությունների։

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի ապրիլյան (1926 թ.) պլենումը, քննարկելով սոցիալիստական ինդուստրացման աղբյուրների հարցը, նշեց, որ երկիրն ունի զգալի միջոցներ, բնական հարստություններ (վառելիք, հանքեր և այլն)։ Նա կարող էր արտահանել հումքի մի որոշ մասը ու այլ ապրանքներ և շահույթ ստանալ։ Արտաքին առևտրի մենաշնորհը՝ հեղափոխության ամենակարևոր նվաճումներից մեկը, պետությանը թույլ էր տալիս իր ձեռքում կենտրոնացնելու էքսպորտից՝ ապրանքների արտասահման արտահանելուց ստացված ամբողջ շահույթը և պլանային կարգով որոշելու իմպորտի՝ արտասահմանից ապրանքների ներմուծման խնդիրները։ Ընդ որում ամենից առաջ հաշվի էին առնվում արդյունաբերության պահանջները։ Արտասահմանում սովետական արդյունաբերական ապրանքների վաճառքը (անտառանյութ, սննդամթերքներ, լեռնահանքային արդյունաբերության, այդ թվում և նավթի, արտադրանքներ



և այլն) 20-ական թվականների երկրորդ կեսում կազմում էր ամբողջ էքսպորտի կեսից պակաս, իսկ արտասահմանում այնպիսի նյութերի գնումը, որոնք անհրաժեշտ էին մեր արդյունաբերության զարգացման համար, կլանում էին իմպորտի գումարի մոտավորապես 80 տոկոսը։

Սովետական իշխանությունը կուտակման համար օգտագործում էր ոչ միայն արտաքին առևտուրը, այլև պետական ձեռնարկությունների շահույթը, բանկա-վարկային սիստեմը, հարկերը, փոխառությունները և այլն։ Սոցիալիստական տնտեսության պլանայնությունը, ինչպես նաև շուկայում գների տարերային խաղի ավելի մեծ չափով փոխարինվելը պլանային գնագոյացմամբ, պետությանը հնարավորություններ տվեցին իր ձեռքում կուտակելու անհրաժեշտ միջոցներ և դրանք վերաբաշխելու էկոնոմիկայի ճյուղերի միջև։ Եթե 1928 թվականին ծանր արդյունաբերության վրա կատարված ծախսերը կազմում էին ամբողջ բյուջետային ծախսերի 9 տոկոսը, ապա 1932 թվականին դրանք կազմեցին արդեն 32 տոկոս։

Ծանր արդյունաբերության համար միջոցների կուտակման կարևոր աղբյուրներից մեկը, արդյունաբերության հումքի աղբյուրը և արդյունաբերական-քաղաքային բնակչության պարենային բազան գյուղատնտեսությունն էր։ Պետությունը պահպանում էր համեմատաբար ավելի բարձր գներ արդյունաբերության արտադրանքի համար, դրանով իսկ վերաբաշխելով ազգային եկամտի մի մասը ինդուստրիայի օգտին։ Դրա հետ միասին կուսակցությունը մերժեց արդյունաբերական ապրանքների գների չափից ավելի բարձրացման մասին տրոցկիստների առաջարկը և խնդիր դրեց դրանք աստիճանաբար իջեցնել։

Գյուղը քաղաքին տալիս էր պարեն և հումք։ Գյուղացիները մասնակցում էին պետական փոխառություններին, այդ թվում և ինդուստրացման երեք փոխառություններին և այլն։ Քաղաքն էլ իր հերթին օգնում էր գյուղին ոչ միայն այնտեղ որակավորված կադրեր ուղարկելով, կուլտուրական աշխատանք ծավալելով, այլև նյութապես։ Չէ՞ որ արդյունաբերության զարգացումը անհրաժեշտ էր գյուղատնտեսության տեխնիկան վերակառուցելու համար։ Պետությունը գյուղի աշխատավորներին իր ուժերի ներածին չափով ֆինանսական օգնություն էր ցույց տալիս։

1924—1926 թվականների ընթացքում գյուղատնտեսության արտադրական կարիքների համար բաց թողած վարկերը կազմում էին ավելի քան 850 միլիոն ռուբլի։ Այն ստանում էին գլխավորապես չքավորությունը և միջակները, ինչպես նաև սովխոզներն ու կոոպերատիվները։ Բացի դրանից, ինդուստրացման սկզբից մինչև առաջին հնգամյակը գյուղատնտեսության և անտառային տնտեսության զարգացման համար բյուջեով առանձնացվեց ավելի քան մեկ միլիարդ ռուբլի։ Արդյունաբերության զարգացումը անհրաժեշտ էր գյուղատնտեսության տեխնիկական վերակառուցման համար։ Քաղաքը գյուղին հարաճուն օգնություն էր ցույց տալիս։

Փոխադարձ օգնության նույնանման հարաբերություններ ստեղծվեցին ծանր և թեթև արդյունաբերությունների միջև։ Դիրեկտիվ կարգով գներ սահմանելով, պետությունը վերցնում էր թեթև և սննդի արդյունաբերության եկամտի մի մասը և պետական բյուջեով այն հատկացնում ծանր ինդուստրիային։ 1926—1929 թվականներին արտադրության միջոցների արտադրու-

թյան ներդրումների մոտավորապես 70 տոկոսը կազմում էին թեթև արդյունաբերության եկամուտներից կատարված հատկացումները։ XIII կուսկոնֆերանսի բնորոշմամբ այդպես էր ստեղծվում «պետության մանևրային ֆոնդը», որը հնարավորություն տվեց մեր երկիրը արագ կերպով ագրարայինից դարձնելու ինդուստրիալ։

Հասկանալի է, պետական հատկացումների սիստեմը (այսինքն՝ վնասների փոխհատուցումը), որ բացատրվում էր դժվար ոտքի կանգնող ծանր ինդուստրիայի բարձր ինքնարժեքով, չէր կարելի համարել որպես հիմնական գործոն։ Հատկացումները ձեռնարկություններին բերում էին տնտհաշվարկը քայքայելու վտանգ։ Բայց այն ժամանակ ուրիշ կերպ հնարավոր չէր ապահովել ինդուստրացման բարձր տեմպերը։

Այսպիսով, մեր երկրի յուրահատուկ պայմաններում ինդուստրացումը պահանջում էր նշանակալից ջանքեր և զոհեր։ Նրա հիմնական օղակը՝ ծանր ինդուստրիան, գլխավորապես ստեղծվում էր այն միջոցների հաշվին, որ կուտակել էին այն ժամանակ էկոնոմիկայի առավել զարգացած և շուկայի հետ սերտ կապ ունեցող ճյուղերը՝ թեթև արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը։ Այդ, իհարկե, ազդում էր սպառող աշխատավորության նյութական դրության վրա։ Բայց սովետական մարդիկ՝ սոցիալիզմ կառուցողները, ամենաարագ կերպով սոցիալիզմի նյութատեխնիկական բազա ստեղծելու համար այդպիսի զոհաբերություններ էին կատարում։

Կուսակցությունն ընդգծում էր, որ անցյալի համեմատությամբ մեր երկիրը կուտակման ավելի բարենպաստ հնարավորություններ ունի, քանի որ նրանում վերացվել է կալվածատերերի ու խոշոր բուրժուազիայի պարազիտային սպառումը։ Հեղափոխությունը նմանապես վերացրեց Ռուսաստանի պարտքը օտարերկրյա կապիտալին։ Աշխատանքի արտադրողականության բարձրացումը և արտադրանքի ինքնարժեքի իջեցումը մեծ ռեզերվ էին, որոնց համար ևս սոցիալիզմը ստեղծեց բարենպաստ հնարավորություններ։

Կոմունիստական կուսակցությունը խնդիր դրեց այդ բոլոր հնարավորությունները իրականացնել ամենալավագույն կերպով։ Հարկավոր էր ուժեղացնել բնակչության ազատ միջոցների հոսքը դեպի ամեն կարգի վարկային կոոպերատիվ հիմնարկություններ։ Փոքր դեր չխաղացին պետական փոխառությունները։ Բանվորներն ու գյուղացիները իրենց միջոցները կամավոր կերպով տալիս էին սոցիալիստական ինդուստրացմանը։ Կուսակցությունը առաջարկեց խնայողության խիստ ռեժիմ կիրառել, անողոք կերպով պայքարել անարտադրողական ծախսերի դեմ։ 1926 թվականի գարնանը ՀամԿ(բ)Կ Կենտկոմը և ԿՎՀ-ն բոլոր կուսակցական կազմակերպություններին և բոլոր աշխատավորներին ուղղված դիմում հրապարակեցին «Խնայողության ռեժիմի համար մղվող պայքարի մասին», կոչ անելով «խնայել ամեն մի կոպեկը և սիստեմատիկաբար միջոցներ կուտակել մեր ինդուստրիայի կարիքների համար»։

Այդպես էին պայմաններ ստեղծվում ինդուստրացման բարձր տեմպերի համար։ 1927 թվականին ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը կազմում էր նախապատերազմյան մակարդակի 111 տոկոսը, իսկ խոշոր արդյունաբերությանը՝ 122 տոկոսը։ Հետագայում սովետական ինդուստրիայի քայլերը տարեցտարի ավելի էին լայնանում։ 1928—1932 թվականներին ամբողջ արդյունաբերության ծավալը ավելացավ տարեկան միջին



հաշվով 20 տոկոսով, իսկ արտադրության միջոցների արտադրության ծավալը՝ 28 տոկոսով։

Այդ հանգամանքը պայմանավորեց սոցիալիստական շինարարության նաև մյուս պրոցեսների արագացումը։ Սոցիալիստական կուտակման աղբյուրների է՛լ ավելի ընդլայնումը հաջողվեց գլխավորապես ներքին առևտրից մասնավորներին դուրս մղելու միջոցով, կոոպերացիայի զարգացմամբ, կոլտնտեսություններ ու սովխոզներ կառուցելով և այլն։ Նեպմանները և կուլակները, զգալով իրենց կործանման մոտեցումը, ուժեղացրին դիմադրությունը։ Երկրում դասակարգային պայքարը նորից սրվեց։

Այդ պայմաններում հատկապես վտանգավոր էր կուսակցության մեջ օպոզիցիոն տարրերի հանդես գալը։ 1926 թվականի կեսերին կազմավորվեց տրոցկիստական-զինովևական բլոկը, որի պլատֆորմը տրոցկիստական էր, իսկ կազմը խիստ խայտաբղետ։ Նրա մեջ մտան նախկին բոլոր հակալենինյան խմբերի ներկայացուցիչները։ Օպոզիցիան ձգտում էր կուսակցության աշխատանքում եղած դժվարություններն օգտագործել իր ֆրակցիոն նպատակների համար։ Դա չափազանց խանգարում էր կուսակցական և պետական կազմակերպությունների գործարար աշխատանքին։

Կուսակցությանը նվիրված կոմունիստները հասկանում էին, որ իրենց քննադատական ելույթները կօգտագործվեն օպոզիցիայի կողմից։ 1926 թվականի հուլիսին Ձերժինսկին մեծ դառնությամբ այդ մասին գրում էր Կույբիշևին։

Անցնելով արդեն կազմակերպական աշխատանքի մեծ դպրոց, բացի ՉԵԿ-այից, հաղորդակցության ճանապարհների ժողկոմի և ԺՏԳԽ նախագահի պոստում, Ձերժինսկին հատկապես սուր կերպով էր վերաբերվում ժողովրդական տնտեսության ղեկավարման գործում եղած թերություններին։ Նա անհաշտ էր բյուրոկրատիզմի, տեղայնության, ներգերատեսչական մոտեցման ամեն մի դրսևորումների նկատմամբ։

Իսկ օպոզիցիան կառչում և ուռցնում էր ամեն մի քննադատական ելույթ։ Կուսակցության հավատարիմ զավակների, այնպիսի մարդկանց համար, ինչպես Ձերժինսկին էր, որոնք կրքոտ պաշտպանում էին նրա միասնությունը, հենց դրանումն էլ կայանում էր նրանց անձնական մեծ ողբերգությունը։ Ըստ իր խառնվածքի նա չէր կարող հանդես չգալ թերությունների, խեղաթյուրումների դեմ։ Այդ բոլորը արտահայտվում էր իր կուսակցական ընկերոջը նրա գրած անձնական նամակի մեջ. «Հարգելի Վալերիան... Ես գիտակցում եմ, որ իմ ելույթները կարող են գոտեպնդել նրանց, ովքեր կուսակցությունն ու երկիրը անկասկած դեպի կործանում կտանեն, այսինքն՝ Տրոցկուն, Զինովևին, Պյատակովին, Շլյապնիկովին։ Սակայն ինչպե՞ս վարվեմ ես։ Ես լրիվ համոզված եմ, որ մենք բոլոր թշնամիներին կհաղթենք, եթե երկրի և տնտեսության կառավարման մեջ գործնականում գտնենք և բռնենք ճիշտ գիծ... Եթե այդ գիծը և տեմպը չգտնենք, մեր օպոզիցիան կաճի և երկիրը այդ ժամանակ կգտնի իր դիկտատորին՝ հեղափոխության հուղարկավորին, ինչպիսի կարմիր փետուրներ էլ որ լինեն նրա կոստյումի վրա... Այդ տարաձայնություններից ես էլ եմ հոգնել»։

Տասնյոթ օրից հետո Ձերժինսկին Կենտկոմի պլենումում կրքոտ ճառով հանդես եկավ օպոզիցիոներների դեմ։ Ելույթից երկու և կես ժամ անց հեղա-

փոխության անվեհեր ասպետը սրտի պայթյունից մահացավ։ Նա մի անգամ ասել է. «Ես չեմ կարող կիսով չափ ատել կամ կիսով չափ սիրել։ Ես չեմ կարող տալ միայն հոգուս կեսը»։ Ձերժինսկին հեղափոխականի իր ամբողջ հոգին տվեց կուսակցությանը, նրա գործի հաղթանակին։

Համամիութենական XV կուսկոնֆերանսը (1926 թվի հոկտեմբերի վերջնոյեմբերի սկիզբը) տրոցկիստական, զինովևական օպոզիցիայի հայացքները բնորոշեց որպես մենշևիկյան թեքում կուսակցության մեջ։ Կոնֆերանսը օպոզիցիոներներին զգուշացրեց, որ դեպի մենշևիզմ նրա հետագա շեղումը կհանգեցնի նրանց վտարմանը ՀամԿ(բ)Կ-ից։

Բայց օպոզիցիոներները չենթարկվեցին կուսակցության որոշմանը։ 1927 թվականի հոկտեմբերին հրապարակվեցին XV համագումարում Կենտկոմի զեկուցումների թեզիսները և հայտարարվեց համկուսակցական դիսկուսիա դրանց առթիվ։ Նախահամագումարյան նյութերը քննարկվեցին բոլոր կուսակցական կազմակերպություններում։ Կենտկոմի քաղաքականության օգտին քվեարկեցին կուսակցության 724 հազար անդամներ. տրոցկիստների և զինովևականների բլոկի օգտին՝ 4 հազար, կուսակցության անդամների մեկ տոկոսից էլ պակաս։ Օպոզիցիան, համոզվելով, որ ձախողվել է, դուրս եկավ ներկուսակցական պայքարի շրջանակներից։ 1927 թվականի նոյեմբերի 7-ին նա փորձեց իր ղեկավարությամբ կազմակերպել փողոցային քաղաքական ցույց։ Մեկ շաբաթ անց Կենտկոմը և ԿՎՀ-ն Տրոցկուն և Զինովևին վտարեցին կուսակցությունից, իսկ մյուս ֆրակցիոներներին հանեցին Կենտկոմի և ԿՎՀ-ի կազմից։ Օպոզիցիայի հարցը ամբողջությամբ վերցրած հանձնվեց XV համագումարի քննարկմանը։

### ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ: ԱՌԱՋԻՆ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԸ

1927 թվականի դեկտեմբերի 2—19-ը կայացավ ՀամԿ(բ)Կ XV համագումարը։ Նա գումարվեց մեկ ամիս անց այն ժամանակից, երբ երկիրը նշում էր Հոկտեմբերյան հեղափոխության 10-ամյակը։ Այդ ոչ մեծ ժամկետում կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովուրդը հաղթահարեց քայքայվածությունը, վերականգնեց էկոնոմիկան և ձեռնամուխ եղավ ամենախոր վերափոխումների իրագործմանը։ Բարելավվեց սովետական ժողովրդի կյանքը։ 1927 թվականին իրագործվեց անցումը յոթժամյա աշխատանքային օրվա։ Սոցիալիստական հեղափոխության տասնամյակի օրերին Մոսկվայում կայացավ ՍՍՀՄ բարեկամների համաշխարհային կոնգրեսը։ Սովետների երկիրը դարձավ համաշխարհային հեղափոխության ամրոցը, բոլոր երկրների աշխատավորության հայացքները գրավող փարոսը։ Բայց նրա արտաքին քաղաքական դրությունը մնում էր լարված։ 1927 թվականի փետրվարին անգլիական արտաքին գործերի մինիստր Չեմբեռլենը սովետական կառավարությանը նոտա ներկայացրեց, նորից, ինչպես և 20-ական թվականների սկզբներին էր, ՍՍՀՄ-ին մեղադրելով հակաբրիտանական պրոպագանդայի մեջ։ Նույն տարվա գարնանը Չինաստանում և Անգլիայում տեղի ունեցան ոստիկանական հարձակումներ սովետական ներկայացուցչությունների վրա։ Մեծ Բրիտանիան Սովետական Միության հետ խզեց դիվանագիտական հարաբերությունները։ Իսկ դրանից 10 օր անց Վարշավայի կայարանում սպանվեց Լեհաստանում ՍՍՀՄ լիազոր ներկայացուցիչ, բոցաշունչ հեղափոխական Պ. Լ. Վոյկովը։



Այդ ամենը կուսակցությունից պահանջում էր բարձրացնել աչալրջությունը, ուժեղացնել երկրի պաշտպանունակությունը։ 1924—1928 թվականներին անցկացվեց ռազմական ռեֆորմ, որով ամրացավ Կարմիր բանակի մարտունակությունը։

Ժողովուրդը, տեսնելով կուսակցության քաղաքականության ճշմարտացիությունը, վստահորեն գնում էր նրա հետևից։ Աճեց կուսակցության թվական կազմը։ Համագումարի մոտերքին կուսակցության մեջ հաշվվում էր ավելի քան 887 հազար անդամ և շուրջ 350 հազար թեկնածու։

ՀամԿ(բ)Կ XV համագումարը քննարկեց Կենտկոմի քաղաքական հաշվետվությունը, որ տվեց Ի. Վ. Ստալինը, կազմակերպական հաշվետվությունը, որով հանդես եկավ Ս. Վ. Կոսիորը, Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը՝ զեկուցող Դ. Ի. Կուրսկի, ԿՎՀ-ԲԳՏ-ի հաշվետվությունը՝ զեկուցող Գ. Կ. Օրջոնիկիձե։

Բացի ղեկավար կուսակցական օրգանների հաշվետվություններից, համագումարի ուշադրության կենտրոնում էին գտնվում նաև առաջին հնգամյա պլանը կազմելու դիրեկտիվների և գյուղում տարվելիք աշխատանքի վերաբերյալ խոշորագույն ժողովրդատնտեսական հարցերը։ Համագումարը քննարկեց նաև ՀամԿ(բ)Կ պատվիրակության գործունեությունը Կոմինտերնի գործկոմում և հատուկ հանձնաժողովի զեկուցումը օպոզիցիայի հարցի վերաբերյալ։

Համագումարը ցուցադրեց կուսակցության երկաթե միասնությունը։ Տրոցկիստական-զինովևական բլոկի դեմ պայքարի արդյունքները ի մի բերելով, համագումարն ընդգծեց, որ «օպոզիցիան գաղափարապես խզել է իր կապերը լենինիզմի հետ, վերասերվել է մենշևիկյան խմբի, կանգնել է կապիտուլյացիայի ուղու վրա միջազգային և ներքին բուրժուազիայի ուժերի հանդեպ»։ Ելնելով այն բանից, որ օպոզիցիայի տարաձայնությունները կուսակցության հետ տակտիկականից վերաճել են ծրագրայինի, ՀամԿ(բ)Կ XV համագումարը տրոցկիստական օպոզիցիային պատկանելը և նրա հայացքների պրոպագանդումը համարեց անհամատեղելի պարտիայի անդամության հետ։ Համագումարը ՀամԿ(բ)Կ շարքերից վտարեց օպոզիցիայի շուրջ 100 ակտիվ մասնակիցների։

Հավանություն տալով Կենտկոմի գործունեությանը, համագումարը հանձնարարեց նրա նոր կազմին՝ «չթուլացող տեմպով շարունակել սոցիալիստական **ինդուստրացման** քաղաքականությունը, որն արդեն տվել է իր առաջին դրական արդյունքները»։

ՀամԿ(բ)Կ XV համագումարն առաջ քաշեց ամբողջ ճակատով սոցիալիզմի հարձակումը նախապատրաստելու նոր պատմական խնդիրը։ Առաջին հնգամյա պլանը կազմելու դիրեկտիվների մասին համագումարի ընդունած որոշումը հսկայական նշանակություն ունեցավ։ Այդ բանաձևը կարևոր քայլ էր ՌԿ(բ)Կ VIII համագումարում ընդունված կուսակցության ծրագրի իրականացման ճանապարհին, այն լենինյան ԳՕԷԼՐՕ-ի պլանի զարգացումն էր։

Հնգամյա պլանի հիմնական խնդիրը սոցիալիստական էկոնոմիկայի հիմքի ստեղծումն էր։ Խոսելով այդ մասին, ՍՍՀՄ-ի պետպլանի նախագահ Գ. Մ. Կրժիժանովսկին հատկապես ընդգծում էր, որ պլանը նախատեսում է ծանր ինդուստրիայի գերակշռող զարգացման ապահովումը և ամբողջ ժողովրդա-

կան տնտեսության մեջ սոցիալիստական սեկտորի տեսակարար կշռի բարձրացումը: Հնգամյակի հիմքում դրված էր սոցիալիստական արտադրության հարաճուն տեմպերի սկզբունքը:

Այնպես, ինչպես և լենինյան ԳՕԷԼՐՕ-ի պլանը, առաջին հնգամյա պլանը ժողովրդա-տնտեսական միասնական պլան էր: Արդյունաբերության ու գյուղատնտեսության զարգացումը, տեխնիկական և սոցիալական վերակառուցումը, աշխատավորության բարեկեցության և կուլտուր-տեխնիկական մակարդակի աճը՝ որպես մի միասնական կոմպլեքս, որոշվում էին այդ պլանով: Ժողովրդա-տնտեսական բոլոր հիմնական համամասնությունները համաձայնեցված էին նաև ըստ ժամանակի, որոշվել էին սոցիալիստական վերափոխությունների ժամկետները, որոնցից յուրաքանչյուրը կախված էր մյուսներից, իսկ նրանք բոլորը միասին իրենցից ներկայացնում էին ամբողջ ճակատով սոցիալիզմի հարձակման ծավալուն ծրագիր:

Դեռ մինչև համագումարը կուսակցությունը հռչակեց «Երեսներս դեպի արտադրությունը» լոզունգը: Երկիրը աստիճանաբար ուժ էր հավաքում: Արդյունաբերական շինարարությունն ավելի լայնորեն էր ծավալվում:

Գյուղատնտեսության մեջ դրությունը ավելի բարդ էր: Թեև նա ամբողջությամբ վերցրած առաջ էր ընթանում, սակայն հացահատիկի արտադրությունը ետ էր մնում երկրի հարաճուն պահանջմունքներից: Այդ հարկադրեց կուսակցությանը առանձնակի ուժով դնելու գյուղի սոցիալիստական վերակառուցման հարցը:

Կոլեկտիվացման նախադրյալներ ստեղծվել էին դեռևս հեղափոխության առաջին տարիներից: Վճռական քաղաքական նախադրյալը պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումն էր 1917 թվականին: Կուսակցությունը միշտ հոգ էր տանում բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքն ամրապնդելու մասին, դրանում տեսնելով սոցիալիստական վերափոխությունների կարևորագույն պայմանը: Կուսակցությունը սիստեմատիկ կերպով և հաստատակամորեն ստեղծեց գյուղատնտեսության կոլեկտիվացման նաև նյութական նախադրյալներ: Հենվելով «տնտեսական հրամանատարական բարձունքների» (սոցիալիստական արդյունաբերություն, բանկեր, տրանսպորտ և այլն) վրա, սովետական պետությունը սահմանափակում և դուրս էր մղում կապիտալիստական տարրերին, ամեն կերպ աջակցում գյուղատնտեսության մեջ սոցիալիստական ձեռնարկությունների զարգացմանը: Հողի ազգայնացումը և ընդհանրապես գյուղատնտեսական արտադրության միջոցների նկատմամբ խոշոր մասնավոր սեփականության վերացումը ստեղծեցին այնպիսի գյուղատնտեսական կարգ, որը Լենինը անվանեց «ավելի ճկուն սոցիալիզմին անցնելու առումով»: Գյուղում սոցիալիստական տնտեսությունների ամրապնդման և զարգացման կարևորագույն պայմանը կուսակցությունը տեսնում էր գյուղատնտեսական գործիքների և մեքենայական տեխնիկայի՝ տրակտորների, կոմբայնների և այլնի արտադրության ընդարձակման մեջ: Այսպիսով, ՍՍՀՄ-ում երկրի ինդուստրացումը և գյուղատնտեսության կոլեկտիվացումը փոխադարձաբար պայմանավորված էին:

Կուսակցության XV համագումարը անվանում են կոլեկտիվացման համագումար: Իսկապես, նա իր որոշումներով գյուղի սոցիալիստական վերափոխման անմիջական նախապատրաստման ժամանակաշրջան բացեց, հռչա-



կեց գյուղատնտեսության կոլեկտիվացման կուրս: «Ներկա ժամանակաշրջանում մանր անհատական գյուղացիական տնտեսությունները միավորելու և խոշոր կոլեկտիվների վերափոխելու խնդիրը,— նշվում էր համագումարի որոշումներում,— պետք է դրվի որպես կուսակցության հիմնական խնդիրը գյուղում»: Ըստ որում համագումարը նախազգուշացնում էր, որ անցումը խոշոր կոլեկտիվ տնտեսության «կարող է կատարվել միայն այդ բանի հետ աշխատավոր գյուղացիության համաձայնության դեպքում»:

Մեծ աշխատանքների ծրագիրը, որը նշվել էր կուսակցության կողմից, ոգևորում էր համագումարի պատվիրակներին, ամբողջ կուսակցությանը, ամբողջ ժողովրդին:

— Լենինյան ցանքը,— ասում էր համագումարում Կրժիժանովսկին,— ընկավ լավ հողի վրա... այն, ինչը որ մի ժամանակ թվում էր երազանք, պոեզիա, երևակայություն, այժմ արդեն մեր կուսակցության ամբողջ հզոր կոլեկտիվը պաշտպանեց: Եվ դրանում էր այն բանի գրավականը, որ մեր ամբողջ գործը կիրականանա կյանքում:

Սոցիալիզմի կառուցումը դժվար պայմաններում էր կատարվում: 1927 թվականի աշնանը սկսվեցին հացի մատակարարման ընդհատումներ, չնայած համեմատաբար լավ բերք էր հավաքվել: 1928 թվականի հունվարի 1-ի մոտերքին մթերվել էր համարյա 116 միլիոն փութ պակաս հաց, քան մի տարի առաջ: Մինչդեռ տարեցտարի ավելի շատ էր հարկավոր: Քաղաքային բնակչության աճման կապակցությամբ միայն ՌՍՖՍՀ-ում 1927/1928 թվականին հացի պահանջը աճեց 235 միլիոն փթով: Առաջացավ սովի սպառնալիք:

Մթերային դժվարությունները բացատրվում էին մի շարք հանգամանքներով: Ամենից ավելի խոր օբյեկտիվ պատճառն այն էր, որ մանր գյուղացիական տնտեսությունների ապրանքայնությունը՝ նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ, համարյա երկու անգամ իջել էր, թեև արտադրության նախկին ծավալը վերականգնված էր: Գյուղացին սկսել էր ավելի շատ հաց սպառել և քիչ վաճառել:

1928 թվականի գարնանը հացի դրությունն ավելի սրվեց այն պատճառով, որ Ուկրաինայի հարավում և Հյուսիսային Կովկասի մի շարք շրջաններում աշնանացանը լրիվ ոչնչացավ: Իսկ դա ոչ միայն երկիրը զրկեց այդտեղից սպասվելիք երկու-երեք տասնյակ միլիոն փութ հացից, այլև կառավարությանն ստիպեց պետական ռեզերվներից տուժածների համար օգնություն առանձնացնել: Սովի սպառնալիքի պատճառով 1928 թվականին մտցվեց հացի, իսկ այնուհետև այլ մթերքների քարտային սիստեմ, որը գործեց մինչև 30-ական թվականների կեսերը:

Կուլակությունը փորձեց օգտագործել դժվարությունները: Գյուղական բուրժուազիան կազմակերպում էր իսկական «հացի գործադուլներ»՝ հորում էր հատիկը հողի մեջ, հրաժարվում էր այն վաճառել, պահանջում էր գների մոտավորապես եռակի բարձրացում: Սպառնալով քաղցով, կուլակությունը պայքարում էր կապիտալիզմի վերականգնման համար: Հացամթերումները դարձան ճակատամարտ, որոնք որոշում էին «ով՝ ում» հարցը: Նէպին անցնելուց ի վեր, սկսվեց կապիտալիստական տարրերի ամենից խոշոր ելույթը սովետական իշխանության դեմ:

Մթերման սովորական միջոցները, ագիտացիան և համոզելը չէին ներգոր-

ծում։ Կուլակները հաճախ ծաղրում էին մթերողներին։ Ղազախստանի շրջաններից մեկի մի գյուղական ժողովում լիազորը երկու ժամ համոզում էր հանձնել հացը, որի կարիքն ուներ երկիրը։ Բանը վերջացավ նրանով, որ գյուղացիների խմբից առաջացավ մի կուլակ և, ծխելով ծխամորճը, ծաղրաբար նկատեց՝ «Իսկ դու պարիր, տղա, այն ժամանակ ես քեզ մի երկու փութ հաց կտամ»։ Երբ 1928 թվականին կուսակցության Կենտկոմի պլենումում հաղորդվեց այդ փաստը, զայրույթը համակեց դահլիճին։ Կուլակությանը չհաջողվեց ստիպել բոլշևիկներին պարելու իրենց թմբուկի տակ։ Ուժեղացնելով մթերող ապարատը, կուսակցությունը և պետությունը, բացի քարտային սիստեմ մտցնելուց, իրականացրին մի շարք արտակարգ միջոցառումներ։ Գյուղի հարուստ վերնախավի հարկերը ավելացվեցին։ Կուլակների և հացը չարամտորեն թաքցնողների նկատմամբ կիրառվում էր քրեական օրենսգրքի 107 հոդվածը, որը նախատեսում էր ապրանքի բռնագրավում և դատական պատասխանատվություն սպեկուլյացիայի համար։ Ընդ որում բռնագրավվող հացի 25 տոկոսը պետությունը երկարատև վարկի պայմաններով տալիս էր չքավորությանը։

Կուսակցությունը միջոցներ ձեռնարկեց հայրենական տրակտորաշինությունը զարգացնելու ճանապարհով կոլտնտեսությունների արտադրական բազան ուժեղացնելու համար։ 1928 թվականից սկսած սիստեմատիկաբար հացահատիկային սովխոզներ էին ստեղծվում, որոնք գյուղի սոցիալիստական վերափոխման մեջ ևս նշանակալից դեր խաղացին։

Այնուամենայնիվ կուլակային տնտեսությունը դեռևս արմատախիլ չէր արված։ Գյուղում արտադրության գործիքների նկատմամբ առաջվա նման գերիշխում էր մասնավոր սեփականությունը։ 1928—1929 թվականներին սովետական իշխանության դեմ կուլակային պայքարի նորագույն միջոցներից մեկը այսպես կոչված «ինքնակուլակաթափումն» էր. կուլակները կրճատում էին ցանքի տարածությունները, ծախծխում անասուններն ու ինվենտարը։ Այդպիսով, «կուլակաթափումը» սկսվեց ավելի վաղ, քան պետության կողմից կուլակությունը որպես դասակարգ աստիճանաբար վերացնելու քաղաքականության անցնելը և որոշակիորեն արագացրեց այդ անցումը։ «Ինքնավերացմանը» շատ կուլակներ նայում էին որպես ինքնապահպանության միջոցի։ Ծախծխելով ուրիշի աշխատանքի շահագործմամբ դիզված բարիքը, կուլակը դարսում էր սովետական ռուբլիները նվիրական «խնայտուփի» մեջ, որտեղ պահվում էին նրա մոր «նիկոլաևկիները» և «կերենկիները». Նա հույս ուներ փողերը խնայել «մինչև լավագույն ժամանակները»։ Կուլակի օրինակը որոշակիորեն ներգործեց միջակների վրա, որոնք սովոր էին վստահել գյուղական տերերի տնտեսական հոտառությանը։ Կուլակի դեմ պայքարելիս երբեմն թույլ տրված հակամիջակային շեղումները սրում էին դրությունը։

Կուսակցությունը, որ մինչ այդ տանում էր կուլակության շահագործողական ձգտումները սահմանափակելու քաղաքականություն, կանգնեց արտակարգ միջոցների դիմելու անհրաժեշտության առաջ, որպեսզի գյուղի արտադրողական ուժերը փրկի ոչնչացումից, որի նախաձեռնողները կուլակներն էին։ Տարբեր առաջարկություններ արվեցին այդ խնդիրը լուծելու համար։ Դրանցից մեկը, որ ելնում էր աջ ուկլոնիստներից, հանգում էր մանրբուրժուական տարրերի առաջ նահանջելուն՝ կուլակի հանդեպ կապիտուլյացիայի։ Կուսակցությունը գնաց այլ ճանապարհով։ Արտադրողական ուժերը պահպանելու



համար կուսակցությունը անհրաժեշտ համարեց արագացնել դրանց հանրայնացման պրոցեսը։

Կապիտալիստական տարրերը պայքարի ավելի ակտիվ ձևերի անցան։ Օրինակ, միայն ՌՍՖՍՀ-ում հաշվի առնված տեռորիստական ակտերը 1927 թվականի համեմատությամբ 1928 թվականին ավելացան 3 անգամ։ 1929 թվականին միայն Ռուսաստանի ֆեդերացիայի գյուղական վայրերում արձանագրվել են մոտ 30 հազար հրկիզում։ Այդ նշանակում է, որ հանրապետության գյուղերում ամեն օր բռնկվում էին մոտ հարյուր հրդեհ։

Պատրաստելով ամբողջ ճակատով սոցիալիզմի հարձակումը, կուսակցությունը 1928—1929 թվականներին նորից բախվեց օպոզիցիայի հետ՝ այս անգամ աջ թեքման հետ։ Դրությունը սաստկացավ նրանով, որ աջ օպոզիցիան գլխավորում էին Կենտկոմի քաղբյուրոյի երեք անդամներ՝ «Պրավդա»-ի գլխավոր խմբագիր Ն. Ի. Բուխարինը, ժողկոմսովետի նախագահ Ա. Ի. Ռիկովը, ՀամԿԽ-ի նախագահ Մ. Պ. Տոմսկին։ Ինչպես ընդգծվում էր այն տարիների կուսակցական փաստաթղթերից մեկում, ելնելով «նէպի լիբերալ մեկնաբանություններից», նրանք առաջին հնգամյակի սկզբում հանդես եկան կուսակցության գլխավոր գծի դեմ։ Աջերը առարկում էին ինդուստրացման բարձր տեմպերի և կուլակային տնտեսությունները սահմանափակելու միջոցառումների դեմ։ Նրանք, ըստ էության, կապիտուլյացիայի ենթարկվեցին դժվարությունների առաջ, պաշտպանելով քաղաքի և գյուղի կապիտալիստական տարրերի հետ «համաձայնության» գաղափարը։ Աջ օպորտունիզմը դարձավ գլխավոր վտանգը։ 1929 թվականի ապրիլին Կենտկոմի և ԿՎՀ-ի միացյալ պլենումը, հատկապես քննարկելով ներկուսակցական դրությունը, աջերի հայացքները և առաջարկությունները համարեց անհամատեղելի կուսակցության գլխավոր գծի հետ։ Պլենումը Բուխարինին և Տոմսկուն պատասխանատու պոստերից հանեց և նախազգուշացրեց նրանց, որ կուսակցության որոշումներին չենթարկվելու դեպքում նրանք կհանվեն քաղբյուրոյի կազմից։

Պլենումի ավարտման օրը բացվեց XVI Համամիութենական կուսկոնֆերանսը, որտեղ աջերը նորից ենթարկվեցին քննադատության։ Կոնֆերանսը քննարկեց և հաստատեց առաջին հնգամյա պլանը, որը մշակվել էր ՀամԿ(բ)Կ-ի XV համագումարի դիրեկտիվներին համապատասխան։ Պատգամավորները պաշտպանում էին հնգամյակի օպտիմալ տարբերակը, որը նախատեսում էր ավելի բարձր առաջադրանքներ, քան մինիմալ տարբերակը, որը պաշտպանվում էր աջերի կողմից։ Կոնֆերանսը «Բոլոր բանվորներին և Սովետական Միության աշխատավոր գյուղացիներին» ուղղված դիմում ընդունեց, կոչ անելով ծավալել մասսայական սոցիալիստական մրցություն։

Կուսակցական կոնֆերանսը որոշում ընդունեց նաև խորթ, բյուրոկրատական և այլասերված տարրերից կուսակցության նոր զտման մասին։ Զտման հետևանքով մի տարվա ընթացքում հեռացվեց կուսակցության նախկին կազմի մոտավորապես 10 տոկոսը։

Աջերի դեմ պայքարի եզրափակիչ շրջանը հանդիսացավ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի նոյեմբերյան (1929 թվականի) պլենումը։ Աջերի լիդերները պլենումում հայտարարում էին «տարաձայնությունները հանելու» մասին, բայց դրա հետ միասին, ինչպես ցույց տվեցին փաստերը, շարունակում էին գրոհ պատրաս-

տել կուսակցության ղեկավարության դեմ։ Պլենումը աջերի «տարաձայնությունները հանելու» մասին հայտարարությունը գնահատեց որպես «քաղաքական սնանկացածների ֆրակցիոն մանևր, նման տրոցկիստների «նահանջական» մանևրներին, որոնք իրենց իբր թե հաշտարարական հայտարարությունները բազմիցս օգտագործում էին որպես կուսակցության վրա նոր գրոհներ պատրաստելու մեթոդ»։ Բուխարինը հանվեց քաղբյուրոյից, իսկ նրա համախոհները նախազգուշացվեցին, որ պայքարը շարունակելու նվազագույն փորձ անելու դեպքում նրանց նկատմամբ նույնպես կկիրառվեն կազմակերպական միջոցառումներ։ Պլենումը որոշեց «աջ օպորտունիզմի հայացքների պրոպագանդումը և հաշտվողականությունը նրա նկատմամբ համարել անհամատեղելի ՀամԿ(բ)Կ շարքերում գտնվելու հետ»։

Աջերի դեմ պայքարի ընթացքում կուսակցությունը պաշտպանում էր սոցիալիստական վերափոխությունների արագացման կուրսը։ Կուսակցությունն այլևս անհնարին էր համարում երկրի էկոնոմիկան հիմնել երկու տարբեր սոցիալական հիմքերի՝ խոշոր սոցիալիստական արդյունաբերության հիմքի և մանրապրանքային մասնավոր սեփականատիրական գյուղացիական տնտեսությունների հիմքի վրա։ Գյուղատնտեսական արտադրության վերելքի արմատական լուծումը կուսակցությունը տեսնում էր «կոլեկտիվացման և սովխոզներ կազմակերպելու պրոցեսների հետագա արագացման ուղիների, կոլտնտեսությունների և սովխոզների հետագա բարելավման և ամրապնդման ուղիների, վերջապես, ինդուստրիայի զարգացումն արագացնելու ուղիների մեջ, որը հանդիսանում է գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման բանալին»։

«Նոր շինարարության խանդավառություն»,— կուսակցությունն այդպես բնորոշեց սովետական ժողովրդի վերաբերմունքը առաջին հնգամյա պլանի կառուցման համար մղվող պայքարի ընթացքում։ Արդյունաբերության մեջ մասսայական սոցիալիստական մրցությունը 1930 թվականի սկզբին ընդգրկել էր խոշոր ձեռնարկությունների բանվորների 63 տոկոսը։ Արդյունաբերության զարգացման տեմպերը գերազանցում էին պլանային նախատեսումները։ Միայն 1929 թվականի ընթացքում ամբողջ խոշոր արդյունաբերության արտադրանքն աճեց 25 տոկոսով, իսկ ծանր ինդուստրիայի արտադրանքը՝ 31 տոկոսով։ Ծավալվեց նոր կապիտալ շինարարության մի ամենալայն ճակատ։ Կառուցվեցին Դնեպրոգէսը, Նովո-Կրամատորսկի գործարանը Դոնբասում, Ուրալի ծանր մեքենաշինական գործարանը, քիմիական կոմբինատներ Բերեզնյակում և Սոլիկամսկում, Մագնիտագորսկի մետալուրգիական կոմբինատը։ Շինարարությունը կատարվում էր երկրի բոլոր շրջաններում։

Կուսակցությունը և կառավարությունը 1929 թվականի վերջում— 1930 թվականի սկզբում միջոցներ ձեռնարկեցին գյուղատնտեսության նյութական բազան ամրապնդելու համար։ Առանձին շրջանների կոլեկտիվացման տեմպերին համապատասխան վերակազմվեց մեքենամատակարարման պլանը։ ՍՍՀՄ Կենտգործկոմի 2-րդ սեսիան 1929 թվականի դեկտեմբերին որոշում ընդունեց «գյուղատնտեսական սարքավորման հնարավոր ավելի ցածր գներ» պահպանելու մասին։ Գյուղատնտեսական մեքենաշինության նոր գործարաններ կառուցելու և հները վերակառուցելու նպատակով հատկացումներն ավելացան ավելի քան 2 անգամ։ Որոշվեց արագացնել կոմբայններ արտադրող գործա-





րանների կառուցումը։ Այդ բոլորը պահանջեց փոփոխություններ մտցնել նաև ծանր ինդուստրիայի ավելի վաղ նախատեսված համամասնությունների մեջ։

Մի շարք շրջաններում գյուղացիները մեկ տարվա ընթացքում արորից անմիջականորեն տրակտորին անցան, շղթաներով կալսելուց՝ կոմբայնին։ Գյուղացիները առաջին տրակտորների հայտնվելը համարյա որպես հրաշք ընդունեցին։ Եվ դա հասկանալի է. չէ՛ որ նրանցից յուրաքանչյուրը փոխարինում էր մի քանի ձիու։ Գյուղի բոլոր բնակիչները դուրս էին թափվում փողոց, գնում տրակտորի հետևից։ Նախկին ժամանակներում բերքի համար աղոթքի խաչաթափորը այդքան մարդ չէր հավաքում։

1930 թվականի գարնանացանի կամպանիայի սկզբին 158 մեքենատրակտորային կայաններում կենտրոնացվել էր տեխնիկա կոլտնտեսությունների արտադրական սպասարկման համար։ ՄՏԿ-ներ ստեղծվում էին առաջին հերթին համատարած կոլեկտիվացման շրջաններում, որտեղ գյուղացիների մեծամասնությունը մտել էր կոլտնտեսություն։

Սկզբում կազմակերպվեցին ինչպես պետական, այնպես էլ կոոպերատիվ ՄՏԿ-ներ։ Բայց միջոցների այդպիսի փոշիացումը նպատակահարմար չէր, դրա համար տեխնիկան առավելապես կուտակվում էր պետական մեքենատրակտորային կայաններում։ Առաջին ՄՏԿ-ն ծագեց այն տրակտորային շարասյան հիման վրա, որը 1927 թվականին Օդեսայի մարզի Շևչենկոյի անվան սովխոզի կողմից առանձնացվել էր գյուղացիական տնտեսություններին սպասարկելու համար։ Պետական ՄՏԿ-ների քանակը արագ կերպով մեծանում էր։ 1928 թվականին նրանց քանակը 6 էր, իսկ հնգամյակի վերջում՝ շուրջ 2,5 հազար։ Նրանք արդեն այն ժամանակ մշակում էին կոլտնտեսությունների ցանքատարածությունների համարյա կեսը և հանդիսանում էին սովետական պետության հենակետը գյուղում, օգնում էին վերջինիս սոցիալիստական վերակառուցմանը։ ՄՏԿ-ները մեծ նշանակություն ունեին նաև այն տեսակետից, որ նրանք կոլտնտեսություններից ստանում էին հաց և այլ մթերքներ, քանի որ կոլտնտեսություններն ավելի ու ավելի շատ բնամթերք էին վճարում ՄՏԿ-ներին, սրանց աշխատանքի դիմաց։

Կոմունիստական կուսակցությունը շատ ավելի լայնորեն էր կազմակերպում քաղաքի շեֆությունը գյուղի նկատմամբ, քան առաջ էր, ձեռք էր առնում հրատապ միջոցներ գյուղատնտեսական կադրերի ծայրահեղ սրված պրոբլեմի լուծման համար։ Կուսակցությունը բանվոր դասակարգին կոչ արեց առանձնացնելու 25 հազար կոփված պրոլետարներ, որոնք ընդունակ լինեն ղեկավարելու երիտասարդ կոլեկտիվ տնտեսությունները։ Այդ կոչը ջերմ արձագանք գտավ բանվորների շրջանում։ Փաստորեն գյուղ գնացին բանվոր դասակարգի 35 հազար պատգամավորներ։

1930 թվականի գարնանը երկրի կոլտնտեսություններում կային ավելի քան 313 հազար կոմունիստներ և ավելի քան 553 հազար կոմերիտականներ։ Թեև նրանք միասին կազմում էին կոլտնտեսությունների աշխատունակ բնակչության միայն 6,5 տոկոսը, բայց այդ առաջավոր, կազմակերպված և խիստ նպատակասլաց մի ջոկատ էր, որն ընթանում էր կոլտնտեսային շարժման ավանգարդում։



2—2664

Կուսակցությունն ուժեղացրեց մասսայական-քաղաքական և կազմակերպական աշխատանքը գյուղացիությանը կոլտնտեսություններում ընդգրկելու համար: Բոլոր գյուղական կոմունիստները մոբիլիզացվել էին կոլեկտիվացումը կենսագործելու համար: Գյուղում ագիտացիոն աշխատանքի գլխավոր բովանդակությունն այն էր, որ ցույց տրվեն անհատական տնտեսությունների հանդեպ կոլեկտիվ տնտեսությունների առավելությունները: Այդ աշխատանքը շոշափելի արդյունք էր տալիս այնտեղ, ուր օգտագործվում էր նախընթաց ժամանակաշրջանում գյուղում ստեղծված խոշոր սոցիալիստական տնտեսությունների փորձը:

Գյուղացիների վրա, օրինակ, մեծ տպավորություն էր գործում բարձր մեքենայացված «Գիգանտ» հացահատիկային սովխոզը: Նրա դիրեկտորը մինչև 1929 թվականի վերջը, նախկինում խառատ բանվոր Տ. Ա. Յուրկինն էր: Հետագայում նա գլխավորեց ՍՍՀՄ-ի և ՌՍՖՍՀ-ի կոլտնտկենտրոնը, աշխատեց որպես ժողկոմ, որպես սովխոզների մինիստր: Ստավրոպոլի օկրուգի Պոլտավա խուտորի հողագործ Ի. Պ. Զուպինը, լինելով այդ սովխոզում և այն համեմատելով անհատական տնտեսության հետ, հանգեց հետևյալ եզրակացության. «Այժմ ես պատրաստ եմ թողնելու մենատնտեսությունը և ապրելու խոշոր կոլեկտիվ տնտեսության մեջ, որը հեշտացնում է մարդու աշխատանքը: Եվ պետությանը ավելի օգուտ կլինի: Ախր պետությունը՝ այդ հենց մենք ենք ձեզ հետ միասին: Դրա համար էլ ամբողջ օգուտը լրիվ անցնում է մեր ձեռքը»:

1929 թվականին սովխոզներում եղան տասնյակ հազարավոր մենատնտես-գյուղացիներ: Նրանցից շատերը գյուղ վերադարձան որպես խոշոր սոցիալիստական տնտեսության համոզված կողմնակիցներ:

Կոլտնտեսությունների դեմ պայքարի ելավ գազանացած կուլակությունը: Մի շարք շրջաններում ծագեցին կուլակների ընդհատակյա հակահեղափոխական կազմակերպություններ: Նրանք կազմակերպում էին ապստամբություններ, հավաքում էին դեռևս քաղաքացիական պատերազմի ժամանակներից թաքցրած զենքը: Տեղ-տեղ կուլակներին հաջողվեց համախմբել բավականաչափ ուժեր: Հյուսիսային Կովկասում նրանց կազմակերպություններում 1929 թվականին կային շուրջ 4000 մարդ, իսկ 1930 թվականի գարնանը առաջացան նոր կազմակերպություններ, որոնց մեջ ներգրավված էին ավելի քան 5 հազար մարդ: Ստորին Վոլգայի մոտակայքում այդ ժամանակ հակահեղափոխական կազմակերպություններում հաշվվում էին շուրջ 3 հազար մասնակիցներ:

Գյուղացիությունը, զայրացած կուլակության գործողություններից, մի շարք շրջաններում իր նախաձեռնությամբ որոշումներ ընդունեց կուլակներին հողաբաժիններից զրկելու, նրանց արտադրության միջոցները բռնագրավելու և գյուղերից արտաքսելու մասին: Ահա մի բնորոշ որոշում, որն ընդունեցին Ստորին Վոլգայի երկրամասի գյուղերից մեկի կոլտնտեսականները. «Կուլակը՝ թեև խայթոցը հանված, զրկված արտադրության միջոցներից, բայց և այնպես մնում է կուլակ, դրա համար խնդրում ենք աքսորել նրանց, որպեսզի չքավորները և միջակները առանց կուլակության կողմից վրեժխնդրության երկյուղի կառուցեն կոլեկտիվ տնտեսությունը»:



## ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԿՈԼԵԿՏԻՎԱՑՄԱՆ ՍԿԻԶԲԸ

1929 թվականի երկրորդ կեսից գյուղը փոթորկվում էր, ինչպես հեղափոխության օրերին: Չքավորության ժողովներում, գյուղական ընդհանուր հավաքներում մի հարց էր դրված՝ կոլտնտեսությունների կազմակերպումը: 1929 թվականի հուլիսից մինչև հոկտեմբեր կոլտնտեսություններում ընդգրկվեցին համարյա նույնքան գյուղացիներ, որքան սովետական իշխանության ամբողջ 12-ամյա գոյության ընթացքում: Իսկ այդ թվականի վերջին երեք ամսում կոլտնտեսականների թիվը աճեց 2 անգամից ավելի: Դա, ինչպես ընդգծում էր կուսակցությունը, «կոլեկտիվացման մի չտեսնված տեմպ էր, որը գերազանցեց ամենալավատեսական նախատեսումները»: Հնգամյակի խնդիրները, որոնք դրանց հաստատման պահին բնութագրվում էին որպես լարված և բարդ, մի քանի ամիս անց բարձրացվեցին 2 անգամ:

Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովուրդը պատմության մեջ առաջին անգամ էր կառուցում սոցիալիզմ: Երբեմն հարկ էր լինում առաջ շարժվել, Լենինի արտահայտությամբ՝ «շոշափելով»: Ճիշտ, գիտականորեն հիմնավորված որոշումներ որոնելու պրոցեսում թույլ էին տրվում նաև սխալներ:

Դժվարություններն առավել սրությամբ արտահայտվեցին գյուղատնտեսության մեջ: Կիրառելով մասսայական կոլեկտիվացման կուրս, Կենտկոմի քաղբյուրոն, կոլտնտեսային շինարարության տեմպերի և նրան աջակցություն ցույց տալու միջոցառումների հարցն ուսումնասիրելու համար 1929 թվականի վերջում ստեղծեց մի հեղինակավոր հանձնաժողով, որի մեջ մտան Կենտկոմի անդամներ, կուսակցական, պետական և կոոպերատիվ օրգանների ղեկավար աշխատողներ: Այն գլխավորում էր ՍՍՀՄ-ի հողագործության ժողովրդական կոմիսար Յա. Ա. Յակովլևը:

Դեռևս հանձնաժողովի աշխատանքներն ավարտվելուց առաջ ագրարնիկ-մարքսիստների կոնֆերանսում 1929 թվականի դեկտեմբերի 27-ին ելույթ ունեցավ Ստալինը:

Նա հռչակեց անցումը կուլակության սահմանափակման քաղաքականությունից նրա, որպես դասակարգի, վերացման քաղաքականությանը՝ համատարած կոլեկտիվացման հիման վրա: Այդ լոզունգը կուլակության վերաբերյալ այն ցուցումների հետագա զարգացումն էր, որ տվել էր Կենտկոմի պլենումը 1929 թվականի նոյեմբերին (կոլտնտեսություններում կուլակների ընդունումն արգելելը, կապիտալիստական տարրերի դեմ հարձակումն ուժեղացնելու խնդիրները): Գյուղում նոր տնտեսական քաղաքականությանն անցնելը հասունացել էր: Տեղական որոշ կուսակցական աշխատողներ, որոնք տեսականորեն բավականաչափ պատրաստված չէին, այդ լոզունգն ընկալեցին որպես կոչ ամեն կերպ արագացնելու կոլեկտիվացումը բոլոր (այդ թվում վարչական) միջոցներով:

Քաղբյուրոյի՝ Յակովլևի գլխավորած հանձնաժողովի աշխատանքի արդյունքը հանդիսացավ Կենտկոմի 1930 թվականի հունվարի 5-ի «Կոլեկտիվացման տեմպերի և պետության կողմից կոլտնտեսային շինարարությանն օգնելու միջոցառումների մասին» որոշումը, որն ամրապնդեց գյուղում նոր դասակարգային քաղաքականության անցնելը: Բացի դրանից, այդ որոշումը կոլեկտիվ շինարարության տարբեր տեմպեր էր նշանակում երկրի տարբեր

շրջանների համար, ելնելով նրանից, թե այդ շրջանները որքանով էին պատ-
րաստ կոլեկտիվացման համար։

Առաջին խմբի մեջ մտնում էին այնպիսի կարևորագույն հացահատիկա-
յին շրջաններ, ինչպես՝ Հյուսիսային Կովկասը, Միջին և Ներքին Պովոլժիեն։
Որոշման մեջ մատնանշվում էր, որ այստեղ կոլեկտիվացումը «կարող է հիմ-
նականում ավարտվել 1930 թ. աշնանը կամ, համենայն դեպս, 1931 թ. գար-
նանը»։ Մյուս խմբում առանձնացվում էին մնացած հացահատիկային շըր-
ջանները։ Այստեղ կոլեկտիվացումը պետք է ավարտվեր երկրորդ հերթին (1931
թվականի գարնանը—1932 թվականի գարնանը)։

Դրա հետ միասին որոշման մեջ նաև մատնանշվում էր կոլեկտիվացումն
ավարտելու ժամկետը ամբողջությամբ վերցրած, այսինքն՝ շրջանների երկ-
րորդ խմբի համար։ Նկատի էր առնվում «հնգամյակի սահմաններում հացա-
հատիկի ցանքատարածության 20%-ի կոլեկտիվացման փոխարեն, որ նախա-
տեսված էր հնգամյա պլանով... լուծել գյուղացիական տնտեսությունների
հսկայական մեծամասնությունը կոլեկտիվացնելու խնդիրը»։ Կենտրոնական
կոմիտեն նաև գործարար միջոցներ մշակեց կոլտնտեսություններին կազմա-
կերպական օգնություն ցույց տալու և նրանց նյութապես խթանելու բնագա-
վառում։ Մասնավորապես, համարյա կրկնակի չափով ավելացվեցին կոլտնտե-
սային սեկտորին տրվող վարկերը և այլն։ Հունվարի 5-ի որոշումը, Կենտկոմի
նոյեմբերյան (1929 թվական) պլենումի որոշումների հետ միասին, դարձավ
գյուղատնտեսության համատարած կոլեկտիվացման կոնկրետ ծրագիր։ Այդ
որոշումը ավարտվում էր երկու ճակատով, առաջին՝ «տրակտորների և բարդ
մեքենաների պակասության պատճառով կոլեկտիվ շարժումը ետ պահելու
ամեն տեսակ փորձերի դեմ» և, երկրորդ՝ «կոլտնտեսային շարժումը վերևից
որևէ ձևով «դեկրետավորելու» տենդենցների դեմ պայքարելու անհրաժեշ-
տության նախազգուշացումով։

Կյանքը ցույց տվեց, որ երկու երկյուղն էլ հիմք ունեն։ 1929 թվականի
վերջում, 1930 թվականի սկզբում և ավելի ուշ կոլտնտեսային շինարարու-
թյան պրակտիկայում լուրջ շեղումներ էին թույլ տրվել կոոպերացման լենին-
յան սկզբունքներից։ Նախ և առաջ խախտվել էր կամավորության սկզբունքը։
Բացատրական աշխատանքը, համոզումը հաճախ էին նենգափոխվում վարչա-
րարությամբ։ Կոլտնտեսություն մտնելուց հրաժարվելու դեպքում կիրառվում
էին այնպիսի միջոցներ, ինչպես՝ մթերումների գծով կայուն առաջադրանքնե-
րի մեծացումն էր, միջակ տնտեսություններին կուլակային նորմաներով հար-
կադրելը, ընտրական իրավունքից զրկելը և այլն։

Շատ աշխատողներ, հաշվի չառնելով գյուղացիների ցանկությունը, հրա-
պուրվում էին կոմունաներ ստեղծելով, գյուղացիներին ստիպում էին հանրայ-
նացնել բոլոր անասունները, նույնիսկ թռչունները։

Նրջորեն խախտվում էր երկրի տարբեր շրջաններում գոյություն ունեցող
պայմանների զանազանությունը հաշվի առնելու սկզբունքը։ Ավելի պակաս
զարգացած ազգային շրջանները և ՌՍՖՍՀ մի շարք սպառող մարզեր, կոլ-
տնտեսային շինարարության տեմպերն ու ձևերը մշակելիս սկսեցին աչքի ա-
ռաջ ունենալ հացահատիկային շրջանները, որոնք ավելի էին նախապատ-
րաստված կոլեկտիվացման համար։

Այդ ամենը մեծ դժգոհություն առաջացրեց աշխատավոր գյուղացիու-



թյան մեջ։ Մի շարք տեղերում կուլակները ելույթներ էին հրահրում կոլտնտե-
սությունների դեմ։

Կոլտնտեսային շինարարության մեջ տեղի ունեցած սխալները բացա-
տրվում էին մի շարք պատճառներով. թե՛ փորձի բացակայությամբ, թե՛
մասսայական-բացատրական աշխատանքի թուլությամբ, թե՛ կոլեկտիվաց-
ման առաջին հաջողությունները լրջորեն գնահատելու անկարողությամբ, թե՛
միջազգային ու ներքին իրադրության բարդությամբ։

Խոտորումների մասին ազդանշաններ ստանալով, կուսակցության Կենտ-
կոմը վճռական միջոցների դիմեց։ 1930 թվականի մարտի 1-ին կառավարու-
թյունը հաստատեց Գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրու-
թյուն։ Հետևյալ օրն այն հրապարակվեց։

Միաժամանակ թերթում զետեղվեց Ի. Վ. Ստալինի «Գլխապտույտ՝ հաջո-
ղություններից» հոդվածը։ Այդ հոդվածում տրվում էր կոլտնտեսային շարժ-
ման բնագավառում ձեռք բերված հաջողությունների վերլուծությունը, բա-
ցատրվում էին դրանց աղբյուրները, ձևակերպվում էին կուսակցության խնդիր-
ները կոլտնտեսային շարժման մեջ այդ ժամանակաշրջանում հայտաբերված
վտանգավոր ու վնասակար տենդենցները վերացնելու ուղղությամբ։ Հոդվա-
ծում դատապարտվում էին կոլտնտեսություններ ստեղծելիս կամավորության
սկզբունքի խախտումները, վարչարարությունն ու դեկրետավորումը։ Սակայն
թույլ տրված սխալների օբյեկտիվ գնահատությունը չէր տրվում։ ՀամԿ(բ)Կ
Կենտկոմը մարտի 14-ին ընդունեց «Կոլտնտեսային շարժման մեջ կուսգծի
շեղումների դեմ պայքարի մասին» որոշումը, որը կտրականապես դատա-
պարտեց խոտորումները և կուսակցական կազմակերպություններին ցուցում
տվեց ուշադրությունը կենտրոնացնել կոլտնտեսությունների կազմակերպական-
տնտեսական ամրապնդման վրա։ Կուսակցության ձեռք առած վճռական մի-
ջոցների հիման վրա սկսվեց խոտորումների շտկումը կոլտնտեսային շարժ-
ման մեջ։ Դա բարդ պրոցես էր։ Խոտորումները դատապարտվելուց հետո կոլ-
տնտեսություններից դուրս եկան գյուղացիների երկու երրորդը, գերազանցա-
պես միջակները։ Արհեստականորեն ստեղծված կոմունաներից ու արտելներից
միջակների դուրս գալը, շատ կոլեկտիվ տնտեսությունների քայքայումը օգ-
տագործեց կուլակությունը, որը մի ամբողջ շարք բացահայտ հակակոլտըն-
տեսային ելույթներ հրահրեց։ Սակայն ՀամԿ(բ)Կ Կենտկոմի և տեղական կու-
սակցական կազմակերպությունների համատեղ ջանքերով դրությունը ուղղվեց։
Կոլտնտեսություններին ու կոլտնտեսականներին ամեն տեսակ օգնություն
էր ցույց տրվում։ Մի շարք որոշումներ ընդունվեցին նրանց զանազան ար-
տոնություններ տալու մասին։

Կոլտնտեսություններից հեռանալը ստրիճանաբար դադարեց։ Շուտով նո-
րից սկսվեց կոլտնտեսային շարժման վերելքը։ Երիտասարդ կոլտնտեսություն-
ները հաջողությամբ հաղթահարում էին դժվարությունները, գարնանացանը
կատարեցին, վատ բերք չստացան (ավելի բարձր, քան նախատեսել էր Կենտ-
կոմի նոյեմբերյան պլենումը 1929 թվականին), իսկ աշնանը եկամուտների
բաշխում կատարեցին։

Մասսայական կոլեկտիվացման հիման վրա մեր երկրում վերացվեց վեր-
ջին շահագործողական դասակարգը՝ կուլակությունը։ Կուսակցության Կենտ-
կոմը 1930 թվականի հունվարի 30-ի իր «Համատարած կոլեկտիվացման շըր-

ջաններում կուլակային տնտեսությունների վերացման միջոցառումների մասին» որոշման մեջ մանրամասն ցուցումներ տվեց այդ հարցի շուրջ։ Կենտրոնական կոմիտեն ելնում էր կուլակության տարբեր խավերի նկատմամբ դիֆերենցված վերաբերմունք ցույց տալու գաղափարից։ Տեռորիստական ակտերի նախաձեռնողներն ու կատարողները մեկուսացվում և հատուկ ճամբարներ էին ուղարկվում։ Ավելի պակաս ակտիվ դիմադրություն ցույց տված կուլակներն արտաքսվում էին երկրի հեռավոր շրջանները։

Սովետական պետությունը որոշակի միջոցառումներ ընդունեց նոր վայրերում նախկին կուլակներին աշխատանքի տեղավորելու և նրանց աշխատանքային դաստիարակության ուղղությամբ։ Մնացած կուլակները մնացին նախկին վայրերում, բայց նրանց համար հողամասեր էին առանձնացվում կոլտնտեսային հողատարածությունների սահմաններից դուրս։ Նրանց մեծամասնությունը, որպես կանոն, շուտով աշխատանքի գնաց քաղաքները, տեղավորվեց սովխոզներում և այլն։ Այդպես վերացվեց ամենաբազմամարդ շահագործողական դասակարգը մեր երկրում։

**ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ**

Կուսակցության աշխատանքը որոշվում էր իր առաջադրած՝ ամբողջ ճակատով սոցիալիզմի հարձակման լոզունգով։ Այդ լոզունգը տվեց ՀամԿ(բ)Կ XVI համագումարը, որը տեղի ունեցավ 1930 թվականի հունիսի 26-ից մինչև հուլիսի 13-ը։

Բնութագրելով կուսակցության հաջողությունները, կուսակցություն, որն այն ժամանակ ուներ 1260 հազար անդամ և համարյա 712 հազար թեկնածու, Մ. Ի. Կալինինն ասաց՝

— Մեր երկրում սոցիալիստական շինարարությունը հսկայական չափեր է ընդունել, բայց վիթխարի մեծություններին ու տեմպերին մենք ընտելացել ենք... Բոլորովին վերջերս մենք հրճվում էինք Վոլխովշինով, իսկ այժմ մեզ արդեն չի զարմացնում Դնեպրոշինը։ Երեկ մենք տոնեցինք Թուրքսիբի և Տրակտորշինի բացումը, իսկ այսօր մի ինչ-որ բոլորովին նորմալ ձևով մենք ընդունում ենք կոմբայնների գործարանների և Մագնիտագորսկի, Կուզնեցկի ու այլ գիգանտների շինարարության սկիզբը։ Հետագայում, հավանորեն, մենք կընդունենք պատշաճ ձևով և՛ Անգարայի շինարարությունը, և՛ Վոլգայի շինարարությունը, և՛ Ուրալ-Սիբիրյան կոմբինատը, և՛ ամբողջ Սովետական Միության գյուղատնտեսության համատարած կոլեկտիվացումը։ Դրանում, ընկերներ, արտահայտվում է սոցիալիզմի լիակատար հաղթանակի անսասան հավատը։

Համագումարը լսեց ղեկավար օրգանների՝ Կենտկոմի (զեկուցողներ՝ Ստալին և Կագանովիչ), Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի (Վլադիմիրսկի), ԿՎՀ-ի (Օրջոնիկիձե), հաշվետվությունները, Կոմինտերնի գործկոմում ՀամԿ(բ)Կ-ի պատվիրակության աշխատանքի մասին զեկուցումը (Մոլոտով)։ Պատգամավորները հսկայական հետաքրքրությամբ քննարկեցին «արդյունաբերության հնգամյա պլանի կատարման մասին» (Կույբիշև), «Կոլտնտեսային շարժումը և գյուղատնտեսության վերելքը» (Յակովլև), «Վերակառուցման շրջանում արհմիությունների խնդիրների մասին» (Շվերնիկ) զեկուցումները, որոնք նվիրված էին առաջին հնգամյակի կատարման տարբեր կողմերին։

Համագումարն անհրաժեշտ համարեց ճշգրտել հնգամյա պլանը։ Այդ



բխում էր հնգամյակը չորս տարում կատարելու համաժողովրդական շարժումից։ Հնգամյակի առաջին երկու տարիների ծրագիրը տնտեսության մի շարք առաջատար ճյուղերում գերակատարվեց։ ՍՍՀՄ-ն արդյունաբերության զարգացման տեմպերով հնգամյակի հենց առաջին տարիներին անցավ կապիտալիստական երկրներից։ Բայց բանը միայն դրանում չէր։ Սովետական արդյունաբերությունը փոխվեց նաև որակապես. կատարվում էր նոր ձեռնարկությունների մասսայական շինարարություն և հին ձեռնարկությունների վերասարքավորում այնպիսի նորագույն տեխնիկայի հիման վրա, որը նույնիսկ մի քանի առաջավոր կապիտալիստական երկրներում կար ոչ բոլորովին ամենուրեք։ «Մենք հասնում ենք՝ առաջ անցնելով»,— պատկերավոր կերպով ասաց համագումարում սոցիալիստական պլանավորման նախաձեռնողներից մեկը՝ Գ. Մ. Կրժիժանովսկին։

Հատկապես արագ էին զարգանում ծանր արդյունաբերության այնպիսի ճյուղեր, ինչպես՝ մեքենաշինությունը, վառելանյութի արդյունաբերությունը։ Համագումարի որոշման համաձայն այդ ճյուղերի նախնական պլանային նախատեսումները էականորեն ավելացվեցին։

Հսկայական նշանակություն ունեցավ կուսակցության որոշումը՝ բացի հարավի ածխա-մետալուրգիական բազայից (Դոնբաս—Կրիվոյ-Ռոգ), երկրի արևելքում երկրորդ այդպիսի կենտրոնի՝ Ուրալ—Կուզբասի, ստեղծման մասին։

Ինդուստրացման կարևոր արդյունքը հանդիսացավ բանվոր դասակարգի շարքերի աճը։ Բարձրացավ նրա քաղաքական ակտիվությունը, նրա կուլտուր-տեխնիկական մակարդակը։ Արդյունաբերության արագ զարգացման հիման վրա 1930 թվականին վերջնականապես և ընդմիշտ վերացվեց գործազրկությունը։

Ինդուստրացման համար պայքարի հիմնական արդյունքը արդյունաբերության տեսակարար կշռի փոփոխությունն էր ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ։ 1929/30 թվականին մեր երկրի պատմության մեջ առաջին անգամ արդյունաբերական արտադրանքի բաժինը էկոնոմիկայում գերակշռեց գյուղատնտեսության բաժինը (53 տոկոս՝ 47 տոկոսի դիմաց)։ Բնորոշ է, որ բուն իսկ արդյունաբերության մեջ ևս փոփոխվեց հարաբերակցությունը արտադրության միջոցների արտադրության և սպառման առարկաների արտադրության միջև։ Եթե առաջ թեթև արդյունաբերությունը ավելի շատ արտադրանք էր տալիս, քան ծանր արդյունաբերությունը, ապա 1930 թվականին նրանք արժեքային արտահայտությամբ տվին հավասար արտադրանք, իսկ այնուհետև ծանր ինդուստրիան ետ թողեց թեթև արդյունաբերությանը։ Այսպիսով, սովետական երկիրը ագրարայինից դարձավ ինդուստրիալ երկիր։

Էկոնոմիկայում կատարված այդ տեղաշարժերը ունեին ոչ միայն տեխնիկական, այլև հասարակական նշանակություն. արդյունաբերության աճը փոփոխման ենթարկեց տնտեսական կացութաձևերի հարաբերակցությունը հօգուտ սոցիալիզմի, հօգուտ նրա դիրքերի ուժեղացման։ Դրանով իսկ բազա ստեղծվեց ՍՍՀՄ-ում կապիտալիզմի վերջին մնացորդներն արմատախիլ անելու համար։

Անդրադառնալով գյուղատնտեսության կոլեկտիվացման պրոբլեմին, համագումարն ընդգծեց, որ այն իրենից ներկայացնում է «բանվոր դասակարգի գրոհը մեր երկրում կապիտալիստական շահագործման վերջին պատ-

վարի վրա»: Հողագործության ժողկոմ Յակովլևի զեկուցման մեջ նշվում էր, որ հնգամյա պլանով նախատեսված մակարդակը գերազանցված է: Գյուղատնտեսության ճակատագիրն սկսեցին որոշել արդեն ոչ թե անհատական տնտեսությունները, այլ կոլտնտեսություններն ու սովխոզները:

Կուսակցության XVI համագումարը նշեց, որ երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման հաջողությունների շնորհիվ սոցիալիզմը ավելի ու ավելի է նեղում կապիտալիստական կացութաձևը: Սովետական ժողովուրդը կանգնած է սոցիալիստական հասարակության շինարարության վճռական հաղթանակների շեմին:

Կուսակցությունն իր XVI համագումարում նոր ձևով էր դնում գյուղում սովետական իշխանության հենարանի հարցը: Մինչև համատարած կոլեկտիվացումը սովետական իշխանությունը հենվում էր չքավորության վրա: Միջակը չքավորության դաշնակիցն էր կուլակի դեմ մղվող պայքարում, բայց նա երբեմն տատանումներ էր դրսևորում: Այժմ համատարած կոլեկտիվացման շրջաններում ամբողջ կոլտնտեսային գյուղացիությունը դարձել է սովետական իշխանության իսկական և ամուր հենարանը:

Հանրագումարներն ամփոփելով, համագումարն ընդգծեց, որ «կուսակցությունը հաջողություններ է ձեռք բերել այն դժվարությունների հաղթահարման համար մղվող պայքարում, որ կանգնած էին սոցիալիստական շինարարության ճանապարհին: Այդ դժվարությունները, ի տարբերություն կապիտալիստական երկրների, աճման դժվարություններ էին, այլ ոչ թե անկման… Իրականացվում է «Նէպական Ռուսաստանը» «Սոցիալիստական Ռուսաստան» դարձնելու Լենինի առաջադրանքը:

Երկիրն արագությամբ փոխվում էր: Առանձնապես մեծ էր սոցիալիստական վերափոխությունների թափը. տեղի էր ունենում բանվոր դասակարգի քանակական և որակական աճ, միլիոնավոր գյուղացիներ կոլտնտեսություններ էին մտնում և այլն: Զարգանում էր արտադրությունը: Ստեղծվեցին արդյունաբերության նոր՝ ավտոմոբիլային, հաստոցաշինական ճյուղեր, ժամանակակից քիմիական արդյունաբերություն, ավիացիոն արդյունաբերություն, շարք մտան տրակտորներ և ժամանակակից գյուղատնտեսական մեքենաներ արտադրող խոշոր գործարաններ: Արևելքում հաջողությամբ ստեղծվում էր ածխա-մետալուրգիական բազա, Միջին Ասիայում և Հարավային Սիբիրում երևան եկան տեքստիլ արդյունաբերության նոր կենտրոններ: 1931 թվականին հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարեցին մեքենաշինությունը, էլեկտրատեխնիկական, նավթի արդյունաբերությունը: Հնգամյակի ընթացքում ընդամենը կառուցվեցին ավելի քան 1,5 հազար արդյունաբերական ձեռնարկություն, ինչը զգալիորեն գերազանցեց պլանային առաջադրանքները: Արդյունաբերական արտադրանքը (գլխավորապես արտադրության միջոցները) սկսեց վճռական դեր խաղալ ամբողջ էկոնոմիկայում: Գյուղատնտեսության արտադրանքի տեսակարար կշիռը 1932 թվականին 30 տոկոսից էլ պակաս էր: Հետևապես, երկիրը ագրարայինից դարձավ ինդուստրիալ: Ընդորում ամբողջ արդյունաբերությունը սոցիալիստական էր:

Այդ հաղթանակները հեշտությամբ չէին ձեռք բերվում: Պլանով նախատեսված ոչ բոլոր համամասնություններն էին հաջողությամբ տրված. պլանն ամեն ինչում չէր կատարյալ, և հենց կյանքն էլ ուղղումներ մտցրեց: Լուրջ



կերպով ետ էին մնում մետալուրգիան, քիմիան, ածխարդյունաբերությունը: Բավականաչափ զարգացած չէր թեթև արդյունաբերությունը: Անբավարար էին նաև արտադրության որակական ցուցանիշները՝ ինքնարժեքը, աշխատանքի արտադրողականությունը: Գյուղատնտեսական արտադրությունում իջան բերքատվությունը, անասունների գլխաքանակը:

Սակայն պլանի հիմնական խնդիրները կատարվեցին: Արդյունաբերության զարգացման բարձր տեմպերը պայմաններ ստեղծեցին ամբողջ ժողովրդական տնտեսությունը տեխնիկապես վերակառուցելու համար:

1931 թվականին երկրի հիմնական հացահատիկային շրջաններում՝ Հյուսիսային Կովկասում, Ներքին և Միջին Պովոլժիեում, տափաստանային և ձախափնյա Ուկրաինայում կոլտնտեսություններ մտան գյուղացիական տնտեսությունների մինչև 70—90 և ավելի տոկոսը: Այստեղ ավարտվեց գյուղացիական հիմնական զանգվածների անցումը կոլեկտիվ արտադրության, ավարտվեց, հետևապես, մասսայական կոլեկտիվացումը: Դրանով իսկ վճռական քայլ կատարվեց երկրի բոլոր շրջաններում գյուղատնտեսության կոլեկտիվացումն ավարտելու ուղղությամբ:

1932 թվականի աշնանը ամբողջությամբ վերցրած ՍՍՀՄ-ում կոլտնտեսություններում ընդգրկված էր գյուղացիական ծխերի 61,5 տոկոսը: Դա նշանակում էր, որ առաջին հնգամյակի վերջում կոլտնտեսային կարգը վճռական հաղթանակ տարավ մանր ապրանքային տնտեսության նկատմամբ: Կոլեկտիվացումը գյուղն ազատեց կուլակային ստրկությունից և դասակարգային շերտավորումից: Գյուղացիների մեծամասնության անցումը խոշոր սոցիալիստական տնտեսության, նշանակում էր հեղափոխություն տնտեսական հարաբերություններում, գյուղացիական կյանքի դարերով կազմավորված կացութաձևում:

Այսպիսով, սոցիալիզմի կառուցվող շենքի տնտեսական հիմք դարձան սոցիալիստական ինդուստրիան և սոցիալիստական գյուղատնտեսությունը:

Առաջին հնգամյակի հիմնական քաղաքական ու տեխնիկական առաջադրանքները կատարվեցին ժամկետից շուտ: XVII Համամիութենական կուսակցության կոնֆերանսը (1932 թվականի հունվար-փետրվար) լիակատար հիմունքով մատնանշեց այդ հանգամանքը երկրորդ հնգամյա պլան կազմելու առթիվ դիրեկտիվների վերաբերյալ բանաձևում: Կոնֆերանսն ընդգծեց, որ ՍՍՀՄ-ում սոցիալիզմի հիմքի կառուցումը «նշանակում է, որ լենինյան «ով՝ ում» հարցը ընդդեմ կապիտալիզմի և հօգուտ սոցիալիզմի, լիովին և անվերադարձ կերպով վճռված է թե՛ քաղաքում, թե՛ գյուղում»: Դա կուսակցության և սովետական ժողովրդի մեծ հաղթանակն էր:

ՍՍՀՄ փորձը ցույց տվեց, որ սոցիալիստական վերափոխությունների խորությունն ու կայունությունը զգալի չափով որոշվում են լենինյան գաղափարներն ու սկզբունքները կյանքում ստեղծագործաբար արմատավորելու աստիճանով: «Մեր երկրում սոցիալիզմի աչքի ընկնող հաղթանակները ինքնահոսով չեն եկել: Նրանք ձեռք են բերվել կուսակցության և նրա տեղական կազմակերպությունների վիթխարի կազմակերպական և դաստիարակչական աշխատանքի շնորհիվ, այն բանի շնորհիվ, որ կուսակցությունը իր կադրերին և բոլոր կոմունիստներին մշտապես դաստիարակել է մարքսիզմ-լենինիզմին

հավատարմության ոգով, կոմունիզմի գործին նվիրվածության ոգով» (ՍՄԿԿ-ն... բանաձևերում, մաս IV, էջ 233)։

Սովետական ժողովուրդը փոխեց ոչ միայն իր լայնածավալ երկրի էկոնոմիկան, այլև նրա աշխարհագրությունը և նույնիսկ բնությունը. շրջեց գետերի հոսանքը, ճանապարհներ հատեց լեռների միջով, հնազանդեցրեց անապատներ։ Այդ վիթխարի կառուցման ընթացքում փոխվեցին նաև մարդիկ՝ սոցիալիզմի ակտիվ շինարարները։

Այդ ամբողջ ստեղծագործական պրոցեսի սկզբունքային նշանակությունն այն էր, որ պատմության մեջ առաջին անգամ մի վիթխարի երկիր բարձրացրեց սոցիալիստական հասարակության շենքը։ Եթե Մարքսն ու Էնգելսը սոցիալիզմը ուտոպիայից դարձրին գիտություն, ապա լենինյան կուսակցությունը այդ գիտությունը արմատավորեց պրակտիկայում, ցույց տվեց բուրժուական պրոպագանդայի սուտը, մի պրոպագանդա, որը մարքսիզմ-լենինիզմը ֆանտազիա է հայտարարում։

Նոր տնտեսական քաղաքականության պայմաններում կարճ ժամանակում վերականգնվեց արտադրության նախապատերազմյան մակարդակը, և ծավալվեց նոր վիթխարի շինարարություն։ Արմատապես փոխվեցին երկրի դեմքը և նրա կյանքի տեմպը։

Սովետական պետության տերիտորիան դարձավ մի վիթխարի շինարարական հրապարակ։ Խուլ տայգայում, անապատում երևան եկան նոր ավաններ, քաղաքներ, աճեցին ինդուստրիալ կենտրոններ։ ՍՍՀՄ քարտեզները հնանում էին հենց տպագրատանը։ Իսկ երկրաբան-հետախույզներն ավելի էին հեռանում դեպի արևելք, դեպի հյուսիս, հոգատարությամբ հայտաբերելով բնության գանձարանում կուտակված վիթխարի հարստությունները։

Հետախույզների հետևից շարժվում էր շինարարների բանակը։ Առաջին հորատանցողների բացած ճանապարհները դառնում էին երկաթուղիներ, վրանների տեղերում առաջանում էին քաղաքներ. այնտեղ, ուր նորերս բոցկլտում էին երկրաբանների հազվադեպ խարույկները, վառվում էին դոմնային վառարանների կրակները։ Երիտասարդացան նաև հին քաղաքները, իրենց դանգվածի մեջ առնելով նոր շենքեր, փողոցներ, շրջաններ։

Վճռականապես փոխվում էր սովետական գյուղը։ Դաշտերում չքացան գյուղացիական նեղլիկ հողաշերտերն անջատող սահմանագծերը։ Գյուղատնտեսական արտադրության մեջ ավելի ու ավելի շատ էին գործադրվում տրակտորներ, կոմբայններ, ավտոմեքենաներ, էլեկտրամոտորներ։ Տափաստանային հարթություններում այժմ կողմնորոշիչների դեր էին կատարում ոչ միայն գյուղական եկեղեցիների գմբեթներն և հողմաշարժիչները, այլև կոլտնտեսային ու սովխոզային սիլոսի աշտարակները, պետական էլեկտրաղացները, գյուղական էլեկտրակայանները։ «Ռուսաստանն արագությամբ է անցնում փայտի դարից երկաթի, պողպատի, բետոնի և մոտորների դարին»,—1932 թվականի նոյեմբերին խոստովանում էր ամերիկյան «Նեյշըն» ժուռնալը։

Սոցիալիզմի տնտեսական հիմքի ստեղծումը, ամենից առաջ երկրի ինդուստրացումն ու գյուղատնտեսության վերակառուցումը սովետական հասարակության զարգացման գլխավոր հանրագումարն էին 20-ական թվականներին և 30-ական թվականների սկզբին։

Սոցիալիզմի հիմքի ստեղծումը միջազգային մեծ նշանակություն ուներ,



որովհետև ՍՍՀՄ-ը հանդիսանում է համաշխարհային հեղափոխական շարժման օջախը։ Այդ բանը հիանալի գիտեին թե՛ արտասահմանի առաջավոր բանվորները, թե՛ կապիտալիստները։ 1930 թվականի նոյեմբերին «Պրավդա»-ն Ֆրանսիայից, մի պրոլետար-մետաղագործից նամակ ստացավ։ Նա գրում էր՝ «Հիշեցեք, ընկերնե՛ր, որ ձեր հաստոցների աշխատանքը բուրժուազիային ավելի է վախեցնում, քան հրետանային թնդանոթաձգությունը, և ձեր սոցիալիստական արդյունաբերության է՛լ ավելի ամրապնդումն ու ընդլայնումը թշնամու մեքենայությունների լավագույն պատասխանն են»։

Իմպերիալիզմը չէր հրաժարվել սովետական պետությանը վերջ տալու փորձերից։ Հենց այդ պատճառով էլ սովետական ժողովուրդը հարկադրված էր զգալի ջանքեր ու միջոցներ ծախսել իր պաշտպանունակությունն ամրապնդելու համար։ Պաշտպանության վրա կատարվող մեծ ծախքերը լուրջ խոչընդոտ էին սոցիալիզմի կառուցման ճանապարհին։ Դա իր ազդեցությունն ունեցավ հնգամյա պլանի կատարման ընթացքի վրա, ետ էր պահում առանձին տնտեսությունների զարգացումը։ Սակայն այդ կարգի դժվարություններն ու զոհողությունները անխուսափելի էին առաջին սոցիալիստական երկրի համար։ Եվ կատարված զոհողություններն իզուր չանցան։ Կուսակցությունն ու ժողովուրդը երբեմնի հետամնաց Ռուսաստանը դարձրին զարգացած երկիր, որն իր ինդուստրիալ հզորությամբ երկրորդ տեղությունն է աշխարհում։

## ՀԱՐՑԵՐ ԶՐՈՒՅՑԻ ՀԱՄԱՐ

1. ՀամԿ(բ)Կ XIV համագումարը։ Կուսակցության կուրսը սոցիալիստական ինդուստրացման հարցում։
2. ՀամԿ(բ)Կ XV համագումարը։ Կուսակցության կուրսը գյուղատնտեսության կոլեկտիվացման հարցում։
3. Կուսակցության պայքարը առաջին հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար։
4. Կուսակցության կազմակերպական ու քաղաքական աշխատանքը սոցիալիզմի ծավալուն շինարարությունն ապահովելու ուղղությամբ։



Պատվեր 2664 Տիրաժ 9710

Հանձնված է արտադրության 3/X 1966 թ.:
Ստորագրված է տպագրության 29/X 1966 թ.:
Թուղթ՝ 70×108 1/16: Տպագր. 1,9 մամ., հեղ. 1,3 մամ.:

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51:

ստացվող նամակներին և դիմումներին ընթացք տալու հաստատուն «տեխնոլոգիա»:

Ստացված նամակների գրեթե 40 տոկոսին շրջկոմի առաջին քարտուղարն է ընթացք տալիս: Աշխատանքային, բնակարանային, կենցաղային, ղեկավար-աշխատողի վարքի և այլ կարևոր հարցեր կամ կուսկազմակերպությունների որոշումների դեմ բողոքներ պարունակող նամակներն ու դիմումները քննարկելիս, առաջին քարտուղարը շրջկոմ է հրավիրում համապատասխան հիմնարկ-ձեռնարկության ղեկավարներին և արծարծված խնդիրները լուծում նրանց հետ:

Աշխատավորների գանգատներին և նամակներին լուրջ վերաբերմունք են ցուցաբերում նաև շրջկոմի բաժինների աշխատողները: Կազմակերպչական բաժինը անցած 8 ամսում ստացել է 86, արդյունաբերությանն ու տրանսպորտինը՝ 43, իսկ ագիտացիայինն ու պրոպագանդայինը՝ 10 նամակ ու դիմում: Հիմնականում, բողոքներին ընթացք է տրվել, և առաջ քաշված հարցերը լուծվել են ճիշտ ու ժամանակին:

Դիմումներն ու նամակները ուսումնասիրվում են ո՛չ միայն շրջկոմի ապարատի աշխատողների, այլև շրջկոմի անդամների, կուսակցական ձեռներեց ակտիվիստների ուժերով: Հանձնարարություն տալիս, անշուշտ, հաշվի են առնվում ստուգողի մասնագիտությունն ու կարողությունները, նամակում բարձրացված հարցի բնույթն ու ծավալը:

Արդեն երկրորդ տարին է, ինչ շրջկոմը լուրջ հարցեր բարձրացնող դիմումներն ու նամակները դնում է կոլեկտիվ քննարկման:

Ահա մի օրինակ. № 6 բաղնիքի մի շարք աշխատակիցներ գրավոր բողոք էին գրել շրջկոմ, իրենց դիրեկտոր Վ. Մարգարյանի մասին: Հարցի նախնական ուսումնասիրման ժամանակ ընկ. Վ. Մարգարյանը փորձեց համոզել, որ դիմումը զրպարտություն է, որ ինքը ոչ մի անօրինականություն թույլ չի տվել, որ այն գրվել է մի փոքր խմբի կողմից, որ բաղնիքի հիմնական կոլեկտիվը իրեն սիրում ու հարգում է և այլն, և այլն: Շրջկոմի անդամ ընկ. Ռ. Կոստանյանը, որին հանձնարարված էր ստուգումը, տեղում հանգամանորեն ծանոթացավ գործին, ապա ստուգման արդյունքները քննարկվեցին բաղնիքի կուսակցական կազմակերպության ընդհանուր ժողովում: Այստեղ ո՛չ միայն հաստատվեցին նամակում բերված փաստերը, այլև լրացուցիչ փաստեր և օրինակներ բերվեցին բաղնիքի դիրեկտորի վարքագծի մասին: Պարզվեց, որ ընկ. Վ. Մարգարյանը իր թափթփվածությամբ և անկազմակերպվածությամբ փաստորեն ձախողել է բաղնիքի աշխատանքները: Այն չի կատարում պետական պլանը, իսկ դիրեկտորը ոչ միայն չի պայքարել վատնումների, շռայլումների ու խախտումների դեմ, այլև երբեմն ինքն է առիթ տվել դրանց: Կուսկազմակերպության ժողովը միաձայն որոշում ընդունեց՝ հարց հարուցել ՀԿԿ Լենինյան շրջկոմի առաջ՝ աշխատանքները ձախողելու համար Վ. Մարգարյանին ազատելու բաղնիքի դիրեկտորի պարտականություններից: Կուսշրջկոմի բյուրոն հաստատեց բաղնիքի սկզբնական կուսկազմակերպության որոշումը, միաժամանակ Վ. Մարգարյանին ենթարկեց կուսակցական խիստ տույժի:

Բայց այսպես չեն բոլոր նամակները: Պատահում են նաև այնպիսիները, որոնցում մեկ-երկու ճիշտ փաստերի կողքին կան նաև իրականությանը չհամապատասխանող բազմաթիվ փաստեր: Դեռ անցյալ տարվա սկզբին № 98 դպրոցի կոլեկտիվի անունից բազմաթիվ անստորագիր դիմումներ էին ստացվում նույն դպրոցի դիրեկցիայի վատ աշխատանքի, դպրոցում տիրող անկարգությունների, ֆինանսական կարգապահության կոպիտ խախտումների, ինչպես նաև կուսակցական կարգապահության բացակայության մասին: Ինչպես շրջկոմը, այնպես էլ ՀԿԿ Երքաղկոմը, քաղաքային և շրջանային ժողկրթբաժինները, շրջսովետը և համապատասխան վարչական օրգանները ամիսներ շարունակ զբաղվեցին նման դիմումների ստուգմամբ:

Ստուգումից պարզվեց, որ անստորագիր նամակների հեղինակը նույն դպրոցի քիմիայի դասատու, ՍՄԿԿ անդամ Ա. Ե. Ջանելյանն է:

Դպրոցի սկզբնական կուսկազմակերպության ընդհանուր ժողովը քննեց դիմումների ստուգման արդյունքները և որոշեց. «Դպրոցի ղեկավարության հասցեին չհիմնավորված և զրպարտչական նամակներ գրելու, իր վարքագծով կոլեկտիվում վատառողջ մթնոլորտ ստեղծելու, հարբած վիճակում դպրոց ներկայանալու և կուսակցական անդամավճարը սխալ (աշխատավարձի ոչ լրիվ գումարից) մուծելու, դպրոցի ռադիոընդունիչը յուրացնելու համար Ա. Ե. Ջանելյանին վտարել ՍՄԿԿ շարքերից: Շրջկոմի բյուրոն հաստատեց սկզբնական կուսկազմակերպության ժողովի որոշումը և հարց հարուցեց ՀՍՍՀ լուսավորության մինիստրության առջև նրան զրկելու նաև ուսուցչական ասպարեզում աշխատելու իրավունքից: Սակայն ՀԿԿ Երքաղկոմի բյուրոն, հաշվի առնելով Ա. Ե. Ջանելյանի խնդրանքներն ու սխալը զգացած մարդու խոստումները, որոշեց վերջինիս թողնել ՍՄԿԿ շարքերում ու կոլեկտիվում, հնարավորություն տալ նրան ուղղվելու և արդարացնելու իրեն:

Ցավով պետք է ասել, որ շրջկոմն ավելի շատ դիմումներ և բողոքներ է ստանում մանկավար-

# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 50-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

ԳԵՂԱՄ ՍԵՎԱՆ

## ՀՈԿՏԵՄԲԵՐԸ ԵՎ ՍՓՅՈՒՌՔԱՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

(ՀԱՄԱՌՈՏ ԱԿՆԱՐԿ)

Ռուսական հեղափոխությունը նոր հասարակական հարաբերությունների ստեղծման արշալույսն է։

ԿԼԱՐԱ ՑԵՏԿԻՆ

Հոկտեմբերյան հեղափոխությունը սոսկ տնտեսական ու հասարակական հարաբերությունների բնագավառներում տեղի ունեցող հեղափոխություն չէր, այլ, միաժամանակ, և գլխավորապես՝ հեղափոխություն էր նաև ողջ կուլտուրայի ու գաղափարական ոլորտներում։

Այն դարձավ նաև հայ ժողովրդի վերածնության սկիզբը։ 1920 թվականի նոյեմբերի 29-ը հայ ժողովրդի համար պատմական անհրաժեշտություն լինելուց բացի, բնական ու տրամաբանական շարունակությունն էր Հոկտեմբերյան հեղափոխության։ Նոյեմբերով հայ ժողովուրդը վերագտավ դարեր ի վեր կորցրած իր պետականությունը։

Միայն նման պետականություն, լավագույն հեռանկարներ ունեցող հայրենիքը՝ Սովետական Հայաստանն էր, որ սփյուռքում ցրված հարյուր հազարավոր հայերի համար պիտի կարողանար դառնալ գոտեպնդիչ ուժ՝ իր հետագա հայրենասիրական պայքարում։

Սփյուռքահայ աշխատավորությունն ու առաջավոր մտավորականությունը հայ ժողովրդի կենսական հարցերի լուծումը կապեցին միջազգային հեղափոխության հետ և անվարան հանդես եկան երկրի առաջավոր ուժերի կողքին, պայքարեցին հանուն իրենց ապրած երկրների ժողովուրդների ազգային անկախության, հանուն խաղաղության, ընդդեմ պատերազմի հրձիգների և նրանց ռազմամոլ ծրագրերի, քայլեցին այդ ուղիով, այն համարելով հայրենասիրության, Սովետական Հայաստանի հետ կապող մայր երակը։

Այդ իմաստով ուշագրավ է դեռևս 1919 թվականին, Կոմինտերնի առաջին կոնգրեսից հետո, Պլովդիվ քաղաքում հրապարակված սփյուռքահայ (բուլղարահայ) կոմունիստների առաջին կոչը, ուր միջազգային բոլոր կնճռոտ հարցերի, ազգային ու միջազգային խաղաղության պրոբլեմների լուծումը կապվում է հեղափոխական սոցիալիզմի հաղթանակի հետ։ Ազգային հարցում կոչի հեղինակները հանգել են միակ ճիշտ եզրակացության՝ հայ ժողովրդի ազատագրումը տեսնելով միայն «հայ սոցիալիստական խորհրդային հանրապետության շրջանակի մեջ»։ Մի տարի անց, 1920 թվականի հուլիսի 15-ին, Պլովդիվ քաղաքում լույս տեսավ «Կարմիր լուրեր» թերթը, որն արտահայտում էր ժողովրդական լայն



զանգվածների սերը ռուս ժողովրդի հանդեպ և հայ ժողովրդի ազատությունը կրկին կապում էր Հայաստանի աշխատավորության ստեղծելիք պրոլետարական դիկտատուրայի հետ։ «Միայն այն ատեն կունենա հայ ժողովուրդն իր իսկական ազատությունը»—եզրակացնում էր «Կարմիր լուրերը»։

Սփյուռքահայ այլ գաղութներում ևս հիմնադրվում էին մամուլի օրգաններ, որոնք նույնպես հայ ժողովրդի ապահով ապագան տեսնում էին ռուս ժողովրդի հետ անխախտ բարեկամության և սովետական իշխանության մեջ։

1921 թվականից հետո, գրեթե մի հնգամյակի ընթացքում, սովետական քաղաքականության դիրքերում կանգնեցին սփյուռքահայ մտավորականության ականավոր մշակներ՝ Զապել Եսայանը, Վ .Թոթովենցը, Ե. Օտյանը, Ա. Չոպանյանը, Լ. Բաշալյանը, Վ. Մալեզյանը, Տ. Կամսարականը, Ռ. Որբերյանը, Անայիսը և Վ. Թեքեյանը. նրանցից շատերի համակրանքն ու սերը վաղուց արդեն շահագործվող զանգվածների ու հեղափոխության կողմն էր։ Ինչ խոսք, որ նրանք բոլորն էլ մեծ դեր խաղացին սփյուռքահայ մտավորականության առաջին սերընդի գաղափարական կազմավորման գործում։ Կարևոր փաստաթուղթ է 1926 թվականի փետրվարին Փարիզի «Ապագա» թերթում, ապա սփյուռքի բազմաթիվ այլ թերթերում մի շարք անվանի գրողների հրապարակած համատեղ հայտարարությունը. ընդվզելով նույն թվականի սկզբին Մարսել քաղաքում Ավետիք Ահարոնյանի՝ հայրենիքի նոր կարգերը պարսավող ելույթի դեմ, նրանք դատապարտում էին այն, հայտնելով իրենց արդար բողոքը։ Հայտարարությունն այդպես էլ կոչվում էր՝ *Բողոք։* Նրա տակ ստորագրել էր ժամանակի մտավորականության գրեթե առաջավոր ընտրանին—գրող և արվեստագետ Շիրվանզադեն, Չոպանյանը, Կամսարականը, Բաշալյանը, Մալեզյանը, Որբերյանը, Սարգիս Խաչատրյանը և այլ մասնագիտությունների տեր մի շարք հասարակական գործիչներ։ Բողոք հայտարարությունն արտահայտում էր հայ առաջադեմ մտավորականության հստակ դիրքորոշումը նոր կարգերի հանդեպ և հայտնում այն հաստատ համոզումը, որ արտասահմանի բոլոր հայ ազգասերները, առանց կուսակցական խտրության, կկանգնեն *Բողոքի* դիրքերում։ Նրանք գտնում էին, թե «անհերքելի իրողություն մըն է, որ Հայաստան մը գոյություն ունի այսօր» և, թե նա «իր գոյությունը կրնա պահպանել ու զարգանալ միմիայն Խորհրդային Միության հետ դաշնակցած» (Փարիզ, «Ապագա», 1926 թ. փետրվարի 12-ի համարից) ։

Մեծ եղավ *Բողոքի* հարուցած աղմուկը, այն տպվեց սփյուռքահայ բազմաթիվ թերթերում, բորբոքելով դաշնակցական մամուլի կիրքը։ Պատասխաններով հանդես եկան և *Բողոքին* դրական արձագանքեցին սփյուռքի այլ մտավորականներ, այդ շրջանում իր ֆելիետոններով աչքի ընկավ Եգիպտոսում ապրող հայ մեծանուն վիպագիր ու երգիծաբան Երվանդ Օտյանը։ Սկսվեց անվանի մտավորականների վերադարձը հայրենիք։

***

Սփյուռքահայ գրականության կարթոնքի գլխավոր կենտրոնն առաջին տասնամյակներում Ֆրանսիան էր։ Ճիշտ է, ԱՄՆ-ում, հետագայում արաբական արևելքում և այլ գաղթօջախներում (գլխավորապես Սիրիայում, Լիբանանում), աճեց հայ մտավորականության մի մեծ բանակ, որի շարքերում, մեր կարծիքով, լավագույններից է Կարապետ Սիտալը (ԱՄՆ) ։

Երիտասարդ Սիտալը, որպես սփյուռքի գրող ու հասարակական գործիչ, առաջիններից մեկն էր, որ հասկացավ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության նշանակությունն ու դերը և կարողացավ արագ դիրքորոշվել: «Ռուսական աշխարհացունց հեղափոխության պատճառած հուսալից խռովքը և մեր ժողովրդական արվեստի մաքուր ու կենարար շունչը ինձ փրկեցին սպառիչ անհուսության և իմպերիալիստական խարդախ դատին տուրք տալու իմ տկարությունից» (Կ. Սիտալ, *Կենսագրական գծեր և նշմարներ):*

Հակիվ ոտք դրած դաշնակցության շեմին, Սիտալը հասկացավ վերջինիս իսկությունը, նրա սուտ սոցիալիզմը:

Խարանող տողերով մերկացնելով դաշնակցությանը՝ բանաստեղծը դուրս եկավ նրա շարքերից և իր ժողովրդի փրկության միակ հանգրվանը համարելով Սովետական Հայաստանը, սոցիալիստական ռեալիզմի շնչով հագեցած իր երգերը խառնեց նոր օրերի երգին, դառնալով սփյուռքահայ նոր գրականության նախակարապետներից մեկը:

Քսանական թվականների վերջերին Ֆրանսիայում արդեն հանդես էին եկել մի շարք երիտասարդ տաղանդավոր գրողներ, որոնց ստեղծագործություններն ուսանելի էին հետպատերազմյան սերնդի համար, մեծ էր Ֆրանսիայում ստեղծված այդ գրականության ազդեցությունը մասսաների վրա: Երիտասարդ այդ սերունդը, ունենալով գաղափարական տարբեր դիրքորոշումներ, ուներ մեկ մտահոգություն—հայ ժողովուրդն ու հայրենիքը:

Արաբական անապատներից Եվրոպա հասած, նրա ցոփ, այլասերող ու կլանող բարքերի ու քաոսի մեջ շփոթ, իր հանապազօրյա հացի անմիջական հոգսով տարված հայ պանդուխտները կանգնած էին այլասերման ու հայությունից խզման վերացման վտանգի հանդիման: Հետադիմության աշխույժ գործունեությունը, ստապատիր ու մոլեգին ագիտացիան ևս նպաստում էին այդ ամենին: Բնորոշ է այն հանգամանքը, որ քաղաքական մյուս հայկական կուսակցությունները ևս որդեգրեցին առողջ դիրքորոշում—լինել միայն Սովետական Հայաստանի հետ:

Ռամկավարների ու հնչակյանների կազմակերպությունները բռնեցին Սովետական Հայաստանին աջակցելու, բարեկամության ուղին:

Հեղափոխության, Սովետական Միության և Սովետական Հայաստանի թշնամիների դեմ մղվող պայքարի հիմնական ծանրությունը կրում են սփյուռքում գործող կոմունիստական կուսակցությունները և այդ կուսակցությունների շարքերում անդամագրված հայ ընկերները՝ մամուլի, գրականության միջոցով և իրենց գործով:

Ինչպես ասացինք, Ֆրանսիայում հասակ առնող գրական առաջին սերունդը կանգնեց հայապահպանման, հեղափոխության և Սովետական Հայաստանի իրավակարգի խորացման ու վերելքի ճանապարհին: Մի հոդվածում դըժվար է ընդգրկել բոլոր սփյուռքահայ գրողներին, դրա համար էլ կխոսենք միայն լավագույնների մասին:

Առաջին տասնամյակի վերջերին, 1927—29 թվականներին, գրվեց և հրապարակվեց *Շահան Շահնուրի* գլուխ-գործոցը՝ *Նահանջ առանց երգի* վեպը: Հերոսները վերցված են իրական կյանքից: Սփյուռքահայ գրականության մեջ ցարդ չգերապանցված փորձ էր տաղանդավոր երիտասարդ գրողի նախաձեռնությունը, որը ցնցում էր թմրած ջղերը՝ արթնացնելով քնածներին և ահավանգում կործանման վտանգը, որ դամոկլյան սրի նման կախվել էր սփյուռքահայության վրա:



*«Ոչ թե որովհետև հիմա պատերազմ կա ու կռիվ, ոչ թե որովհետև հիմա ճակատամարտ կա ու կենսապայքար, այլ որովհետև կա բան մը ավելի ճակատագրական, ավելի աններող, կա բան մը ահեղ, անդիմադրելի, որ իր անունը կոռնա բոլոր քառուղիներեն: Նահանջն է ան, նահանջը, նահանջը հայերուն: Այդ նահանջը կջնջե, կձուլե, կանհետացնե ամեն բան, կնահանջեն ծնողք, որդի, քեռի, փեսա, կնահանջեն բարք, ըմբռնում, բարոյական, սեր: Կնահանջե լեզուն, կնահանջե լեզուն, կնահանջե լեզուն: Եվ մենք դեռ կնահանջենք բանիվ և գործով, կամա թե ակամա, գիտությամբ և անգիտությամբ, մեղա՜, մեղա՜... Արարատին»:*

Այս խոսքերը Շահնուրի ահազանգի կանչն էին՝ վեպի հերոսներից Սուրենի բերանով ասված:

Խայտաբղետ էին և այլայլան *Նահանջում* Շահնուրի հերոսները. բայց նրա երկրորդական հերոսներից մեկն իր վրա բևեռեց սփյուռքահայ հայրենակարոտ երիտասարդության սևեռուն ուշադրությունը: Դա՝ Արարատի, հայրենիքի սիրով խենթության հասած, սփյուռքահայ գրականության ամենաողբերգական հերոսներից մեկն է՝ «Լոխումը»: Երիտասարդ մի տղա, որի մտասևեռումն էր դարձել գնալ հայրենիք, միայնակ ներգաղթել և այնտեղ լծվել հայրենիքի կառուցման գործին: Զուր էին անցնում բոլոր դիմումները և վերջում խենթության հասած «Լոխումը» անդադար հանկերգում էր իր երազը. «Զորցնենք ճահիճները, ջրանցքներ բանանք»: «Լոխումը» չմնաց միայն Շահնուրի վեպի սահմաններում, այլ իր նմաններն ունեցավ սփյուռքի գրեթե բոլոր գաղութներում: Միայն ներգաղթը իրականություն դարձրեց նրանց երազանքը:

Այսպես, հայացքները դեպի հայրենիք ուղղելով, հայրենադարձը փրկության միջոցներից լավագույնն ընդունելու իմաստով սփյուռքում Շահնուրի ռեալյայն ասածը հետագայում լրացրեց *Լաաը* (Լուիզա Ասլանյան)՝ իր *Հազարկանի ուղիներով* երկհատոր վեպում: Սփյուռքահայ գրականության մեջ կարևոր տեղ գրավող այս վեպը, որ միաժամանակ գաղութահայ կյանքի ռեալ պատկերն էր, կամուրջ էր՝ նետված անցյալից դեպի ներկան, սփյուռքից դեպի Սովետական Հայաստան: Առաջին անգամ սփյուռքահայ գրականության մեջ Լասի հերոսներից մեկն է գնում հայրենիք, այն համարելով փրկության խարիսխ: Անգամ վեպի վերջնականապես կորած մարդկանցից Զավենը, քրոջ՝ Վարդենիի հայրենիք մեկնելն է համարում միակ ճիշտ ուղին: Վեպի հերոսուհիներից Անուշը (Լասը, թերևս), վերջում ասում է մորը.

*«Բազմաթիվ ուղիներով գնացինք մենք, մայրիկ, և բազմաթիվ ուժեր եկան և բախվեցին մեր հոգիների մեջ, բայց այդ բախումից ծնվել է հիմա նորը: Իրար են խառնվում և իրար մեջ են ձուլվում երազն ու իրականությունը, միտքն ու հոգին, հեքիաթն ու մեքենան՝ արևելքն ու արևմուտքը: Բացվել է արդեն մի նոր դար ու նոր այդ դարի ոսկե դռների առաջ կանգնել է նոր մարդը: Նա ճեղքում է տագնապը կյանքի, և շվարած հոգին դուրս է գալիս դարի ճիգերի միջից՝ դուրս է գալիս, գլուխը դեմ տված երկնքին, բռունցքը բարձրացրած դևի դեմ: Հոգիները նոր ափ են դուրս գալիս հիմա: Նոր ափ է դուրս գալիս և մեր հոգին՝ հայի հոգին»:*

*— Իսկ ի՞նչ եղավ Վարդենին,—հարցնում է մայրը շշուկով. Անուշը պատասխանում է.*

*— Վարդենին ներս մտավ ոսկե դռներից: Նա գնաց բարձր լեռան ստորոտում գտնվող աշխարհների ու դարերի հանգույցում ընկած այն երկիրը, ուր ջրերի շառաչին խառնվել է հիմա երգը մեքենայի, ուր գործարանների ծխնելույզների վրա թավար դուշն իր թևերն է թափահարում»:*

Վարդենին չմեղանչեց Արարատի դեմ, գնաց Արարատի ստորոտում գտնըվող աշխարհների ու դարերի հանգույցում ընկած երկիրը՝ «չորացնելու ճահիճները և ջրանցքներ բանալու»: Անուշը մնաց Ֆրանսիայում, սփյուռքում, բայց նույնպես չմեղանչեց Արարատի դեմ, որովհետև նա գտել էր իր ուղին, որովհետև նա էլ ապրեց «նոր դարը» որպես «նոր մարդ», որն իր բռունցքն է բարձրացրել Դևի, այսինքն՝ հետադիմության, բռնատիրության, կապիտալիզմի և պատերազմի դեմ, այն ամենի դեմ, որ Հոկտեմբերյան հեղափոխությամբ օրենք և հավատամք դարձավ:

Լասի վեպով ամբողջացվում է Շահնուրի *Նահանջը*, իսկ Անուշ-Լասը գործ է դարձնում իր խոսքը, անձամբ կռվում, մաքառում և մարտիրոսանում է 1944 թվականին, լրացնելով նահատակների այն շարքը, որ բաղկացած էր գրող-մարտիկներից—Միսաք Մանուշյան *(Ստալինգրադ, Չապաև, Ազատություն, Վիկտոր Հյուգո* կոչվող ընդհատակյա ջոկատների հրամանատար), Գեղամ Ատմաճյան (բանաստեղծ) և ուրիշներ:

Ֆրանսիայում կային առաջավոր դիրքերում կանգնած այլ գրողներ ևս, ինչպիսիք էին, հետագայում գերմանական ճամբարներում տառապած՝ Զ. Որբունին, հայրենասեր մտավորականներ Հրաչ Զարդարյանը, Պետրոս Զարոյանը, ԱՄՆ-ում՝ Հակոբ Գույումճյանը, Անդրանիկ Անդրեասյանը, Բենիամին Նուրիկյանը, Վահե Հայկը և ուրիշներ:

Ահա նրանցից *Վազգեն Շուշանյանը*, որ մի ամբողջ տասնամյակ մնալով Ֆրանսիայում, դաշնակցության շարքերում, հետագայում ընդվզել էր նրա դեմ:

> *«Նույն դրոշին տակ գտնվելով հանդերձ դադրած ենք նույն նպատակը հետապնդելէ: Վերջին տարիներու ընթացքին լիովին համոզված էինք արդեն, որ իրենց հոդվածներեն ու բանախոսություններեն զատ ոչ մեկ նշանակություն մը չունեին, կար իրենց մոտ խորհրդային իշխանությունը տապալած տեսնելու զորեղ ու անընկճելի փափագ մը: Այդ իշխանությունը խլած էր իրենցմե ամեն ինչ, մայր, կին, ընտանիք, դիրք, բարեկեցություն և այլն: Մեկ խոսքով հայ հեղափոխականներ ըլլալե ավելի, ռուս էմիկրացիայի մեկ կտորն էին, մնած ատելությամբ ու օժտված նույն մոլեկան կուրությամբ» (Վ. Շուշանյան, Օրագիր, Հաշիվներ, Հ. Հ. Դ. Կենտ. մարմին, էջ՝ 109, անտիպ, գրականության և արվեստի թանգարան, Վ. Շուշանյանի ֆոնդ):*

Տարիների ընթացքում հստակատեսությունը և քաղաքական դիրքի տակավ բարեշրջումը Շուշանյանին իր ստեղծագործական որոշ խոտորումներով հանդերձ մոտեցրին լենինիզմի գաղափարախոսությանը, և Շուշանյանը դարձավ սփյուռքահայ առաջին սերնդի ամենակրքոտ և ամենաանշահախնդիր հայրենասերներից ու հեղափոխականներից մեկը:

> *«Հարկ է հավատալ մեր ժողովրդի վերածնունդին, անոր հեղափոխական առավոտուն ու թոթափելով հետադիմության վերջին ցնցոտիները, խորին հավատքով մը փարիլ մեր երկրի վերաշինության գաղափարին»:*

Այսպես էին Շուշանյանի խոսքերը 1935 թվականի հուլիսին, երբ վաղուց իր բոլոր կապերը խզել էր դաշնակցության հետ:

Իսկ ԱՄՆ-ում, Սիտալից մոտ մի տասնամյակ հետո, հրապարակ իջավ *Հակոբ Գույումճյանը*, որը հանդգնությամբ գրում էր. «Ես բոլշևիկ, կոմունիստ եմ», երգում էր Լենինին, հեղափոխությունը, նոյեմբերը, գրում էր բանաստեղծություններ գաղութային տանջված ու ստրկացված ժողովուրդների պայքարի



մասին, ծառանում ԱՄՆ-ում ռասայական խտրականության դեմ, խարանող տողերով ձաղկում բոլոր բռնակալներին, պարզելով Հոկտեմբերից գույն առած իր հավատքի դրոշը:

Իսկ ի՞նչ էր կատարվում Միջերկրականի ափերին տարածվող արաբական աշխարհում և այլ երկրներում, Արևելքում: Մինչև Հայրենական պատերազմի հաղթական ավարտը, արաբական արևելքը հեծում էր անգլիական ու ֆրանսիական իմպերիալիզմի կրնկի տակ, տիրող կառավարությունների մոլի հակասովետական մթնոլորտում: Հոկտեմբերյան հեղափոխության ջերմությունն ու խինդը ուշ հասան այնտեղ, բայց այնտեղ էլ անկախության պոռթկուն ճիչերի հետ հնչեցին նոր երգն ու խոսքը: Արգելակող այդ պայմանների արդյունք էին նաև արաբական գաղթօջախների, Թուրքիայի, Պարսկաստանի գաղութների հայ գրականության երեք տասնամյակ տևող հոռետեսական և անկումային տրամադրությունները՝ լույսի փոքր շեղբերով. այդպիսի տրամադրությունները հարատևեցին մինչև ֆաշիստական բանակների անփառունակ պարտությունը:

***

Միջին Արևելքի գաղթօջախներից կարևորագույններն էին Սիրիան ու Լիբանանը, որոնք գաղութներն էին մերթ Անգլիայի, մերթ Ֆրանսիայի: Հայերն այնտեղ դեռևս չէին և չէին էլ կարող լինել այն, ինչ եղան, ասենք, Ֆրանսիայում կամ ԱՄՆ-ում: Թուրքիայում (Պոլսում) և Պարսկաստանում ժողովուրդներն ապրում էին շովինիստական քաղաքականության միահեծան տիրապետության տակ: Առաջին երկրներում հայերը, որպես եկվորներ, գտնվում էին երրորդական, չորրորդական տեղում: Այդ կացությանը նպաստում էր նաև այն տխուր հանգամանքը, որ հայը չգիտեր տեղական լեզուն, չէր կարողացել խորապես հասկանալ իր ապրած երկրների կյանքը: Մեկուսացումն արդյունք էր կանխամտածված քաղաքականության, որին սատարում էին հայ հետադիմականները, արհամարհելի կացության մեջ գտնվելով հանդերձ, անըմբռնելի սոփեստությամբ արհամարհանք էին տածում տեղացիների հանդեպ: Այսպիսի քաղաքականությունը հայ գաղութը կարող էր հասցնել տխուր հետևանքների, ծանրացնել նրա վիճակը և իսպառ կործանել այն, եթե չգտնվեին այլ կուսակցություններ (հատկապես հայ կոմունիստների) և բանիմաց առաջնորդներ, որոնք, հակառակ տիրող վիճակին և ֆրանսիական ու անգլիական ոստիկանական սարսափներին, աշխատում էին հոսանքն ի վեր քայլել:

Նացիստական Գերմանիայի պարտությունն իր պտուղները տվեց նույնիսկ Թուրքիայում, որը վերջին րոպեին պատերազմ հայտարարեց իր հոգեղբայր Գերմանիային և հետագայում (հոգ չէ թե մի քանի տարիների համար) արտոնեց ազատ խոսքի և դեմոկրատիայի իրավունք: Զարթոնք ապրեց և թուրք գրականությունը. սկսեցին լույս տեսնել դեմոկրատական թերթեր, գրքեր: Բացվեցին դռները ռուս դասական և սովետական գրականության առջև: Գորկուց մինչև Շոլոխով դարձան լայն մասսաների սեփականությունը: Այդ շրջանում էր, որ առաջին տասնամյակների անհատապաշտ ձգտումների փոխարեն, Պոլսի հայ երիտասարդ գրողները փորձում էին հետևել նախկին արևմտահայ գրականության առողջ տրադիցիաներին, ջանում մերձենալ ժողովրդին, նրան նոր ձևով նոր խոսք ասելու: Այդ շրջանում իրենց նորավեպերով աչքի են ընկնում մի շարք գրողներ:

Պատերազմից հետո իրանահայ գրողներից շատերը կանգնեցին հայրենասիրական ճիշտ դիրքերում:

Արձակագիրներ Աբիգ Ավագյանը, Հովհաննես Ղուկասյանը և ուրիշներ եկան հայրենիք՝ մասնակցելու մայրենի մշակույթի վարգացմանը:

Հայրենական մեծ պատերազմի հաղթանակին հաջորդող առաջին ամենաուրախալի գործը ներգաղթն էր, ապա՝ Հայաստանի սովետական գրողների II համագումարը, որին մասնակցեցին և սփյուռքահայ գրողներ:

Եթե հայրենադարձի որոշումը մի անգամ ևս (1945 թ. նոյեմբերի 21-ի) սրբեց սփյուռքահայության ճակատից գաղթականի, անտեր ու անպաշտպան հայի խարանը, սովետահայ գրողների II համագումարի հրավերը՝ ուղղված սփյուռքահայ գրական մշակներին, կրկնապատկեց այն խոր հավատն ու վըստահությունը, այն ինքնագիտակցումը, որի կարիքն ուներ, թերևս, օտար մայթերի վրա դեգերող, իր հարազատների, իր իսկ անձի առջև երիցս նահատակված, ողջակիզված հայ գրողը: Համագումարը հող էր տալիս սփյուռքահայ գրողին, իսկ առանց հայրենի հողի, կռվանի, չէր կարելի ստեղծագործել:

Հայաստանի սովետական գրողների համագումարում, Միության նախագահ, մեծ վարպետ Ավետիք Իսահակյանի խոսքերը խթանեցին սփյուռքահայ գրականության մշակների հավատքի առաջին ծիլերը:

> *«Մեր համագումարի ամենաարժեքավոր արդյունքն այն կլինի, որ ավելի սերտանան ու մտերմանան փոխադարձ հարաբերությունները՝ մայր հայրենիքի և սփյուռքի գրականությունների միջև, ներդաշնակվեն մեր ձգտումները, կառուցենք պայքարի ճակատ ընդդեմ ռեակցիայի՝ ի շահ հայ ժողովրդի բարգավաճման, մեր պետության է՛լ ավելի ամրապնդման և Մեծ Միության իդեալների կենսագործման:*
>
> *Կա մեկ ժողովուրդ և մեկ գրականություն»:*

Այդ խոսքերը խանդավառեցին սփյուռքահայ գրողների սրտերը: Պայքարի ճակատ ընդդեմ ռեակցիայի՝ ի շահ հայ ժողովրդի բարգավաճման, մեր պետության առավել ամրապնդման:

Մեծ եղավ համագումարի արձագանքը սփյուռքում: Առաջադիմական բոլոր թերթերն ու պարբերականները արտահայտում էին այն խոր համոզումը, որ հայ ժողովրդի ազգային միավորման հնարավորությունն ստեղծեց միայն սովետական իշխանությունը:

Այսօր հետպատերազմյան սփյուռքահայ գրականությունն ունի իր հստակ դիմագիծը, իր ասելիքը:

Հայաստանի սովետահայ գրողների II համագումարում Իսահակյանը նշել էր գաղութահայ գրականության հետագա ուղիներից կենսականը:

> *«Հիմի արտասահմանի մեր գրական ընկերների վրա սրբազան պարտք կա դրված, աջակցել ներգաղթի հաջողությանը: Նրանք պիտի տանեն գաղութահայերին այն խնդալից պատգամը, թե սփյուռքի բոլոր հայերը Սովետական Հայաստանի վաղվան քաղաքացիներն են: Մեր գրչակիցները պիտի երգեն և արծարծեն սեր դեպի Սովետական Հայաստանը, բոլոր հայերի հայրենիքը: Պիտի վառ պահեն ազգային պատկանելությունը: Բոլոր միջոցներով պիտի ձգտեն հեռու պահել հայությունը այլասերումից: Նրանք պիտի կամուրջ դառնան՝ տարածելու Սովետական Հայաստանի մշակույթի, արվեստի և գրականության արժեքները և ստեղծելու միասնական գրականություն սովետահայ գրականության շուրջ»:*

Այդ դարձավ սփյուռքահայ գրողի առաջին պարտականությունը: Ամենքը՝ երեց թե կրտսեր, լծվեցին այդ սրբազան պատգամի կատարմանը: Կար հայրենիք



իր հողով, պետականությամբ և դրոշով: Սովետական Հայաստանն էր այն, հայրենիքը համայն հայության, որին պետք էր բոլորանվեր ծառայել: Որոշակի հասցե և անուն ունեցող հայրենասիրությանը հակադրվեց գաղութահայ գրականության հետադիմական թևը, որը գնալով կորցրեց իր ազդեցությունը:

Սովետական հայրենիքով ոգեշնչ գրողները, գոտեպնդված նրանով, ուրիշ իրական կյանքի պատվանդանին, համարձակ ու խիզախ ձուլվելով այն երկրների առօրյա կյանքին, ուր ապրում էին նրանք, քանդելով բոլոր պատվարները:

Տխրության ու դառնության իր առանձին երանգներով, այդ առաջադեմ գրականությունն առողջ մի լավատեսություն է հետադիմականի հոռետեսության ու անկումայնության դիմաց: Ճիշտ է, երբեմն դժգոհություն է ու որոնում այդ գրականությունը, բայց այն ունի իր լուծումը՝ հաղթանակի խոր հավատքը՝ մյուսի հուսալքության դիմաց:

Բոլոր հուսալքվածներին, վհատներին ու թուլությունից կուրացածներին հուսադրելու, իր պայծառ հավատքից բաժին տալու նպատակով իր մոտ կանչելով, ժամանակի բանաստեղծներից մեկը՝ Գառնիկ Addարյանը, գրում է.

> Բյուր աչքերով ես կտեսնեմ արդեն հիմա
> Վաղն արևկա:
>
> . . . . . .
>
> Ու կմոռնամ անցյալը մութ,
> Այսօրն հղի...
>     Ես գալիքն եմ...

Սփյուռքահայ առաջավոր գրականությունը սիրո և երախտագիտության խոսք է հանդեպ ռուս ժողովրդի, Հոկտեմբերյան մեծ հեղափոխության, որի շնորհիվ ինքը կա ու ապրում է հայրենիքում և գլուխը բարձր՝ քայլում սփյուռքի քառուղիներում: Սիրո և հավատարմության խոսք է նաև այն երկրների ժողովուրդների նկատմամբ, ուր սնանում և ուռճանում է սոցիալիստական գալիքը:

Թուրքական յաթաղանից փրկված, սոված ու նոթի, որբ ու անպատսպար խլյակներից սերած նորագույն սերունդը կանգնել է այսօր գրականության առաջավոր դիրքերում: Սիտալից մինչև Լաս ու Մանուշյան, Վահե-Վահյան և Ադդարյան, սփյուռքահայ գրականությունը եղավ ազգապահպանման ազդակ, դարձավ բռունցք ամերիկյան նեո-գաղութատիրության դեմ, քանի որ հենվեց Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի և, որպես հայ, Հայաստանում սովետական փրկարար կարգերի վրա:

Այդ իրականությունն էր, որ սփյուռքահայերի և ասպնջական ժողովուրդների միջև հաստատեց ու ամրապնդեց բարեկամական փոխհարաբերություններ և հայ ժողովրդին սփյուռքում դարձրեց սիրված, հարգված և հարազատ:



# ՕՐՎԱ հարցեր

## ՔԱՂԱՔԸ ԿԱՌՈՒՑԵԼ ԿՈՄՊԼԵՔՍԱՅԻՆ ԵՂԱՆԱԿՈՎ

Սովետական կառավարությունն ամեն տարի խոշոր միջոցներ է հատկացնում բնակարանային և քաղաքացիական շինարարությանը, քաղաքային տնտեսության զարգացմանը:

Երևանում անցած յոթ տարում բնակարանային, կոմունալ, սոցիալ-կուլտուրական և կենցաղային շինարարությանը հատկացվել է մոտ 290 միլիոն ռուբլի: Քաղաքի բնակարանային ֆոնդի 35 տոկոսից ավելին ստեղծվել է միայն այդ տարիներին: Կառուցվել են 80-ից ավելի դպրոցական շենքեր, մեծ թվով մանկական հիմնարկներ, շահագործման են հանձնվել 2000 մահճակալներով հիվանդանոցներ, ծննդատներ, պոլիկլինիկաներ: Զգալիորեն ընդլայնվել են կուլտուրայի, առևտրի և կենցաղսպասարկման օբյեկտները, ընդարձակվել են ջրմուղ-կոյուղու ցանցը, քաղաքային տրանսպորտը, ստեղծվել է 42 կիլոմետր երկարությամբ էլեկտրատրանսպորտի գիծ: Քաղաքային էկոնոմիկայի մեջ սկիզբ է առել ու զարգանում է մի նոր ճյուղ՝ գազի տնտեսությունը:

Մայրաքաղաքի բարեկարգման՝ փողոցների վերակառուցման, նոր ճանապարհների բացման, կանաչ տարածությունների և ջրային մակերեսների ստեղծման, արտաքին լուսավորության ընդլայնման և ինժեներական մյուս կառուցվածքների համար յոթ տարում ծախսվել է ավելի քան 31 միլիոն ռուբլի: Փողոցների երկարությունը ավելացել է 480 կմ, ասֆալտապատվել և սալահատակվել են մոտ 7 միլիոն քառ. մետր ճանապարհներ ու բակեր: Կանաչապատվել և ստեղծվել են 527 հեկտար տարածությամբ զբոսայգիներ ու ծաղկանոցներ:

Երևանում բնակարանային շինարարության ծավալը նոր հնգամյակում, նախորդ հնգամյակի համեմատությամբ, ավելանալու է մոտ 2 անգամ:

Առաջիկա 20 տարվա համար մշակված ու հաստատված են քաղաքի գլխավոր հատակագծի տեխնիկա-տնտեսական հիմունքները, իսկ գլխավոր հատակագիծը կավարտվի տարվա վերջին, որը հնարավորություն կտա նորմալ հունի մեջ դնելու քաղաքի զարգացումը:

Չնայած այդ ամենին, քաղաքաշինության և քաղաքային տնտեսության շատ պրոբլեմներ կան, որոնք գիտական լուրջ մշակման կարիք ունեն, իսկ նման գիտական կենտրոն մենք չունենք: Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի էկոնոմիկայի ինստիտուտը չունի համապատասխան օղակ կամ ստորաբաժանում, քաղաքաշինության հարցերով զբաղվելու համար: Այս առումով հասունացել է Երևանում քաղաքաշինության միութենական գիտահետազոտական ինստիտուտի ֆիլիալի ստեղծման հարցը (ի դեպ այդպիսիք կան թե՛ Բաքվում, թե՛ Թբիլիսիում): Ֆիլիալը, մի կողմից կզբաղվի Երևանի ու հանրապետության մյուս քաղաքների կառուցապատման, քաղաքային տնտեսության ճյուղերի համաչափ զարգացման հարցերով, գիտական մշակման կենթարկի դրանք, մյուս կողմից՝ հնարավորություն կընձեռի գիտական մտքի զարգացմանն այդ բնագավառում:

Հակառակ քաղաքաշինության հին հասկացողության, քաղաքների կառուցապատման ելակետը այժմ ոչ թե բնակարան, շքերթի փողոցներ, շքամուտքեր ու հրապարակներ կառուցելն է, այլ մարդու կենսական պահանջները բավարարող կոմպլեքսի ստեղծումը: Քաղաքը մի օրգանիզմ է, որի ամեն մի տարրը՝ բնակարանը, դպրոցը, հիվանդանոցը, կոմունալ տնտեսությունը իր բոլոր ճյուղերով, տրանսպորտը, կինոն ու գրադարանը, բաղնիքն ու խանութը, կենցաղային ծառայությունները և սպասարկման մնացած սխտեմները գրեթե ամեն օր անմիջական առնչություն ունեն մարդու կենսական շահերի հետ: Այստեղից էլ դժվար չէ նկատել քաղաքների կոմպլեքսային նախագծման, կապիտալ ներդրումների պլանավորման ու կառուցապատման խիստ կարևորությունը:

Երևանի, նրա բնակելի նոր շրջանների ու միկրոշրջանների կառուցապատման պրակտիկայում կոմպլեքսային կառուցման սկզբունքից որոշ շեղումներ է թույլ տրվել. դրանք արտահայտվում են սոցիալ-կուլտուրական և կոմունալ կենցաղային օբյեկտների շինարարության խիստ ետ մնալով: Վերջին 7 տարիներում կուլտ-կենցաղային կապիտալ ներդրումների ծավալը բնակարանային և քաղաքացիական շինարարության ընդհանուր ծավալի մեջ կազմում է մոտ 16 տոկոս, նորմատիվային 27 տոկոսի փոխարեն, կոմունալ շինարարությանը՝ 12 տոկոս, 22-ի փոխարեն: Ինչո՞ւ քաղաքացիական շինարարության ներքին կառուցվածքի մեջ չի պահպանվել նորմատիվային հարաբերությունը: Այդ, առաջին հերթին, բացատրվում է նրանով, որ հետպատերազմյան տարիներին բնակչության մեծ տեմպերով աճին չկուզորդեց կուլտկենցաղային և կոմունալ սպասարկման ցանցի զարգացումը: Այդ հետևանք է նաև այն բանի, որ պլանավորող, ինչպես և ֆինանսավորվող օրգանները կապիտալ ներդրումների պլանավորման ու ֆինանսավորման ժամանակ ոչ բոլոր դեպքերում են ելնում քաղաքաշինության և քաղաքների կառուցապատման հիմնական սկզբունքներից ու գոյություն ունեցող նորմաներից: Չկա գիտատեխնիկական ու տնտեսական հիմնավորում, որի հետևանքով էլ տարեցտարի սոցիալ կուլտուրական և կոմունալ կենցաղային շինարարության մակարդակը ետ է մնում բնակարանային շինարարության մակարդակից. սա, անշուշտ, բնակչության կոմպլեքսային սպասարկման համար չի ապահովում քաղաքային տնտեսության բոլոր ճյուղերի միաժամանակյա համաչափ զարգացումը: Մասամբ դրանով պետք է բացատրել ջրմուղ-կոյուղու ցանցի, նախադպրոցական մանկական հիմնարկների, բաղնիք-լվացքատների, կինո-թատրոնների, դըպրոցների, հիվանդանոցային և հյուրանոցային տնտեսությունների անբավարար վիճակը:

Կասկած չի հարուցում այն անառարկելի փաստը, որ վերջին 7 տարում զգալիորեն լայնացել է ջրմուղ-կոյուղու ցանցը՝ ջրմուղինը՝ 1,5, կոյուղունը՝ ավելի քան 2,5 անգամ: Կոյուղու ցանց ունեցող բնակելի ֆոնդը 1965 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, ավելացել է ավելի քան 17 տոկոսով, սակայն դեռևս քաղաքի պետական շենքերի 40 տոկոսը չունի ջրմուղ-կոյուղու ցանց, իսկ մասնավոր տների՝ 73 տոկոսը:

Մանկապարտեզ-մանկամսուրների տեղերը կրկնապատկվել են, բայց նրանք դեռևս չեն բավարարում բնակչության աճող պահանջմունքները: Մանուկների գրեթե երեք քառորդը չի ընդգրկված նախադպրոցական մանկական հիմնարկներում:

Կոմպլեքս ձևով չեն կառուցապատվում քաղաքի նոր բնակելի մասսիվներն ու միկրոշրջանները: Դեռևս անբարեկարգ է Աջափնյակի բնակելի շրջանը, ուր ապրում են մոտ 50 հազար բնակիչ. խիստ պակաս է կուլտ-կենցաղային և առևտրական օբյեկտների ցանցը: Նման վիճակում են մյուս բնակելի նոր շրջանները՝ Զեյթունը, Չարբախը, Ճենգավիթը և Նորքը:

Նոր հնգամյա պլանի դիրեկտիվների համաձայն հանրապետությունում մեծ չափերի է հասնելու սոցիալ-կուլտուրական և կոմունալ կենցաղային շինարարությունը. դրա տեսակարար կշիռը բնակարանային, քաղաքային շինարարության մեջ 35,8-ից կհասնի 42 տոկոսի (49 տոկոսի փոխարեն):

Մեր կարծիքով, տարեկան պլանները կազմելիս պետք է խիստ հաշվի առնել վերոհիշյալը և առաջիկա տարիներին խսպառ վերացնել սպասարկման ոլորտի թերությունները:

Քաղաքների կոմպլեքսային կառուցման գործում ներկայումս բացառիկ նշանակություն են ստանում բարեկարգման միջոցառումների ֆինանսավորման ու պլանավորման հարցերը: Ֆինանսավորման ներկա պրակտիկան (որը կատարում են ֆինանսական օրգանները) չունի ոչ մի գիտական հիմք և տեխնիկա-տնտեսական հիմնավորում: Յուրաքանչյուր տարի բյուջեի հաստատման ժամանակ միութենական և հանրապետական ֆինանսների մինիստրությունները քաղաքների բարեկարգման համար ապրիորի հատկացումներ են կատարում: Բավական է ասել, որ Երևանում 1959—1966 թթ. հատկացված միջոցների չափը ամեն տարի գրեթե նույնն է և այդ այն դեպքում, երբ քաղաքային տնտեսության բոլոր ճյուղերն աճել են 2 և ավելի անգամ: Այս է պատճառը, որ հատկացված գումարները չեն բավարարում անգամ շահագործման ծախսերին: Մեր կարծիքով, քաղաքների բարեկարգման պլանավորման ֆունկցիաները նույնպես պետք է դնել պլանավորող օրգանների վրա: Ժողովրդական տնտեսության ճյուղերի, բնակարանային-քաղաքացիական շինարարության հետ մեկտեղ, պետք է կոմպլեքս ձևով պլանավորել նաև քաղաքների բարեկարգումը:

Կոմպլեքսային կառուցման սկզբունքի խախտման գործում մեծ մեղք ունեն շինարարական և, որոշ չափով, պատվիրատու կազմակերպությունները, որոնք չեն ապահովում կուլտ-կենցաղային, կոմունալ օբյեկտների շինարարության կապիտալ ներդրումների պլանների կատարումը և չեն իրացնում այդ նպատակին հատկացված գու-

# ԳՅՈՒՂԻ ԿԵՆՍԱԿԱՆ ՀՈԳՍԵՐԻՑ ՄԵԿԸ

Սովետական իշխանության տարիներին հայ ժողովրդի ձեռք բերած սոցիալ-տնտեսական և կուլտուրական նվաճումները բարենպաստ հող հանդիսացան ժողովրդական առողջապահության լավագույն կազմակերպման, գյուղում բժշկական սպասարկման բոլորովին նոր սիստեմ ստեղծելու համար:

Սովետական Հայաստանում գյուղի բնակչության առողջապահության մասին մեր ասելիքը կսկսենք սանիտարա-հակահամաճարակային սպասարկման ստեղծումից, որը հասարակական առողջապահության հիմքն է:

Մինչհեղափոխական Հայաստանում սանիտարական ցուցանիշներն ամենացածրն էին: Դրա հետևանքն էին հաճախակի ծագող և արագ տարածվող համաճարակային տարբեր հիվանդությունները, որոնցից առաջացած մահացության տոկոսը շատ բարձր էր: Ուստի, սկսելով նոր կյանքի կառուցումը, հիմնադրելով հասարակական առողջապահության սիստեմի սաղմերը, առաջին հերթին պետք է ձեռնարկել սանիտարական գործին, համառ պայքար մղել համաճարակային զանազան հիվանդությունների ծագման ու տարածման դեմ: Դրա համար ամենից առաջ անհրաժեշտ էր ունենալ համապետական սանիտարական օրենսդրություն, որը, ինչպես հայտնի է, չկար ո՛չ ցարական Ռուսաստանում և ոչ էլ Հայաստանում: Սանիտարական գործին մասսայական բնույթ տալու համար հարկավոր էր ամենուրեք ստեղծել սանիտարական-սպասարկման պետական օրգաններ, պետությունը պետք է իր վրա վերցներ սանիտարական և հակահամաճարակային միջոցառումների անցկացման բոլոր ծախսերը:

Կոմունիստական կուսակցության ծրագրում կարդում ենք. «Ռուսաստանի կոմունիստական կուսակցությունը ժողովրդական առողջապահության գործունեության հիմքում դնում է ամենից առաջ առողջացուցիչ լայն սանիտարական միջոցառումների անցկացումը, նպատակ ունենալով կանխել հիվանդացումների զարգացումը...»:

Հայաստանում սովետական իշխանության հաստատման հենց առաջին տարիներին ստեղծվեց սանիտարական օրգան, սանիտարական բժշկի պաշտոն: Այդ օրգանների խնդիրն էր ամենից առաջ ստեղծել պատշաճ սանիտարական կարգ ու կանոն շրջապատող միջավայրում, վերացնել համաճարակի օջախները հանրապետությունում, գյուղական բնակչության լայն մասսաների շրջանում ծավալել սանիտարա-լուսավորական աշխատանք, բացատրելով կիրառվող միջոցառումների նշանակությունը և մասսաներին ներգրավելով այդ համաժողովրդական գործում: Սանիտարական օրգանները տեղերում պետք է սպասարկեին զարգացող ժողովրդական տնտեսությանը, կոմունալ տնտեսությանը, հսկեին հասարակական սննդի կետերը, արագ զարգացող սննդի արդյունաբերությունը:

Այդ ժամանակաշրջանում սանիտարական օրգանների ու բժշկական սպասարկման բոլոր աշխատողների հիմնական խնդիրն էր՝ պայքարել բնակչության (որի հիմնական մասն ապրում էր գյուղական վայրերում) մեջ տարածված համաճարակային հիվանդությունների պակասեցման ու վերացման համար: Խոսելով հանրապետական մասշտաբի սանիտարական միջոցառումների մասին, ամենից առաջ, անդրադառնանք հանրապետության գյուղական շրջաններում կատարված աշխատանքին:

Ծայրամասերում սանիտարա-համաճարակային գործի բարելավման խնդրում հատուկ նշանակություն ունեցավ հանրապետության գյուղական վայրերում շրջանային սանիտարա-համաճարակային կայանների կազմակերպումը, որոնք դարձան սանիտարա-համաճարակային սպասարկման հիմնական հաստատությունները:

Գյուղական վայրերում առաջին սանիտարա-համաճարակային կայաններն ստեղծվել են 1932 թվականին: Սկզբնական տարիներին գյուղական վայրերում շատ դանդաղ էր զարգանում այդ գործը: Հայրենական մեծ պատերազմից առաջ, 1940 թվականին, այդպիսի կայաններ կազմա-



կերպվել էին միմիայն հետևյալ շրջաններում՝ Հոկտեմբերյանում, Էջմիածնում, Արտաշատում, Ալավերդում, Միկոյանում, Գորիսում, Ղափանում, Ստեփանավանում, Ախտայում և Նոր-Բայազետում: Բայց 1955 թվականին սանէպիդկայանները գործում էին հանրապետության բոլոր շրջաններում:

Սանէպիդկայանների եռանդուն գործունեության և սիստեմատիկ բուժմիջոցառումների շնորհիվ, շուտով մեր հանրապետությունում վերացվեցին ինչպես մասսայական հիվանդությունները, այնպես էլ նախկինում շատ տարածված սոցիալական հիվանդացումները՝ գոնջությունը, տրախոման, քոսը:

Հակասանիտարական վիճակի, կուլտուրայի պակասի, աղքատության ու տգիտության արդյունք հանդիսացող այդ պաթոլոգիաների վերացումը արդյունք է նաև բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման, հիգիենիկ գիտելիքների լայն տարածման և սանիտարական կուլտուրայի մակարդակի բարձրացման:

Հայտնի է, որ մինչհեղափոխական Հայաստանում ամենասոսկալի չարիքներից մեկն էր մալյարիան: Սովետական իշխանության հաստատումից հետո էլ երկար տարիներ այն տարածված էր հանրապետությունում, հատկապես հարթավայրային շրջաններում: Համապետական մասսայական բուժպրոֆիլակտիկ ու սանիտարա-համաճարակային միջոցառումների, արտաքին միջավայրի ու բնակչության կենցաղային պայմանների բարելավման շնորհիվ մալյարիան սովետական կարգերի առաջին տարիներին լիկվիդացվեց որպես մասսայական հիվանդություն: Հանրապետության սանիտարա-համաճարակային սպասարկումը երկրորդ լուրջ քննությունը տվեց Հայրենական մեծ պատերազմի տարիներին. համաճարակային ոչ մի բռնկում տեղի չունեցավ մեզ մոտ:

Այժմ մեզ մոտ ստեղծված է սանիտարական համաճարակային սպասարկման հատուկ համապարփակ սիստեմ, որը պատրաստ է բոլոր իրադրություններում կատարելու իր պարզ ու պատասխանատու պարտականությունները:

Վարակիչ հիվանդությունների դեմ մղվող պայքարում վիթխարի նշանակություն ունի միջավայրի սանիտարական վիճակը, իսկ այդ խնդրում վճռական դեր է խաղում բնակչության ջրամատակարարումը: Նախասովետական Հայաստանում գյուղական շրջաններում չկար ջրմուղի ցանց, ոչ ոք չէր զբաղվում բնակչության ջրամատակարարմամբ: Ջրմուղ կար միայն Երևանում, որն անց էր կացվել 1912 թվականին ու լիովին չէր բավարարում քաղաքի բնակչության պահանջները:

Բացի մի քանի շրջաններից, որոնց բնակչությունն օգտվում էր լավորակ աղբյուրների ջրից, գյուղական վայրերի ճնշող մեծամասնության բնակչությունը զուրկ էր խմելու որակյալ ջրից և հիմնականում օգտվում էր բաց գետային ջրամբարներից՝ գետերից, ոռոգման ջրանցքներից, ինչպես և ջրհորներից: Խմելու համար օգտագործվող այդ ջրերը չէին համապատասխանում սահմանված հիգիենիկ նորմաներին:

Այժմ, կարելի է ասել, որ հանրապետության բոլոր շրջաններն ապահովված են խմելու որակյալ ջրով, որի նշանակությունն անգնահատելի է մարդկանց առողջության պահպանման ու սանիտարական բարեկարգ վիճակ ստեղծելու գործում:

Սովետական իշխանության առաջին տարիներին, Հայաստանում ջրամատակարարման պրոբլեմը լուծելուց հետո, կատարվեցին նաև մի շարք այլ աշխատանքներ գյուղական շրջանների հիգիենիկ վիճակն ու սանիտարա-համաճարակային գործը բարելավելու ուղղությամբ: Աստիճանաբար բոլոր շրջաններում կառուցվեցին բաղնիքներ: Այժմ ոչ միայն շրջկենտրոնները և ծայրամասերի արդյունաբերական խոշոր օբյեկտները, այլև շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ ունեն իրենց բաղնիքները:

Մինչսովետական Հայաստանում, հատկապես նրա գյուղական վայրերում բնակչության շրջանում չէր տարվում սանիտարա-լուսավորական պրոպագանդա, չափազանց ցածր էր բնակչության սանիտարական գրագիտությունը: Ոչ մի հնարավորություն չունենալով տիրապետելու բժշկական պարզագույն գիտելիքներին, անտեղյակ լինելով ամենաանհրաժեշտ հիգիենայի կանոններին, Հայաստանի գյուղերի բնակիչների միակ խորհրդատուները պառավ-տատմերները, հեքիմները և այլ պատահական մարդիկ էին:

Այս հարցում ևս ամեն ինչ պետք էր սկսել հիմքից: Այդ աշխատանքն սկզբում սահմանափակվում էր տեղերում կազմակերպված զրույցներով ու դասախոսություններով: Ներկայումս լայն թափ է ստացել դասախոսական պրոպագանդան. այսպես, 1965 թվականին հանրապետությունում բուժաշխատողները կարդացել են 20790 դասախոսություն ու անցկացրել 282623 զրույց, որոնցից գյուղերում՝ 9904 դասախոսություն և 160112 զրույց: 1965 թվականին հանրապետության գյուղական վայրերում ստեղծվել են 107 «մայրական դպրոցներ», ուր ուսանել են 2636 կանայք: Այժմ շրջաններում գործում են նաև 26 «Առողջության համալսարաններ»:

1961—1965 թվականներին սանիտարա-լուսավորական թեմաներով հրատարակվել է 101 անուն բրոշյուր ու գիրք՝ 883000 օրինակ ընդհանուր տպաքանակով:

Գյուղական բնակչության սանիտարական կուլտուրայի մակարդակի բարձրացման արտահայտություններից է նրա ակտիվ մասնակցությունը բնակավայրերի մաքրության ու բարեկարգման համար 1959 թվականի գարնանը հանրապետությունում ծնունդ առած մասսայական շարժմանը: Հանուն սանիտարական բարձր կուլտուրայի ծավալված այդ շարժման նախաձեռնողներն էին Վեդու շրջանի Արմաշ, Սուրենավան ու Արազդայան գյուղերի բնակիչները. «Մեր գյուղերը դարձնենք բարեկարգ ու մաքուր»,— այս էր նրանց նշանաբանը: Եվ այսօր խիստ պակասել է վարակիչ հիվանդություններով հիվանդացողների և մահացածների թիվը ու Հայաստանի ողջ տերիտորիայում հաստատվել է կայուն էպիդեմիկ վիճակ:

Նախասովետական Հայաստանում կային ընդամենը մի քանի տասնյակ բժիշկներ: Հետագա 45 տարիների ընթացքում բժիշկների թիվն անհամեմատ մեծացել է ու այժմ հասնում է 4425-ի, որոնցից 1066-ը (1920 թվականի 30 բժշկի փոխարեն) աշխատում են շրջաններում, սպասարկելով գյուղական բնակչությանը: Այս նույն ժամանակամիջոցում զգալիորեն ավելացել է միջին բուժաշխատողների թիվը: Բժշկական սպասարկման այդ կարևոր բնագավառում նախկին 97-ի փոխարեն, այժմ աշխատում են 12994 բուժքույր, ֆելդշեր, մանկաբարձ, որոնցից 5977-ը՝ գյուղական վայրերում: Այսպիսով, եթե մինչև հեղափոխությունը գյուղական վայրերում 23000 բնակչին ընկնում էր մեկ բժիշկ, ապա 1965 թվականին 1228 հոգուն է մեկ բժիշկ ընկնում:

Մինչև 1920 թվականը երկրի բնակչության (հատկապես գյուղական) ստացիոնար սպասարկումը խիստ անմխիթար էր: Այդ ժամանակաշրջանում Հայաստանի գյուղական բնակչության 87 տոկոսը ապահովված չէր հիվանդանոցային օգնությամբ, որն ավելի զգալի դարձավ դաշնակների տիրապետության վերջին տարիներին, երբ տնտեսական քայքայվածությունն ու քաղցը, ինչպես համաճարակային ու վարակիչ տարբեր հիվանդությունները, խիստ տարածված էին ողջ երկրում: Սովետական կարգերի հաստատման առաջին տարիներին տիրող անբարենպաստ տնտեսական դրության պատճառով հնարավոր չէր անմիջապես ձեռնարկել բուժ-սպասարկման նյութատեխնիկական բազայի, հիվանդանոցային լայն ցանցի ստեղծմանը: 1929 թվականից, սկսեցին կառուցել հիվանդանոցներ, նախ՝ շրջկենտրոններում, իսկ հետո կոլտնտեսություններն ու սովխոզներն սկսեցին հիվանդանոցներ կառուցել՝ իրենց եկամուտներով:

45 տարիների ընթացքում ստացիոնար մահճակալների թիվը հանրապետությունում ավելացել է 20, այդ թվում գյուղերում՝ 22 անգամ, իսկ հիվանդանոցային հաստատություններն՝ ավելի քան 7, գյուղում՝ 14 անգամ:

Եթե 1920 թվականին երկրի 780 հազար բնակչությանն ընկնում էին ընդամենը 799 մահճակալ, իսկ գյուղում (ուր ապրում էր 700000 մարդ) ընդամենը 330, բնակչությանը հիվանդանոցային մահճակալներով սպասարկելու ցուցանիշը (10000 բնակչին ընկնող մահճակալների թիվը) 4,7 էր, ապա սովետական տարիներին այն ավելացել է, հասնելով 53,6:

Հանրապետության գյուղական վայրերում հիվանդանոցային մահճակալների թիվն ավելանում էր ինչպես նոր հիվանդանոցների կառուցմամբ, այնպես էլ փոքր հիվանդանոցների խոշորացմամբ: Շրջանային ու գյուղական տեղամասային հիվանդանոցների մահճակալային կարողության ավելացումը մեծ նշանակություն ունի: Խոշոր հիվանդանոցներում հնարավոր կլինի ավելի մասնագիտացված օգնություն ցույց տալ՝ հանրապետության գյուղական վայրերում մահճակալային ֆոնդի մասնագիտացմանը զուգընթաց: Բնականաբար, մեծ փոփոխություններ են տեղի ունեցել նաև հիվանդանոցների սարքավորման ու տեխնիկական հագեցվածության գործում, որը երկար տարիներ կաղում էր:

Մինչպատերազմյան շրջանում գյուղական վայրերի հիվանդանոցային հաստատություններում չկային կլինիկական-դիագնոստիկական լաբորատորիաներ, ֆիզիո-թերապևտիկ կաբինետներ, պաթալոգո-անատոմիական բաժանմունքներ, իսկ ռենտգեն-կաբինետներ ունեին գյուղական հիվանդանոցների միայն 2,1 տոկոսը: Ժամանակի ընթացքում այդպիսի վիճակը աստիճանաբար վերացվում է, ու հիվանդանոցային հաստատությունների քանակական աճի, նրանց մահճակալային ֆոնդի ավելացման ու մասնագիտացման հետ մեկտեղ ժամանակակից բժշկական տեխնիկան մուտք է գործում շրջանային ու գյուղական հիվանդանոցները: Այժմ հանրապետության բոլոր շրջաններում կան արյան փոխներարկման կետեր ու կաբինետներ, ռենտգենհամարանքներ, բիոքիմիական ու կլինիկադիագնոստիկական լաբորատորիաներ, էլեկտրակարդիոգրամայի ու ֆիզիկական բուժման կաբինետներ:

Մայրության ու երեխաների պահպանման հարցը եղել է ո՛չ միայն մեր առողջապահության օրգանների, այլև մեր ողջ պետության ուշադրության կենտրոնում: Դրա լավագույն վկայությունն է սովետական կառավարության դեկրետը մայրության ու երեխաների պահպանման մասին (հրապարակվեց 1917 թվականի դեկտեմբերին), որով և սահմանվեց մատաղ սերնդի զարգացման ուղին: Ելնելով այդ փաստաթղթի բովանդակությունից, Սովետական Հայաստանի առողջապահության օրգանները մեծ աշխատանք են կատարել կնոջ, մոր ու մանկան առողջության պահպանման պետական պլանային միջոցառումներն իրականացնելու ուղղությամբ: Սակայն, այդ գործի դժվարությունն այն էր, որ ամեն ինչ պետք էր ի սկզբանե սկսել, որովհետև նախասովետական Հայաստանն ուներ միայն որբանոցներ տարբեր տարիքի որբերի ու անապաստան երեխաների համար, որոնց թիվը մեծացել էր պատերազմի, տնտեսական քայքայվածության, սովի ու համաճարակային հիվանդությունների պատճառով:

Մայրության ու երեխաների պահպանման գործը կազմակերպելու համար ՀՍՍՀ առողջապահության ժողկոմին կից ստեղծվեց մայրության ու երեխաների պահպանման բաժին: Սակայն, ինչպես բժիշկների, այնպես էլ միջին բուժանձնակազմի պակասի պատճառով այդ գործը ծանր վիճակում էր: Գյուղական վայրերում չկային բուժպրոֆիլակտիկ մանկական հիմնարկություններ, որոնք կարելի լինեին օգտագործել: Քանի որ ստեղծված ծանր պայմանների պատճառով երկրում շատ բարձր էր մանուկների մահացության տոկոսը, նորաստեղծ օրգանի առաջին և գլխավոր խնդիրը եղավ պայքար կազմակերպել մանուկների մահացության դեմ: Հիմնվեցին նոր տիպի հաստատություններ, մասնագիտացված բժշկական հիմնարկություններ. այդպիսիք են կանանց և մանկական կոնսուլտացիաները, որոնք սկզբնական շրջանում միասին էին (կաբնամբերքների խոհանոցով), իսկ հետագայում անջատվեցին:

Մանուկների առողջության համար մղված պայքարում մեծ նշանակություն ունեցավ գյուղական վայրերում ինչպես մշտական, այնպես էլ սեզոնային մանկամսուրների ստեղծումը, հատկապես 1931 թվականից սկսած:

Գյուղական բնակչությանը ցույց տրվող բուժպրոֆիլակտիկ օգնության բարելավման համար շատ կարևոր դեր խաղացին կոլտնտեսությունների ամրապնդումը, նոր սովխոզների կազմակերպումը, գյուղատնտեսության վերելքը:

Հայաստանում գյուղական բնակչությանը ցույց տրվող ծննդօգնությունը և մանկաբարձական-գինեկոլոգիական ողջ սպասարկումը կազմակերպվել է միայն սովետական իշխանության հաստատումից հետո: Հայտնի է, որ մինչ այդ գյուղերում չեն եղել բժշկական կադրեր ու ծննդաբերությանն օգնող հիմնարկություններ: Այժմ հանրապետության շրջաններում գործում է կանանց 49 կոնսուլտացիա, որոնք բացատրական մեծ աշխատանք են կատարում, մասնավորապես, հղի կանանց շրջանում:

Գնալով պետությունն ավելի ու ավելի մեծ միջոցներ ու հնարավորություններ է տրամադրում մայրության պահպանմանը: Սովետական իշխանության հաստատման առաջին տարիներին ծննդատներ կառուցվեցին, նախ քաղաքներում, իսկ հետո նաև շրջկենտրոններում: Բացի հատուկ կառուցված ծննդատներից, շրջաններում կառուցված նոր հիվանդանոցներում կան 4—6 մահճակալանոց ծննդաբերական բաժանմունքներ:

Գյուղական վայրերում ստացիոնար սպասարկման մյուս տեսակն են կոլտնտեսային ծննդատները, որոնք պահվում են կոլտնտեսությունների հաշվին: Առաջին կոլտնտեսային ծննդատները բացվել են 1935 թվականին Արտաշատի շրջանի Արտաշատ ու Մրգավան գյուղերում: Հետագայում ծննդատներ կազմակերպվեցին հանրապետության մյուս գյուղերում ու շրջաններում: Այդ ծննդատները սկզբում ունեին 2—4 մահճակալ ու աշխատում էին շրջանբաժնի ղեկավարությամբ: Կոլտնտեսային ծննդատների կազմակերպմամբ բարելավվեց ծննդօգնության գործը գյուղական վայրերում:

Շրջաններում ծննդօգնության ցանցի մեծացման շնորհիվ ընդլայնվում է նաև մանկաբարձական օգնությունը: Տարեցտարի ավելի շատ ծննդկաններ են ընդգրկվում մանկաբարձական օգնության ոլորտը: Այսպես, եթե 1935 թվականին 100 ծննդկանների 12,7 տոկոսն էր ընդգրկված, ապա 1939 թվականին այն հասավ 24,65-ի, իսկ 1965-ին՝ 56,2 տոկոսի:

Այս ամենի շնորհիվ, ինչպես ամբողջ հանրապետությունում, այնպես էլ գյուղում խիստ կրճատվել է հետծննդյան հիվանդացումների տոկոսը:

Նախասովետական Հայաստանի գյուղական շրջաններում անմխիթարական էր նաև արտահիվանդանոցային սպասարկումը. սպասարկման այս սիստեմում քիչ էին ամբուլատոր, պոլիկլինիկական հիմնարկությունները, չկային նաև մասնագիտացված դիսպանսերներ, շտապ օգնության կայաններ, մանկական ու կանանց կոնսուլտացիաներ և այլն: Այն ժամանակ գործող ամբուլատորիաները չունեին օժանդակ դիագնոստիկ սարքավորումներ՝ ռենտգեն-կաբինետ, կլինիկա-դիագնոստիկ լաբորատորիա, ֆիզիոթերապևտիկ սարքեր և այլն:

Սովետական կարգերի հաստատումից հետո բոլոր շրջկենտրոններում բացվեցին պոլիկլինիկաներ, ավելացավ գյուղական բուժկետերի թիվը, զգալիորեն լայնացավ ֆելդշերական և մանկաբարձական ցանցը, կազմակերպվեցին ամբուլատորիաներ: Այժմ բժշկական օգնության կարիք ունեցող հիվանդները կարող են օգտվել ամբուլատորիայից, տուն հրավիրել բժիշկ, ֆելդշեր, մանկաբարձ:

Ինչպես հայտնի է, սովետական իշխանության հաստատման ժամանակ Հայաստանի գյուղական վայրերում գործում էին 5 բժշկական ու 13 ֆելդշերական կետ, իսկ 1965 թվականին գյուղական վայրերում ամբուլատոր-պոլիկլինիկային հիմնարկությունների թիվը հասնում էր 240-ի: Այժմ Հայաստանի շրջաններում 13 ֆելդշերական կետի փոխարեն ստեղծված է ֆելդշերական-մանկաբարձական լայն ցանց, որի կետերի թիվը հասնում է 640-ի:

Մինչհեղափոխական Հայաստանի գյուղական բնակչությունը ապահովված չէր դեղորայքով: Գյուղերում գործում էին 8 մասնավոր դեղատուն, որոնք չափազանց պրիմիտիվ և աղքատիկ էին: Գյուղի բնակիչները չէին կարող ստանալ անհրաժեշտ դեղորայք՝ դրանց թանկության, հաճախ էլ դեղատան հեռավորության պատճառով: Սովետական կարգերի հաստատումից հետո բոլոր դեղատները ազգայնացվեցին: Եվ այժմ ո՛չ միայն շրջկենտրոնները, այլև շատ բնակավայրեր ունեն իրենց դեղատները: Բնակչությանը ցույց տրվող դեղորայքային օգնության բարելավման մասին է վկայում դեղատնային ապրանքների մշտական աճը, հանրապետության դեղատնային վարչության դրամաշրջանառության ավելացումը: Միայն անցյալ տարի այդ ապրանքների վաճառքը կազմել է 7,184 300 ռուբլի:

Դեղորայքային սպասարկումը գյուղական բնակչությանը մոտեցնելու գործում մեծ դեր են կատարել ու կատարում են գյուղերում բացված դեղատնային կետերը, որոնք սկսեցին գործել 1939 թվականից:

Դրանց դերը հատկապես նշանակալի է այնտեղ, ուր դեղատները հեռու են բնակավայրերից: Այժմ նույնիսկ հանրապետության ամենահեռավոր շրջաններում դժվար է գտնել մի գյուղ, ուր չգործի դեղատնային կետ: Այսպիսով, եթե 1939 թվականին գյուղական վայրերում գործում էին ընդամենը 9 դեղատնային կետ, ապա այժմ դրանց թիվը հասել է 524-ի, իսկ 8 դեղատան փոխարեն գործում են 130-ը:

Գյուղական վայրերում բժիշկների թվի ավելացման շնորհիվ բնակչությունն սկսել է ավելի շատ օգտագործել անհրաժեշտ դեղորայք ու պրոֆիլակտիկ միջոցներ: Այս ամենը ցույց է տալիս, որ բարձրացել է բնակչության կուլտուրան, մեծացել են նրա պահանջները սանիտարական հիգիենայի նկատմամբ, ավելի խոր է գիտակցվում պրոֆիլակտիկ միջոցառումների անհրաժեշտությունը: Մոտակա տարիներին գյուղական վայրերում կբացվեն նոր դեղատներ, ավելի կլայնանա դեղատնային կետերի ցանցը: Սրանք դեղատնային սպասարկման կուլտուրայի բարձրացման, դեղորայքային օգնությունը գյուղական բնակչությանը մոտեցնելու հետ մեկտեղ, անկասկած, կնպաստեն հանրապետության գյուղական բնակչության բուժսպասարկման բարելավմանը:

Այսպիսով, սովետական իշխանության 45 տարիների ընթացքում մեծ հաջողություններ են ձեռք բերվել մեր հանրապետության գյուղական բնակչության աշխատանքի ու կենցաղի, բուժսպասարկման, մոր և մանկան պահպանման գործում: Այս ամենն իր դրական ազդեցությունն է գործել բնակչության առողջության, երկարակեցության ու բնական աճի վրա: Այդ փոփոխությունների շնորհիվ մեզ մոտ 2,7 անգամ ավելացել է բնակչության թիվը, մեծ չափով պակասել է ընդհանուր մահացությունը, ինչպես նաև մանուկների մահացությունը: Կյանքի միջին տևողությունը 35—40-ից հասել է 70—72 տարվա:

Զգալիորեն նվազել են ընդհանուր հիվանդությունները, վերացել նախկինում հանդիպող բոլոր համաճարակային հիվանդությունները (խոլերան, ծաղիկը, ժանտախտը, մալյարիան), նվազագույնի են հասել վարակիչ հիվանդությունները, հետծննդյան հիվանդացումները, ինչպես նաև մայրերի ու նորածինների մահացությունը:

Այս բոլորը սովետական առողջապահության բարեբեր սիստեմի արդյունք են:

Ա. ՀԱՅՐԻՅԱՆ
Վեդու շրջանի Արմաշի հիվանդանոցի գլխավոր բժիշկ





## ԱՐԳԱՍԱՎՈՐ ՄՏԱԶԳԱՑՄԱՆ ՀԱԶՈՂ ԱՎԱՐՏԸ [1]

*Տակավին մի քանի տասնամյակ առաջ կարելի էր սովետահայ մամուլում հանդիպել հատ ու կենտ հոդվածների, որոնք տարբեր առումներով շոշափում էին հայ փիլիսոփայական մտքի զարգացման լոկ մի քանի հարցեր: Դեռևս կենդանի են հեղափոխական սերնդի որոշ ներկայացուցիչներ, որոնք սովետական կարգերի ամրապնդման տարիներին իրավամբ երազում էին հրապարակի վրա տեսնել հարազատ ժողովրդի, ինչպես և նրա հարուստ կուլտուրայի նոր, մարքսիստական պատմության ծանրակշիռ երկասիրություններ:*

*Հիրավի, անցած քառասունհինգ տարիներում մեծ քայլեր են արված այդ ասպարեզում: Հայ ժողովրդի անցյալի ժառանգության ճոխ շտեմարանն ամենայն բարեխղճությամբ հետազոտվում, մշակվում ու լուսաբանվում է սովետահայ գիտնականների կողմից: Եվ ահա հրապարակի վրա է փիլիսոփայական գիտությունների վաստակած դոկտոր-պրոֆեսոր Հենրի Գաբրիելյանի «Հայ փիլիսոփայական մտքի պատմություն» խորագրով քառահատոր ստվարածավալ աշխատությունը:*

*Նախապես ասենք, որ մեր ժողովրդի փիլիսոփայական մտքի պատմությունն արժանացել է որոշ մտածողների սևեռուն ուշադրությանը: Այդ բնագավառում ակնառու վաստակ ունի փիլիսոփայական գիտությունների դոկտոր Վ. Չալոյանը, որը մանրակրկիտ և քրտնաջան աշխատանքով ստեղծեց հայ միջնադարի (վաղ և ուշ ժամանակաշրջանների) փիլիսոփայության պատմության ծավալուն մենագրությունը: Փիլիսոփաներ Սեն Արևշատյանը, Գ. Գրիգորյանը, Գ. Խոյեցյանը, Հ. Շաքարյանը, Ա. Խաչատրյանը, Է. Հարությունյանը և ուրիշներ մշակեցին հայ ժողովրդի փիլիսոփայության պատմության առանձին պրոբլեմներ, հատվածներ և ստեղծեցին մի շարք հետաքրքրական գործեր:*

*Հ. Գաբրիելյանի աշխատության առավելությունն այն է, որ դա մի ամբողջական գործ է, որտեղ ընդգրկված է փիլիսոփայական մտքի պատմությունը՝ սկզբից մինչև մեր օրերը: Ստեղծելով ծավալուն, ամբողջական գործ, հեղինակը հաջողությամբ նշել է հայ փիլիսոփայական մտքի հիմնական նշանաձողերը, վեր հանել այն մտածողներին, որոնք այդ մտքի ստեղծողներն են: Նա տվել է հայ փիլիսոփայական մտքի պարբերաշրջանները, վերլուծել հիմնական ուղղությունները ու արտացոլել նրանց միջև ծնվող պայքարը:*

*Այդ բոլորի հետ միասին իր ստվար ուսումնասիրության մեջ մարքսիստորեն ամփոփելով հայ ժողովրդի փիլիսոփայական մտքի հարուստ պատմությունը, նա, միաժամանակ, արժեքավորել է ականավոր մտածողների փիլիսոփայական աշխատությունները, քննադատորեն վերլուծել դրանք, բացահայտել այդ մտածողների սոցիալ-դասակարգային պատկանելությունը: Նրան հաջողվել է գիտականորեն ցույց տալ հայ փիլիսոփայության պատմության մեջ իդեալիզմի դրսևորման ձևերը և նրա դեմ մատերիալիզմի մղած պայքարի նվաճումները:*

*Հայ փիլիսոփայական ինքնատիպ միտքը բազմերանգ է, հարուստ պատմական դեմքերով և, ուրեմն, շատ հնարավոր առանձին մտածողների կամ նրանց աշխատությունների առանձին դրույթների, մտքերի սխալ մեկնաբանումը: Կարե-*

[1] Հ. Գաբրիելյան, Հայ փիլիսոփայական մտքի պատմություն, *4-րդ հ. «Հայաստան» հրատ., 1965 թ.,*

շատ ավելի ակտիվ, հարուստ և բազմերանգ: Հեղինակը, շարադրելով Սովետական Հայաստանի փիլիսոփայական մտքի զարգացումը, նշում է այն պրոբլեմները, որոնցով զբաղվել են մեր փիլիսոփաները, հիմնավորում, թե ինչու պետք է առաջադրվեին այդ պրոբլեմները և բացատրում դրանց մշակման ու լուսաբանման գործում կոմունիստական կուսակցության օգնությունն ու ղեկավարությունը:

Աշխատության վերջին՝ 6-րդ և 7-րդ գլուխները նվիրված են ժամանակակից սփյուռքահայ փիլիսոփայությանը, վեր են հանված փիլիսոփայական երկու հակադիր ուղղություններն ու դրանց միջև մղվող պայքարը:

Գրախոսվող հատորում տեղ են գտել նաև մի շարք թերություններ, որոնց մեծ մասը բացատրվում է աշխատության ինքնատիպությամբ այն առաջնեկը, սկիզբն է շնորհակալ մի գործի, որն այսուհետև նույնպես պետք է գտնվի սովետահայ փիլիսոփաների ուշադրության կենտրոնում:

Մեր կարծիքով, թերություն պետք է համարել այն, որ գրքի հեղինակը շարադրելով XX դարի հայ փիլիսոփայական մտքի պատմությունը՝ չի առաջնորդվել կառուցվածքային մեկ սկզբունքով: Հատորի առաջին—չորրորդ գլուխների շարադրման համար ելակետ է ծառայել հայ իրականության մեջ իր ժամանակին գործող կուսակցությունների պաշտպանած փիլիսոփայությունը, հաջորդ գլուխների նյութը շարադրված է ըստ փիլիսոփայական հիմնական ուղղությունների: Լավ և ճիշտ կլիներ, եթե հեղինակը հատորում ընդգրկված ողջ նյութը շարադրեր համաձայն մեկ սկզբունքի՝ փիլիսոփայության մեջ գոյություն ունեցող հիմնական ուղղությունների, որի հիման վրա էլ կդրսևորվեին կուսակցություններն ու նրանց պաշտպանած փիլիսոփայական ուղղությունը: Այդ հնարավորություն կտար հեղինակին՝ խուսափելու քաղաքականության հետ կապված ծանրաբեռնվածությունից և այդ կապակցությամբ էլ՝ պատմական որոշ անճշտություններից:

Փիլիսոփայությունը բոլոր գիտություններից ավելի է կապված քաղաքականության հետ, բայց այն և վերջինս չեն նույնանում: Այդ նշանակում է, որ փիլիսոփայության, մասնավորապես, փիլիսոփայության պատմության սերտ կապը կուսակցությունների վարած քաղաքականության հետ ցույց տալիս կարևոր է չափի զգացումը:

Թերություններից մեկը, որն անհրաժեշտ ենք համարում նշել, այն է, որ քիչ տեղ է հատկացվել սովետահայ փիլիսոփայական մտքին: Հատորի մոտ 500 էջից սովետահայ փիլիսոփայությանը հատկացվել է ընդամենը 40-ը և այդ պատճառով էլ այն շարադրվել է մակերեսորեն և անբավարար: Հ. Գաբրիելյանը հաճախ նշում է միայն պրոբլեմը և դրանով զբաղվողներին: Նա չի անդրադառնում այն հարցերին, թե այդ հեղինակներն ինչպե՞ս են մշակել կամ լուծել առաջ քաշած պրոբլեմները, ո՞րն է այն նորը, որ տրված է նրանց գործերում: Այսպես, «Հատկապես պետք է նշել այն փաստը,—գրում է նա,—որ հետզհետե շատանում է հայ փիլիսոփայության պատմության նոր շրջանով, մասնավորապես հայ մարքսիստական մտքի պատմությամբ զբաղվողների թիվը: Այդ հարցերին նվիրված առանձին հետազոտություններ են հրապարակել Ն. Գասպարյանը, Ս. Ղալթաղչյանը, Հ. Աղաջանյանը, Լ. Աբրահամյանը, Ա. Բաբախանյանը, Տ. Պ. Ալեքսանյանը և ուրիշներ» (էջ 376): Գաբրիելյանին չի զբաղեցնում այն, թե վերոհիշյալ հեղինակները ինչպե՞ս են կատարել իրենց առջև դրված խնդիրները, ի՞նչ հարցերում են հակադրվում միմյանց, ո՞րն է գնահատելին և որն անընդունելին նրանց գործերում և այլն: Այդպիսի տեղեր շատ կան: Հակառակ դրան հեղինակն ավելի շատ է ծավալվում, երբ գրում է սփյուռքահայ փիլիսոփայության մասին, որին նվիրել է 100 էջից ավելի: Անշուշտ, սովետական շրջանի հոգևոր հարուստ կուլտուրայի զարգացման օրինաչափությունների վերհանումը շատ ավելի ակտուալ ու կարևոր գործ է: Հատորում տեղ են գտել նաև այլ կարգի թերություններ:

Հենրի Գաբրիելյանի աշխատությունը սկիզբն է այն մեծ գործի, որ ծավալվելու է հետագայում: Այն արժեքավոր մի ներդրում է հայագիտության մեջ, որովհետև այդ աշխատության չորս հատորներով արդեն ստեղծվել է հայ փիլիսոփայական մտքի պատմությունը որպես գիտություն, որն օգտակար դեր է խաղալու փիլիսոփայական պատմագիտության բնագավառում:

Ն. ԳԱՍՊԱՐՅԱՆ
*Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, դոցենտ*

# ԵՐԲ ԱՆՏԵՍՎՈՒՄ ԵՆ ՎԱՎԵՐԱԳՐԵՐԸ*

Չեխոսլովակիայի ազատագրության համար քաջաբար մարտնչած հայ պարտիզան Արտեմ Պետրոսյանը, որ գրեթե մոռացության էր մատնված, չեխ բարեկամների շնորհիվ արժանացավ ընդհանուր ուշադրության, մամուլը լայնորեն խոսեց նրա մասին: Թե՛ Չեխոսլովակիայում և թե մեզ մոտ խիզախ պարտիզանի անունն իրավամբ մեծ համբավ ստացավ: Լենինականի նորակառույց փողոցներից մեկը կոչվեց նրա անունով: Լենինականի քաղաքային սովետի նախաձեռնությամբ ու որոշմամբ հուշարձան դրվեց նրա գերեզմանին: Հայկական ու չեխական մի շարք դպրոցների պիոներական դրուժինաներ կոչվեցին նրա անունով, իսկ Լենինականի № 10 դպրոցում, ուր նա սովորել էր, հիմնվեց թանգարան, որն այցելում են հազարավոր մարդիկ: Արտեմը նաև էկրան բարձրացավ, և «Բարև, Արտեմ» վավերագրական ֆիլմը համամիութենական կինոհանդիսատեսին ներկայացրեց հայ ժողովրդի այդ արժանավոր զավակին: Վերջերս «Հայաստան» հրատարակչությունը լույս ընծայեց Ալ. Հովհաննիսյանի և Ա. Ռուսակի «Մորավիայի արծիվը» գիրքը:

Ժողովուրդը հերոս մարտիկին արժանին է հատուցում, նրա օրինակով դաստիարակում երիտասարդությանը, ամրապնդում հերոսական ավանդությունները: Ինչ խոսք, որ ֆիլմի ստեղծողները (կինոռեժիսոր Գ. Մելիք-Ավագյան) և «Մորավիայի արծիվը» գրքի հեղինակները շնորհակալ քայլ են կատարել: Նրանք հաղթահարել են մեծ դժվարություններ, նպաստել խիզախ պարտիզանի հիշատակի հավերժացմանը, լավ գործ են ձեռնարկել:

Այդ ամենն ուրախություն է պատճառում բոլորին: Սակայն ուրախությունը լիասիրտ կլիներ, եթե այդ մեծ ու շնորհակալ գործն անթերի արվեր, եթե Արտեմ Պետրոսյանի կյանքն ու սխրագործությունները լուսաբանվեին պատշաճ ճշմարտացիությամբ: Ահա այս է, որ տվյալ դեպքում հուզում, մտահոգում է մեզ:

Կարողացե՞լ են արդյոք ֆիլմի և գրքի հեղինակները տալ Արտեմ Պետրոսյանի կյանքի ողջ արժեքավորը, հարազատ մնալ իրականությանը:

Նախ և առաջ՝ «Բարև, Արտեմ» ֆիլմի մասին, որ էկրան է հանվել 1965 թվականին:

Արտեմ Պետրոսյանի կյանքին ու սխրանքներին հարևանցիորեն ծանոթ հանդիսատեսը ֆիլմը դիտելուց հետո կինոդահլիճից հեռանում է՝ համոզված, որ իր տեսածն ու լսածը լիովին ճշմարտություն են, որ վավերագրական այդ ֆիլմում ոչ մի կեղծ երանգ չկա: Բայց այլ է, երբ ֆիլմը դիտում է պատերազմի բովով անցած վետերանը, վերարտադրվող իրադարձություններին ու դրվագներին լավատեղյակ մեկը, հերոս պարտիզանին և նրա ջոկատին վերաբերող վավերագրերին ծանոթ հանդիսատեսը: Այս դեպքում կինոդահլիճը նա թողնում է ծանր տրամադրությամբ:

Այսպես, պարտիզանական շարժման նշանավոր կազմակերպիչ, Սովետական Միության հերոս, գեներալ-մայոր Ա. Ն. Սաբուրովը «Советский экран» ամսագրի այս տարվա երկրորդ համարում վերարտադրված և ֆիլմում ցուցադրվող մի լուսանկարում տեսնում է շատ ծանոթ, հարազատ մի տեսարան: Սովետական պարտիզանական շտաբում է հիտլերյան զորամասերի հետ մեր դեմ ուղարկված չեխական զորամասի նախկին հրամանատար, հետագայում Սովետական Միության հերոս Յան Նալեպկան: Ծանոթ լուսանկարում ինքը՝ գեներալն է և էսէսականի համազգեստով Յան Նալեպկան:

Մինչ գեներալը վերհիշում էր անմոռանալի այդ օրը, լսվեցին հաղորդավարի խոսքերը.

— Արտեմի լուսանկարը՝ էսէսականի համա-

* Ալ. Հովհաննիսյան, Ա. Ռուսակ.— Մորավիայի արծիվը, Ե., Հայաստան հրատ., 1966 թ., 207 էջ:

մինչև վերջ չի հասցվել, քանի որ այդ բարդ պրոբլեմի լուծմամբ պետք է զբաղվեն տարբեր պրոֆիլների մասնագետներ՝ տնտեսա-աշխարհագրագետներ, տնտեսագետներ, քաղաքաշինարարներ, սոցիոլոգներ, հիգիենիստներ և ուրիշներ:

Հայկական ՍՍՀ տնտեսական շրջանացման շուրջը վերնագրով Լ. Վալեսյանի հոդվածը «Լենինյան ուղիով» ամսագրում տպագրված է առաջարկության կարգով: Այդ հարցին է անդրադարձել նաև Գ. Ավագյանը («Լենինյան ուղիով», 1966, № 1): Նա քննադատելով հանրապետության տնտեսական շրջանացման վերաբերյալ Լ. Վալեսյանի առաջարկած սխեման, հանգում է այն եզրակացության, որ Հայաստանի պայմաններում նպատակահարմար չէ կոմպլեքսային տնտեսական շրջանացում անցկացնել. նրա կարծիքով գիտապրակտիկ նշանակություն կունենա ճյուղային շրջանացումը, որն իր հերթին երևան կհանի առանձին կոմպլեքսային հանգույցներ:

Իհարկե Լ. Վալեսյանի առաջարկած տնտեսական շրջանացման սխեման անթերի չէ: Մասնավորապես դժվար է համաձայնել հեղինակի հետ, երբ նա կառուցվելիք Սևան-Աղստև երկաթուղու հատկանիշով միավորում է տարբեր պարամետրեր ունեցող երկու շրջաններ՝ Սևանա լճի և Աղստև գետի ավազանները, դեռ դրան էլ շաղկապում Հրազդանի արդյունաբերական հանգույցը: Այնուհանդերձ, Լ. Վալեսյանը ճիշտ նպատակ է հետապնդում, երբ սրում է այդ պրոբլեմի հրատապությունը և համարձակորեն առաջ քաշում այն՝ չվախենալով դժվարություններից, կանգ չառնելով դրանց առջև: Հենց Հայաստանի տնտեսական աշխարհագրական պայմանները կոմպլեքսային տնտեսական շրջանացման պահանջ են առաջադրում:

Գ. Ավագյանի հոդվածը, ընդհանրապես, սրելով դժվարությունների հարցը, փաստորեն առաջարկում է հրաժարվել այդ պրոբլեմը լուծելուց: Հոդվածում ամբողջ հարցը հանգեցվում է Հայաստանի տերիտորիայում արդյունաբերական ձեռնարկությունների տեղաբաշխման և գյուղատնտեսության մասնագիտացման վերաբերյալ ընդհանուր որոշումների ընդունմանը, միաժամանակ կասկած հարուցելով այն գործոնների ընտրության մասին, որոնք Լ. Վալեսյանը դրել է կոմպլեքսային տնտեսական շրջանները որոշելու հիմքում: Որ հեղինակի նշած գործոնները մեծ չափով որոշիչ են, դա կասկած չի հարուցում, բայց միայն տնտեսական և տրանսպորտային (կապի) հատկանիշներով շրջանացում կատարելն էլ ամենևին բավարար չէ: Տնտեսական շրջանացման և, մասնավորապես, օբյեկտիվորեն գոյություն ունեցող տնտեսական ռեգիոնները երևան հանելու համար հարկավոր է հաշվի առնել բոլոր գործոնների կոմպլեքսը՝ տնտեսա-աշխարհագրականը, տնտեսականը, քաղաքաշինականը, տրանսպորտայինը, պատմա-սոցիոլոգիականը. ոչ պակաս կարևոր են նաև բնական արգելափակոցներն ու բնագծերը:

Վերը արդեն շոշափվեց Հայաստանի պայմաններում ճյուղային շրջանացման աննպատակահարմարության հարցը: Բացի այդ, ճյուղային շրջանացմանը միշտ նախորդում է կոմպլեքսային շրջանացումը և այդ այնքան ժամանակ, որքան որոշիչ գործոնների կոմպլեքսը գտնվում է անորոշ (ամորֆ) վիճակում:

Ուկրաինական ՍՍՀ-ում երկար ժամանակ համառ կերպով կատարվում էր ճյուղային շրջանացում, որի համար կազմվում էին ճյուղային-շրջանային հատակագծեր: Եվ ի՞նչ, քաղաքաշինության պահանջներից և գիտապրակտիկ նպատակահարմարությունից ելնելով այնտեղ անցան (1963 թվականից) կոմպլեքսային տնտեսական շրջանացման: 27 հազ. քառ. *կմ* տերիտորիա ունեցող Զապորոժիեի շրջանային հատակագծի փորձառական կոմպլեքսի նախագծի հիման վրա մի ամբողջ շարք հետևություններ են արվել հօգուտ կոմպլեքսային տնտեսական շրջանացման[1]:

Ճյուղային շրջանացումն ունի պրակտիկ (բայց ոչ-գիտական) նշանակություն և այն էլ այնպիսի շրջաններում, ուր շրջանագոյացնող գործոնները դեռևս չեն դրսևորված և ուր մեծ տարածությունների վրա (ինչպիսիք ունի ՌՍՖՍՀ-ն) գոյություն ունեն նույնանման պայմաններ: Այսպես, օրինակ, Պերմի մարզի Կոմի-Պերմյացկի ազգային օկրուգն ունի 33 հազ. քառ. կիլոմետր տարածություն, 82 տոկոս գյուղական բնակչությամբ, մեկ քառ. կիլոմետրի վրա 6,9 հազար բնակչության խտությամբ: Կամ թե՝ Մուրմանսկի մարզում, որն ունի 145 հազար քառ. կիլոմետր տարածություն, քաղաքային բնակչությունը կազմում է ամբողջ բնակչության 96 տոկոսը: Բնական է, որ այդպիսի շրջանները կարող են միայն ճյուղային լինել, առաջին դեպքում գյուղատնտեսական, երկրորդ դեպքում՝ արդյունաբերական:

Մինչ այժմ առաջարկված բոլոր սխեմաներից լավագույնը կարելի է համարել Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի հրատարակած Հայկական ՍՍՀ ատլաս-ում զետեղվածը (1961 թ.), որը մեծ չափով համատեղում է գյուղատնտեսության մասնագիտացման սխեման: Այդ սխեմաները հիմք պետք է ծառայեն վերջնական (որոշակի, բայց մեծ ժամկետում) տնտեսական շրջանացման, ինչպես և ռեգիոնալ բաժանման կատարելագործման ու տնտեսական ռեգիոնները երևան հանելու համար:

Այս տեսակետից ուշադրության է արժանի Լ.

---

[1] *Տե՛ս Вопросы градостроительства*, вып. IV, Киев.



Վալեսյանի առաջարկությունը Շիրակի տնտեսական շրջանի սահմանները ճշգրտելու, մասնավորապես Թալինի շրջանի՝ ջրանցքից վեր ընկած հողերը հիշյալ տնտեսական շրջանից հանելու վերաբերյալ: Բայց, մյուս կողմից՝ քաղաքաշինության նկատառումներից ելնելով, շրջանային կենտրոն Վերին Թալինը առավելապես ձգտում է դեպի Երևան, քան Լենինականի կամ՝ Սպիտակի շրջանը, որն ունի Գուգարքի (և ոչ Ախուրյանի) շրջանի նման բնակլիմայական, կենցաղային, գյուղատնտեսական և ուրիշ գործոններ, ձգտում է դեպի Կիրովական:

Ի դեպ, ալրաղաց կոմբինատը և մակարոնի ֆաբրիկան Կիրովական քաղաքից փոխադրեցին Սպիտակ: Հետագայում Սպիտակը դառնում է արդյունաբերական օջախ և հետևաբար մտնում Լոռի-Փամբակի տնտեսական շրջանի արդյունաբերական մասնագիտացման սիստեմի մեջ:

Խիստ վիճելի է այնպիսի լայնատարած տնտեսական շրջանի կազմակերպումը, ինչպիսին Զանգեզուրն է, որի առանձին բաղկացուցիչ մասերն ունեն տնտեսա-աշխարհագրական տարբեր բնույթի պայմաններ: Չէ՞ որ Արփա գետի հովտին հարող շրջանը ոչինչ ընդհանուր բան չունի Որոտան և Ողջի գետերի հովիտների շրջանների հետ: Բացի այդ, դրանք բաժանված են բնական արգելափակոցներով ու բնագծերով, տարբեր են նաև նրանց բնակլիմայական պայմանները, գյուղատնտեսության և արդյունաբերության մասնագիտացման ուղղությունները: Մի դեպքում բնորոշը սննդի արդյունաբերությունն է, մյուս դեպքում՝ լեռնահանքային և վերամշակող արդյունաբերությունը: Հնարավոր և նպատակահարմար է այն բաժանել երկու տնտեսական շրջանների՝ Վարդենիսի և բուն Զանգեզուրի:

Տնտեսական շրջանացման պրոբլեմի լայն քննարկումը, նույնիսկ սխալ, ոչ-ճիշտ առաջարկությունների դեպքում էլ չի կարող օգտակար նյութ չտալ այն մարդկանց, ովքեր գիտականորեն պետք է հիմնավորեն շրջանների բաժանումը: Ժամանակն այլևս չի հանդուրժում այդ պրոբլեմի լուծման երկար հետաձգում: Այն պետք է լուծվի բեկուց և առաջիկա քսան տարում, այն հաշվով, որ մեծ հեռանկարում արտադրուժերի զարգացումն ու տեղաբաշխումը հնարավոր լինի կատարել տնտեսական շրջանացման սխեմաների հիման վրա:

Հեռանկարում շրջանացման մեթոդների հետագա զարգացումն ու կատարելագործումը, քաղաքաշինության սիստեմի զարգացումը և կուլտուրական լանդշաֆտի յուրացումը հնարավորություն կընձեռեն ստեղծելու տնտեսական և քաղաքաշինական ռեգիոնների սիստեմ:

Պ. ԹՈՒՄԱՆՅԱՆ
Հայկական ՍՍՀ պետպլանի քաղաքների զարգացման գծով գլխավոր մասնագետ



# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ԱՇԽԱՐՀՆ ԱՆՑՆՈՂ ՏԱՐՈՒՄ

*1966 թվականը մարդկությունը ճանապարհ է դնում միջազգային բարդ պայմաններում։ Համաշխարհային հասարակայնությունը մեծ անհանգստությամբ է հետևում, թե ինչպես ամերիկյան ռազմամոլները ավելի ու ավելի ընդլայնում են ագրեսիվ պատերազմը Վիետնամի, Լաոսի, Կամբոջայի ժողովուրդների դեմ, միջամտում Լատինական Ամերիկայի, Աֆրիկայի և Մերձավոր ու Միջին Արևելքի մի շարք երկրների գործերին։ Վաշինգտոնն ամեն կերպ ձգտում է սրել միջազգային հարաբերությունները Եվրոպայում և ջանքեր չի խնայում Բոննի ռևանշիստներին միջուկային զենք տալու գործում։ Դրա հետ մեկտեղ ժողովուրդներն ակտիվացնում են պայքարը հանուն խաղաղության, սոցիալական առաջադիմության և միջազգային անվտանգության։ Համախմբում են իրենց շարքերը արդիականության երեք հիմնական հեղափոխական ուժերը՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը և կապիտալիստական երկրների բանվոր դասակարգը։ Համաշխարհային մասշտաբով ծավալվում է հսկայական մենամարտ բարի կամքի մարդկանց և պատերազմի հրձիգների միջև։ Փորձենք համառոտակի հանրագումարի բերել 1966 թվականի միջազգային կյանքի կարևոր իրադարձությունները և մեկնաբանել նրանց զարգացման ուղիները։*

### ԵՐԵՔ ՄԱՅՐՑԱՄԱՔՆԵՐԻ ՀԱՄԱԺՈՂՈՎԸ

*1966 թվականի հունվարի 3-ից մինչև 15-ը Կուբայի մայրաքաղաք Հավանայում տեղի ունեցավ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ավելի քան 100 երկրների ժողովուրդների համերաշխության կոնֆերանսը։ Կոնֆերանսին մասնակցեց նաև սովետական պատվիրակությունը։ Հավանայի կոնֆերանսը կարևոր ուղենիշ հանդիսացավ իմպերիալիզմի դեմ, քաղաքական, տնտեսական և ազգային ազատության համար մղվող պայքարում բոլոր ժողովուրդների ջանքերի միավորման ճանապարհին։*

*Պատմության մեջ առաջին անգամ հրավիրվեց այնպիսի կոնֆերանս, որտեղ երեք մայրցամաքների առաջադիմական շարժման ներկայացուցիչները մանրամասնորեն քննարկեցին և համաձայնեցրին այն միասնական միջոցառումները, որոնք իրականացվելու են իմպերիալիզմի, գաղութակալության և նոր գաղութակալության դեմ մղվող պայքարում։ Հավանայի կոնֆերանսը դրեց երեք մայրցամաքների ժողովուրդների համերաշխության ընդհանուր շարժման ստեղծման հիմքը։ Կոնֆերանսը քննարկեց հրատապ այն բոլոր հարցերը, որոնք հուզում են ժողովուրդներին։ Նա զբաղվեց այնպիսի ուղիների որոնումներով, որոնք հնարավորություն են տալիս հաղթանակով պսակելու իրենց ազատագրության համար ժողովուրդների մղած պայքարը։*

*Գաղութարարները ձգտում են մեկուսացնել Լատինական Ամերիկան հակաիմպերիալիստական պայքարի ընդհանուր հոսանքից, պատնեշ ստեղծել Լատինական Ամերիկայի ժողովուրդների և նրանց իսկական դաշնակիցների միջև։ Այժմ այդ պատնեշը փշրվում է։ Երեք մայրցամաքների ժողովուրդներին ավելի ու ավելի է մերձեցնում նրանց շահերի ընդհանրությունը։ Դա ի հայտ է գալիս Կուբայի, Դոմինիկյան հանրապետության, Վիետնամի դեմ ամերիկյան իմպերիալիստների կողմից հրահրված ագրեսիվ գործողությունների միահամուռ դատապարտման մեջ։ Երեք մայրցամաքների ժողովուրդները, չնայած իրենց երկրների պայմանների առանձնահատկություններին, միանում են ընդհանուր գործողությունների համար։ Այդ միասնությունն արտահայտվեց նաև Հավանայի կոնֆերանսի օրակարգում, որի մեջ տեղ գտան ինչպես իմպերիալիզմի և գաղութատիրության դեմ պայքարի ընդհանուր հարցեր, այնպես էլ միասնական գործողություններ Վիետնամում, Դոմինիկյան հանրապետությունում, Հարավային Ռոդեզիայում, համերաշխության ամրապնդումը տնտեսական, սոցիալական և մշակույթի ասպարեզներում։ Հավանայի կոնֆերանսին մասնակցեցին նաև միջազգային այնպիսի մասսայական կազմակերպություններ, ինչպիսիք են՝ պրոֆմիությունների համաշխարհային ֆեդերացիան, խաղաղության համաշխարհային խորհուրդը, երիտասարդության և կանանց ֆեդերացիաները։*

*Սակայն Հավանայի կոնֆերանսի աշխատանքում եղան նաև լուրջ դժվարություններ։ Իմպերիալիստների համար շատ ցանկալի էր, որպեսզի Հավանայի կոնֆերանսն արժանանար նույն ճակատագրին, ինչ որ Ասիայի և Աֆրիկայի երկրների պետությունների և կառավարությունների երկրորդ կոնֆերանսը, որը պետք է հրավիրվեր Ալժիրում՝ 1965 թ. նոյեմբերի 5-ին, և որը հետաձգվել է անորոշ ժամկետով։ Կոնֆերանսի մասնակիցների միջև կային տարաձայնություններ, որոնք միանգամայն հասկանալի են, եթե հաշվի առնենք մասնակից երկրների սոցիալական կառուցվածքը, տնտեսական և մշակութային զարգացման մակարդակը, ազգային սովորությունները և այլն։ Սակայն արևմտյան մամուլը, իհարկե, ուռցնում էր կոնֆերանսի մասնակիցների միջև եղած տարաձայնությունները։ Այնուամենայնիվ, Ալժիրի անհաջողություններից ժողովուրդները լուրջ դասեր վերցրին։ Համաշխարհային հասարակայնությունն ի սրտե ողջունեց Հավանայի համաժողովը, որը լուրջ քայլ հանդիսացավ ընդհանուր խաղաղության և անվտանգության ապահովման ճանապարհին։*

### ՏԱՇՔԵՆԴԻ ԲԱՆԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆԸ

*Այս տարվա սկզբին Տաշքենդը դարձավ միջազգային նորությունների կարևոր աղբյուրներից մեկը։ Ինչպես հայտնի է, այնտեղ հանդիպեցին և բանակցություններ ունեցան Հնդկաստանի պրեմիեր-մինիստրը և Պակիստանի պրեզիդենտը։ Այդ բանակցություններն ավարտվեցին հաջողությամբ։ Ստորագրվեց դեկլարացիա, որով Հնդկաստանի պրեմիեր-մինիստրը և Պակիստանի պրեզիդենտը համաձայնեցին, որ երկու կողմերը պետք է բոլոր ջանքերը գործադրեն Հնդկաստանի և Պակիստանի միջև բարիդրացիական հարաբերություններ ստեղծելու համար՝ ՄԱԿ-ի կանոնադրությանը համապատասխան։ Նրանք հաստատեցին ուժի չդիմելու և իրենց վեճերը խաղաղ միջոցներով լուծելու իրենց պարտավորությունը։ Նրանք գտան, որ երկու երկրների միջև լարվածությունը չի համապատասխանում ժողովուրդների շահերին։ Հաշվի առնելով այդ հանգամանքը, քննարկվեցին ինչպես Ջամմուի և Քաշմիրի, այնպես էլ մյուս վիճելի հարցերը։*

*Հնդկաստանի պրեմիեր-մինիստրը և Պակիստանի պրեզիդենտը պայմանավորվեցին, որ երկու երկրների ամբողջ զինված անձնակազմը 1966 թ. փետրվարի 25-ից ոչ ուշ ետ կտարվի այն դիրքերը, որոնք նրանք գրավում էին մինչև 1965 թ. օգոստոսի 5-ը (ռազմական գործողությունների սկիզբը), պահպանելով կրակի դադարեցման պայմանները։ Նրանք պայմանավորվեցին, որ չեն խրախուսի միմյանց դեմ ուղղված ոչ մի պրոպագանդա։ Վերականգնվեցին դիվանագիտական, տնտեսական ու մշակութային նորմալ հարաբերությունները։ Վերադարձվեցին ռազմագերիները։ Հետագայում կողմերը շարունակեցին իրենց հանդիպումները երկու երկրներին անմիջականորեն վերաբերող հարցերի շուրջ, ինչպես ամենաբարձր, այնպես էլ այլ մակարդակներով։ Ստեղծվեցին Հնդկա-պակիստանյան համատեղ մի շարք օրգաններ, որոնք կարևոր քայլեր ձեռնարկեցին վիճելի հարցերը լուծելու ուղղությամբ։*

*Հնդկաստանի պրեմիեր-մինիստրը և Պակիստանի պրեզիդենտն իրենց խորին երախտագիտության ու շնորհակալության զգացմունքները հայտնեցին Սովետական Միության ղեկավարներին, սովետական կառավարությանը և անձամբ ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահին՝ Տաշքենդի հանդիպումը կազմակերպելու գործում կոնստրուկտիվ, բարեկամական և ազնիվ դերի համար, որը հանգեցրեց փոխադարձաբար գոհացուցիչ արդյունքների։*

*Տաշքենդի դեկլարացիան քաղաքական կարևոր փաստաթուղթ է։ Նշանավորելով Հնդկաստանի և Պակիստանի հարաբերությունների զարգացման նոր փուլը, նա վերջ դրեց պատերազմական կոնֆլիկտին, նշեց Ասիայի այդ երկու խոշոր տերությունների հարաբերությունների նորմալացմանն արգելակող դժվարությունների հաղթահարման ուղիները և Ասիայի այդ կարևորագույն շրջանում խաղաղության պայմաններ ստեղծելու ռեալ հիմքերը։*

*Հա՞րկ է նշել, որ դրանք դժվար բանակցություններ էին։ Այլ կերպ չէր էլ կարող լինել։ Չէ՛ որ վիճելի պրոբլեմները կուտակվել էին երկար տարիների ընթացքում։ Դեռ ավելին, պետք է հիշել, որ Պակիստանի և Հնդկաստանի գժտությունը գաղութարարների երկարատև տիրապետության ժառանգությունն է, որոնք*

ստրկացված ժողովուրդներին գրգռում են միմյանց դեմ։ Դրությունն ավելի բարդացավ այն պատճառով, որ Հնդկաստանի և Պակիստանի միջև ծագեց պատերազմական կոնֆլիկտ։ Պարզ է, որ այն երկրների ղեկավարների համար, որոնք գտնվում էին պատերազմի վիճակում, այնքան էլ հեշտ չէր հանդիպել բանակցությունների սեղանի շուրջը։

Աշխարհի բոլոր այն մարդկանց, որոնք անկեղծորեն ցանկանում են, որ Ասիայի այդ կարևորագույն շրջանում տիրի խաղաղություն, անշուշտ, ուրախացրեց երկու երկրների պետական գործիչների ձեռնարկած իմաստուն քայլը։ Միջազգային հասարակայնությունն առանձնապես նշեց Սովետական Միության կառավարության ղեկավարի՝ Ա. Կոսիգինի կոնստրուկտիվ դերը Տաշքենդի բանակցություններում։ Ժողովուրդները մեկ անգամ ևս համոզվեցին, որ Մոսկվան անկեղծորեն ձգտում է լարվածության մեղմացման և խաղաղության ամրապնդման։

## ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՍԻՍՏԵՄԻ ՀԵՏԱԳԱ ԱՄՐԱՊՆԴՈՒՄՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Մարտի 29-ից ապրիլի 8-ը տեղի ունեցավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIII համագումարը, որը հաստատեց մեր արտաքին քաղաքականության հիմնական սկզբունքների անխախտությունն ու հետևողականությունը։ «Համաշխարհային զարգացումը,— նշվում է ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման առթիվ կուսակցության XXIII համագումարի բանաձևում,—հաստատեց մեր կուսակցության, ամբողջ կոմունիստական շարժման այն հետևությունը, որ արդի դարաշրջանում պատմական զարգացման գլխավոր ուղղությունը որոշում են համաշխարհային սոցիալիստական սիստեմը, իմպերիալիզմի դեմ, հասարակության սոցիալիստական վերակառուցման համար պայքարող ուժերը»։

Մեր արտաքին քաղաքականության հիմքում դրված է ՍՄԿԿ XXIII համագումարի կուրսը, որի նպատակն է սոցիալիստական մյուս պետությունների հետ միասին միջազգային նպաստավոր պայմաններ ապահովել սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման համար։ Դա սոցիալիզմի երկրների միասնության ու համախմբվածության, նրանց բարեկամության ու եղբայրության ամրապնդման կուրսն է։ Դա իրենց ազգային ազատագրության համար պայքարող ժողովուրդների պաշտպանության, երիտասարդ անկախ պետությունների հետ համագործակցության բազմակողմանի զարգացման կուրսն է։ Դա տարբեր հասարակարգ ունեցող երկրների խաղաղ գոյակցության սկզբունքների հաստատման, իմպերիալիզմի ագրեսիվ ուժերին վճռական հակահարված տալու, նոր համաշխարհային պատերազմը կանխելու կուրսն է։

Հասարակական առաջադիմության վճռական ուժը, ընդհանուր խաղաղության գլխավոր պատվարը սոցիալիստական երկրների համագործակցությունն է։ Գնալով ամրանում են այդ երկրների ժողովուրդների եղբայրության, բարեկամության և բազմակողմանի համագործակցության կապերը։

Ինչպես ցույց են տալիս Սովետական Միության կոմունիստական կուսակցության և կառավարության ղեկավար գործիչների՝ մի շարք երկրներ կատարած այցելությունների արդյունքները, ինչպես նաև եղբայրական երկրների կուսակցական և պետական գործիչների՝ մեր երկիրը կատարած փոխադարձ ուղևորությունների արդյունքները, ՍՄԿԿ-ի դիրքը արժանանում է մարքսիստական-լենինյան մյուս կուսակցությունների ջերմ հավանությանը։ Անկեղծ բարեկամության և սերտ համագործակցության դրսևորում էր ՍՄԿԿ-ի պատվիրակությունների մասնակցությունը Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցության վերջերս տեղի ունեցած XIII համագումարի և Մոնղոլական ժողովրդահեղափոխական կուսակցության XV համագումարի նիստերին։

Եվրոպայի սոցիալիստական երկրների ռազմաքաղաքական համագործակցության հիմքը Վարշավայի պայմանագիրն է։ Պատմության դասերը ժողովուրդներին սովորեցրել են զգոն լինել իմպերիալիզմի ագրեսիվ մեքենայությունների նկատմամբ։ Սովետական ժողովուրդը գիտե խաղաղության արժեքը և խորապես գիտակցում է, որ ագրեսորներին սանձահարելու կարևորագույն գործոնը սոցիալիստական համագործակցության երկրների պաշտպանական հզորության ամրապնդումն է։ Սովետական Միությունը, որը վճռական ավանդ է մուծել հիտլերյան կայսրության ջախջախման և ֆաշիզմից Եվրոպայի ազատագրման գործում, լի է վճռականությամբ հակահարված տալու հետպատերազմյան Եվրոպայում ստեղծված իրադրությունը բռնի կերպով փոխելու բոլոր փորձերին։

Հունիսին Մոսկվայում տեղի ունեցավ Վարշավայի պայմանագրի մասնակից երկրների արտաքին գործերի մինիստրների խորհրդակցություն, որտեղ քննարկվեցին Եվրոպայի անվտանգության պրոբլեմները։ Սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքականության, խաղաղության գործի և ժողովուրդների անվտանգության պայքարի համար կարևորագույն նշա-



նակություն ունի Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունը, որը տեղի ունեցավ հուլիսի 4—6-ը, Բուխարեստում։ Եղբայրական բարեկամության և լիակատար փոխըմբռնման մթնոլորտը, որի պայմաններում տեղի ունեցավ խորհրդակցության աշխատանքը, նպաստեց սոցիալիստական երկրների միասնության ու համագործակցության հետագա ամրապնդմանը։ Խաղաղության և անվտանգության ապահովմանն են ծառայում խորհրդակցության ընդունած փաստաթղթերը՝ Եվրոպայի խաղաղությունն ու անվտանգությունը ամրապնդելու դեկլարացիան և Վիետնամում ԱՄՆ-ի ագրեսիայի վերաբերյալ հայտարարությունը, որոնք միջազգային մեծ նշանակություն ունեն։

## ՉԻՆԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԻ ՎՏԱՆԳԱՎՈՐ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Սոցիալիստական համագործակցության դիրքերը համաշխարհային ասպարեզում ավելի ամուր կլինեին, եթե համախմբվածություն և բազմակողմանի համագործակցություն ապահոված լիներ նաև Չինաստանի Ժողովրդական Հանրապետության հետ։ Ցավոք, ՉԺՀ-ի հետ հարաբերությունները կարգավորելու մեր բոլոր փորձերը մնում են ապարդյուն։ Չինաստանի ղեկավար գործիչներն ու չինական մամուլը սիստեմատիկաբար հանդես են գալիս ՍՄԿԿ-ի և ՍՍՀՄ-ի դեմ։ Այդ ելույթները խեղաթյուրում են մեր կուսակցության ու պետության կուրսի էությունը և ընդհանուր ոչինչ չունեն իրականության հետ։

Օգոստոսի 26-ին ՍՍՀՄ արտգործմինիստրության կողմից Մոսկվայում ՉԺՀ-ի դեսպանությանն ուղարկած նոտայում հաղորդվում է, որ վերջերս Պեկինում ՍՍՀՄ դեսպանատան առջև տեղի են ունեցել խուլիգանական արարքներ, որոնք լրջորեն խախտում են դեսպանության աշխատանքը և սպառնալիք ստեղծում նրա աշխատակիցների անվտանգության համար։ Դեպի դեսպանատուն տանող փողոցների տների պատերին և փողոցների անցանելի մասերում փակցվում են թռուցիկներ, պլակատներ, գրվում են լոզունգներ՝ Սովետական Միության նկատմամբ բացահայտորեն թշնամական բովանդակությամբ, որոնցով մեր ժողովրդի դեմ ատելության և բռնի գործողությունների կոչ է արվում։ Ուշագրավ է, որ սովետական դեսպանատան մոտ խժդժությունները կատարվում են չինական ոստիկանների աչքի առջև, սակայն նրանք ոչ մի միջոց չեն ձեռնարկում նմանօրինակ գործողությունները կասեցնելու համար։ Այդպիսի պրովոկացիոն գործողություններ Պեկինում հրահրվում են նաև սոցիալիստական մյուս երկրների դեսպանությունների նկատմամբ։

Առհասարակ ներկայումս չափազանց տարօրինակ (մեղմ ասած) իրադարձություններ են տեղի ունենում ՉԺՀ-ում։ Հակասովետական այդ բոլոր պրովոկացիոն գործողությունների հետագա ակտիվացմանը զարկ տվեց ՉԿԿ Կենտկոմի 11-րդ պլենումը, որը տեղի ունեցավ Պեկինում, օգոստոսի 1-ից մինչև 12-ը և որն իր ամբողջ ջանքերն ուղղեց Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների դեմ։ Պլենումը որոշում ընդունեց, որտեղ ՍՄԿԿ-ն և մարքսիստական-լենինյան մյուս կուսակցությունները անվանվում են «հակամարքսիստական», «հակահեղափոխական» և այլն։ Պլենումի նիստերն ընթանում էին Մաո Ցզե-դունի ղեկավարությամբ։ Նա քննարկեց ներքին հարցեր և որոշում ընդունեց, այսպես կոչված, «Պրոլետարական կուլտուրական մեծ հեղափոխության մասին»։ Դրա հետ միասին պլենումը մի շարք հայտարարություններ է արել միջազգային կոմունիստական շարժման պրոբլեմների վերաբերյալ և այդ կապակցությամբ հանդես է եկել ՍՄԿԿ-ի և Սովետական Միության դեմ ուղղված հարձակումներով։ Պլենումի փաստաթղթերը ցույց են տալիս, որ Չինաստանի կոմկուսի ղեկավարությունն իր հակասովետական գծին հավանություն տալը ձևակերպել է որպես Չինաստանի կոմկուսի պաշտոնական քաղաքականություն։ Պլենումը ըստ էության մերժել է ՍՄԿԿ-ի և մյուս եղբայրական կուսակցությունների առաջարկը՝ համատեղ գործողություններ ծավալելու իմպերիալիզմի դեմ, այդ թվում նաև Վիետնամում ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիայի դեմ։

Չինական ղեկավարների հակասովետական, հակասոցիալիստական կուրսը դատապարտվում է միջազգային կոմունիստական և բանվորական ամբողջ շարժման, հեղափոխական շարժման համարյա բոլոր ջոկատների կողմից (բացառությամբ Ալբանիայի աշխատանքի կուսակցության և մի քանի ուրիշ կուսակցությունների ղեկավարությունից)։

ՍՄԿԿ Կենտկոմն ու սովետական կառավարությունը համոզված են, որ սովետա-չինական հարաբերություններում ծագած լարվածությունը հակասում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ներսում սոցիալիստական հարաբերությունների բնույթին։ ՉԺՀ-ի նկատմամբ իր քաղաքականության մեջ սովետական կառավարությունն այսուհետև ևս ելնելու է այն բանից, որ մեր կուսակցությունն ու ժողովուրդը անկեղծորեն ձգտում են մարքսիզմ-լենինիզմի ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների

հիման վրա վերականգնել բարեկամական հարաբերությունները ու միասնությունը ժողովրդական Չինաստանի հետ։ Այդ դիրքավորումը բխում է սոցիալիստական երկրների շահերից, այդ թվում նաև հենց չին ժողովրդի շահերից։

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆՆ ԱՐԵՎԵԼՔԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՀԱՎԱՏԱՐԻՄ ԲԱՐԵԿԱՄՆ Է

Սովետական Միության արտաքին քաղաքական գործունեության մյուս կարևոր ուղղությունը Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրների ազգային-ազատագրական շարժմանը աջակցություն ցույց տալն է։ Մեր երկիրը պատրաստ է բարեկամական հարաբերություններ զարգացնել Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի բոլոր պետությունների հետ։ Դրա հետ մեկտեղ մենք չենք թաքցնում, որ ամենից առաջ համակրում ենք այն ժողովուրդներին, որոնք ընտրել են ոչ կապիտալիստական զարգացման ուղին։

Մենք այսուհետև ևս կաջակցենք Աֆրիկայի ու Ասիայի ժողովուրդների ինքնուրույնության ամրապնդմանը, նրանց համախմբմանը հակաիմպերիալիստական պայքարում։ Այդ ուղղությամբ Սովետական Միությունը մի շարք նոր քայլեր է ձեռնարկել ՍՄԿԿ XXIII համագումարից հետո։ Դրանց թվին պետք է դասել ՍՍՀՄ Մինիստրների Սովետի նախագահ Ա. Ն. Կոսիգինի այցը Արաբական Միացյալ Հանրապետություն, այց, որը վերածվեց սովետա-եգիպտական համագործակցության իսկական տոնի, ինչպես նաև Սիրիայի պրեմիեր-մինիստր Յու. Զուեյնի, Հնդկաստանի պրեմիեր-մինիստր Ի. Գանդիի, Աֆղանստանի պրեմիեր-մինիստր Մ. Մեյվանդվալի, Սոմալիի հանրապետության պրեզիդենտ Ա. Օսմանի և բազմաթիվ այլ երկրների պետական գործիչների ու պառլամենտական պատվիրակությունների ժամանումը Սովետական Միություն։

Գաղութային լծից ազատագրված ժողովուրդներին ցույց տված իր օգնությունը մեր երկիրը չի դիտում որպես սոցիալ-տնտեսական որևէ կարգ նրանց վզին փաթաթելու միջոց։ Սոցիալիզմը կարիք չունի դրան։ Սովետական Միությունը երիտասարդ պետություններին հատկացրել է մոտ երեք միլիարդ ռուբլի ընդհանուր գումարի վարկեր, որոնք դարձել են կարևոր գործոններ շատ պետությունների ինքնուրույն տնտեսական զարգացման համար։

Սովետական Միության և Արևելքի երկրների միջև բարեկամության և համագործակցության կենդանի ու բեղմնավոր օրինակ է հանդիսանում ՍՍՀՄ-ի տնտեսական և տեխնիկական համագործակցությունը Արաբական Միացյալ Հանրապետության հետ։ Այդ բարեկամությունն ավելի ամրապնդվեց Ա. Ն. Կոսիգինի գլխավորությամբ սովետական կառավարական պատվիրակության՝ Արաբական Միացյալ Հանրապետություն կատարած այցի շնորհիվ, որը տեղի ունեցավ մայիսի 10—18-ին։ Ա. Ն. Կոսիգինի և Գ. Ա. Նասերի միջև տեղի ունեցած բանակցությունների ժամանակ, որոնք անցան փոխըմբռնման ու սրտագին բարեկամության մթնոլորտում, կարծիքներ փոխանակվեցին ՍՍՀՄ-ի և ԱՄՀ-ի հարաբերությունների հետագա զարգացման ու ամրապնդման և արդի միջազգային դրության փոխադարձ հետաքրքրություն ներկայացնող հրատապ հարցերի շուրջ։

Համաշխարհային մամուլը մանրամասնորեն մեկնաբանում էր սովետական կառավարական պատվիրակության այցը ԱՄՀ։ «Եգիպտոսում 1952 թ. հեղափոխության առաջին օրերից,— գրում էր Կահիրեի «Ալ-Ահրամ» թերթը,— մենք հանձին Սովետական Միության գտանք մեր հավատարիմ բարեկամին, որը պաշտպանում է մեր ազատագրական պայքարը։ Սովետական Միության շնորհիվ մենք հաղթանակ տարանք ազատագրության համար պայքարի կարևոր էտապում։ Երբ Միացյալ Նահանգները և Անգլիան մերժեցին Ասուանի բարձրադիր ամբարտակը կառուցելու մասին մեր առաջարկը, միայն Սովետական Միությունը մեզ ֆինանսական օգնություն ցույց տվեց, մեզ օգնեց իր գիտելիքներով, կիսեց իր փորձը»։ Մոտավորապես նույն բովանդակության նյութեր տպագրվեցին Կահիրեի մյուս թերթերի՝ «Ալ-Գումհուրիա», «Ալ-Ահրամ», «Ալ-Մուսավար», Բեյրութի «Ան-Նիդա» թերթերի էջերում։

Ամբողջ աշխարհում լայն արձագանք գտավ Հնդկաստանի պրեմիեր-մինիստր Ինդիրա Գանդիի հուլիսի 12—16-ին Սովետական Միություն կատարած պաշտոնական այցը։ Ինչպես հայտնի է, հնդկական արտաքին քաղաքականության հիմքում ընկած են բլոկներին չմիանալու սկզբունքները։ Չմիանալու քաղաքականությունը վերջին տարիներս լայն ճանաչում է գտել և զգալի կշիռ է ստացել միջազգային ասպարեզում։ Այդ քաղաքականությունը դրական դեր է խաղում խաղաղության և միջազգային անվտանգության ապահովման համար, գաղութակալության և իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում, սահմանափակում է ագրեսիվ ռազմական բլոկների գործունեության ոլորտը, ծառայում միջազգային համագործակցության ամրապնդմանը։

## ԿՅԱՆՔԻ ՕԲՅԵԿՏԻՎ ՊԱՀԱՆՋԸ

Սովետական Միության արտաքին քաղաքական գործունեության կարևոր ուղղությունն են կազմում կապիտալիստական երկրների հետ նրա հարաբերությունները, որոնք ՍՍՀՄ-ը զարգացնում է խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա։ Արդի պայմաններում խաղաղ գոյակցությունն ավելի ու ավելի է դառնում հակադիր սիստեմների երկրների փոխհարաբերությունների օբյեկտիվ պահանջը։

Այդ առումով նշանակալից երևույթ էր ՍՍՀՄ Մինիստրների Սովետի նախագահ Ա. Ն. Կոսիգինի այցը Ֆինլանդիա, որը տեղի ունեցավ հունիսի 13—18-ը և նրա բանակցությունները Ֆինլանդիայի պետական գործիչների հետ։

Նշանակալի առաջադիմություն է նկատվում սովետա-ֆրանսիական հարաբերություններում։ Սովետական կառավարության հրավերով, հունիսի 20-ից մինչև հուլիսի 1-ը պաշտոնական այցով Սովետական Միությունում էր գտնվում Ֆրանսիայի պրեզիդենտ գեներալ դը Գոլը։ Այցի ընթացքում ֆրանսիական հանրապետության պրեզիդենտի և սովետական պետության ղեկավարների միջև տեղի ունեցավ կարծիքների օգտակար փոխանակում միջազգային քաղաքականության կարևորագույն հարցերի շուրջ, որոնցից առաջնակարգ նշանակություն ունեն Եվրոպայի անվտանգության պրոբլեմը և գերմանական հարցը։ Երկու երկրների կառավարությունները համաձայնեցին, որ Եվրոպայի պրոբլեմները պետք է առաջին հերթին քննարկվեն եվրոպական շրջաններում, արտահայտվեցին Արևելյան և Արևմտյան Եվրոպայի երկրների միջև լարվածության թուլացման մթնոլորտ ստեղծելու օգտին։ Սովետական Միության և Ֆրանսիայի կարծիքով, այդ կարող է լինել փոխադարձ հարգանքի և միմյանց ներքին գործերին չմիջամտելու հիման վրա, նախ, մայրցամաքի բոլոր երկրների հարաբերությունների կանոնավորումը, իսկ այնուհետև, դրանց աստիճանական զարգացումը։ Ֆրանսիայի պրեզիդենտի Սովետական Միություն կատարած այցը համաշխարհային հասարակայնության կողմից գնահատվեց որպես չափազանց կարևոր իրադարձություն։

Սովետական Միության և Ֆրանսիայի դիվանագիտական սերտ կոնտակտները, բանակցությունների բարեկամական և ընդմին գործարար բնույթը իրարանցում առաջացրին «սառը պատերազմի» կողմնակիցների շարքերում, մանավանդ Վաշինգտոնում և Բոննում։ Եվ իրոք, կարդալով արևմտյան մամուլի առանձին օրգանների արձագանքները և ծանոթանալով մի շարք քաղաքական գործիչների հայտարարություններին, մարդ կկարծի, թե Սովետական Միությունը և Ֆրանսիան իրենց ջանքերն ուղղում են ոչ թե միջազգային լարվածության թուլացմանը, այլ... նոր պատերազմի նախապատրաստմանը։ Այդ առնչությամբ ֆրանսիացի հայտնի ժուռնալիստուհի Ժենեվևա Տաբուին սրամտորեն նշել է. «Ֆրանս-սովետական համաձայնագրերն ասես թե դամոկլյան խաղաղ սրեր են»։

Եվ ամենևին պատահական չէ, որ եթե արևմտագերմանական և ամերիկյան մամուլը ձգտում էր նսեմացնել ֆրանս-սովետական բանակցությունների նշանակությունը, ապա Արևմտյան Եվրոպայի բազմաթիվ երկրների հասարակայնությունը ողջունեց քաղաքական այդ խոշորագույն իրադարձությունը։

Սոցիալական տարբեր կառուցվածք ունեցող պետությունների հետ հարաբերությունները զարգացնելու Սովետական Միության պատրաստակամության, խաղաղ հարաբերությունների զարգացման հնարավորության ապացույց հանդիսացավ արտաքին գործերի մինիստր Գրոմիկոյի այցը Իտալիա, որը տեղի ունեցավ ապրիլի 21—23-ին։ Այդ այցի ժամանակ ստորագրվեց տնտեսական ու գիտատեխնիկական համագործակցության վերաբերյալ միջկառավարական համաձայնագիր, որը սահմանում է նաև այդպիսի համագործակցության երկարաժամկետ հեռանկարները։ Խաղաղ գոյակցության քաղաքականության հետագա ամրապնդմանն էին ուղղված նաև Դ. Ս. Պոլյանսկու գլխավորությամբ ՍՍՀՄ Գերագույն սովետի պատվիրակության հունիսի 26-ից հուլիսի 5-ը Կանադա կատարած պատասխան այցը և հուլիսի 24—30-ին արտաքին գործերի մինիստր Ա. Գրոմիկոյի այցը Ճապոնիա։

Միջազգային հասարակայնության մեծ ուշադրությանն արժանացավ սովետական կառավարության պատասխանը ԳՖՀ-ի 1966 թվականի մարտի 25-ի նոտային։ Հուշակելով իր նոտան որպես «խաղաղ նախաձեռնություն», ԳՖՀ-ի կառավարությունը փորձում էր նրանով սքողել իր արտաքին քաղաքականության միլիտարիստական, ռևանշիստական բնույթը։ Իրականում, ինչպես նշվում էր սովետական կառավարության պատասխանում, նոտայում չկար որևէ բան, որը ցույց տար, թե ԳՖՀ-ի քաղաքականությունը շրջադարձ է կատարել դեպի ռեալիզմը և խաղաղ համագործակցությունը։ Ավելին, նոտայում նորից առաջ էր քաշվում եվրոպական սահմանները վերանայելու թեզը, հավակնություն էր ներկայացվում ԳԴՀ-ի բնակչության անունից հանդես գալու «իրավունքի» նկատմամբ, լռության էին մատնվում միջուկային զենքը չտարածելու պայմանագրի կնքման անհրաժեշտությունը և այլ հարցեր։

Բնական է, որ ԳՖՀ-ի կառավարության այդ դիրքորոշումները վճռականապես դատապարտվեցին սովետական կառավարության կողմից, որը նախազգուշացրեց, թե Սովետական Միությունը և

սոցիալիստական մյուս երկրները հակահարված կտան Բոննի ռևանշիստական ոտնձգություններին։ Դրա հետ միասին, սովետական կառավարության պատասխանում շարադրված է Եվրոպայի անվտանգության ու խաղաղության ամրապնդման կոնկրետ ծրագիրը, հաշվի առնելով ստեղծված իրադրությունը։ Այդ ծրագիրը նախատեսում է պայմանագիր կնքել միջուկային զենքը չտարածելու մասին, վերացնել օտարերկրյա ռազմական բազաները, արձակել ռազմական բլոկները, այդ թվում ՆԱՏՕ-ն և Վարշավայի պայմանագրի կազմակերպությունը, ատոմազերծ գոտիներ ստեղծել կենտրոնական Եվրոպայում, ինչպես նաև մի շարք ուրիշ առաջարկներ, որոնք ուղղված են եվրոպական մայրցամաքում ռազմական սպառնալիքի կանխմանը։

Անցնող տարվա միջազգային կարևոր իրադարձությունների թվում է ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի XXI սեսիան, որի աշխատանքն սկսվեց սեպտեմբերի 20-ին։ Սեսիայի օրակարգում կա մոտ 100 հարց։ Սակայն համաշխարհային հասարակայնության ուշադրությունն են գրավում ոչ միայն այդ հարցերը, այլ նաև ՄԱԿ-ի գլխավոր քարտուղար Ու Տանի՝ իր պատասխանատու պոստից ազատելու մասին դիմումը։ Այդ հարցի շուրջ կատարվող բազմաթիվ մեկնաբանությունները արտահայտում են առաջադիմական ուժերի և բարի կամքի բոլոր մարդկանց անհանգստությունը ՄԱԿ-ի դեմ կատարվող քայքայիչ գործունեության նկատմամբ, որը ոգեշնչվում է պատերազմի հրձիգների և միջազգային ամբողջ ռեակցիայի կողմից։ Չնայած նրա աշխատանքում եղած լուրջ թերություններին, Միավորված Ազգերի կազմակերպությունը, որն այժմ համախմբում է 118 պետությունների ներկայացուցիչների, կարող է և պետք է կատարի լուրջ դեր ընդհանուր խաղաղության և անվտանգության ապահովման գործում։

Սեպտեմբերի 23-ին սեսիայում ընդարձակ ճառով ելույթ ունեցավ ՍՍՀՄ պատվիրակության ղեկավար, Սովետական Միության արտաքին գործերի մինիստր Ա. Ա. Գրոմիկոն. նա շարադրեց սովետական կառավարության դիրքը միջազգային մի շարք հարցերում, սեսիայի մասնակիցների քննարկմանը ներկայացրեց չմիջամտելու մասին Դեկլարացիայի կատարման ընթացքի, Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրներում օտարերկրյա ռազմական բազաների լիկվիդացման անհրաժեշտության, ինչպես նաև միջուկային զենքի տարածման դեմ հուսալի միջոցառումների իրականացման մասին բանաձևերի նախագծեր։ Սովետական այդ նոր առաջարկները արժանացան համաշխարհային հասարակայնության լիակատար հավանությանը։

## ԱԳՐԵՍԻԱՆ ՎԻԵՏՆԱՄՈՒՄ ԵՎ «ՎԱՇԻՆԳՏՈՆ—ԲՈՆՆ» ԱՌԱՆՑՔԸ

Արդի միջազգային իրադրությունը բարդ է։ Խաղաղության պահպանման և ամրապնդման օգտին հանդես եկող ուժերի աճի հետ մեկտեղ ակտիվանում են ագրեսիվ իմպերիալիստական ուժերը։ Աշխարհում ծագել են մի շարք սուր պրոբլեմներ, որոնք անհապաղ կարգավորում են պահանջում։ Դրանցից երկուսը առաջնակարգ նշանակություն ունեն։ Դա ամերիկյան ավազակային պատերազմն է Վիետնամում, որը Ու. Տանի բնութագրումով, «ամենաբարբարոսական պատերազմներից մեկն է պատմության մեջ» և երկրորդը՝ Եվրոպայի անվտանգության ապահովումն է, որի նշանակությունը դժվար է գերագնահատել։ Խոսքը թեև վերաբերում է աշխարհի տարբեր և միմյանցից հեռու գտնվող շրջաններին, սակայն այդ երկու պրոբլեմներն էլ այնուամենայնիվ սերտորեն կապված են իրար հետ։

Վիետնամի ժողովրդի դեմ ուղղված պատերազմը մի կողմից հանգեցրեց դաշնակիցների շրջանում Վաշինգտոնի մեկուսացմանը և Արևմտյան Եվրոպայում ամերիկյան դիրքերի խիստ թուլացմանը։ Մյուս կողմից, այդ մեկուսացումը ԱՄՆ-ին ստիպում է ավելի ու ավելի մեծ չափով հենվելու Արևմտյան Գերմանիայի վրա։ Բոննի միլիտարիստները, օգտվելով Վաշինգտոնի հովանավորությունից, ավելի համառորեն ձգտում են ատոմային զենք ստանալ, ավելի ակտիվորեն ռևանշիստական քաղաքականություն են վարում, ուժեղացնելով Եվրոպայի ժողովուրդների խաղաղ կյանքին սպառնացող վտանգը։

Վիետնամում ԱՄՆ-ի ռազմական ու քաղաքական ձախողման և Եվրոպայում ստեղծված իրադրության սերտ կապը վառ կերպով ցուցադրում է ֆրանսիական կառավարության դիրքը, որը պաշտոնապես հրաժարվեց Հյուսիս-ատլանտյան պայմանագրի ռազմական կազմակերպության մեջ մնալուց։ Ֆրանսիայի քայլը նշանակում է, որ Արևմտյան Եվրոպայում վերջ է տրվում Միացյալ Նահանգների անվերապահ «ղեկավարմանը»։ Արևմտաեվրոպական երկրների մայրաքաղաքներում իրենց ավելի պարզ հաշիվ են տալիս, որ Եվրոպայի անվտանգության կարելի է հասնել սոցիալիստական երկրների հետ և, ամենից առաջ, եվրոպական մեծ տերության՝ Սովետական Միության հետ համագործակցելու միջոցով։

Վիետնամի ժողովրդի դեմ ուղղված կեղտոտ պատերազմը Հարավ-Արևելյան Ասիայի հսկայական շրջանը վերածեց համաշխարհային ռազմական սպառնալիքի օջախի։ Ամերիկայի Միացյալ Նահանգները, որոնք միջազգային ժանդարմի դեր են ստանձնել, որոշել են ճակատամարտ



տալ ազգային-ազատագրական շարժմանը։ Հարավային Վիետնամում և Հնդկաչինի թերակղզու ափերը ողողող ջրերում կենտրոնացված են ամերիկյան բանակի ընտիր զորամասեր և 7-րդ ռազմածովային նավատորմը։ Մինչև ատամները զինված ավելի քան 330 հազարանոց ամերիկյան բանակը ագրեսիվ պատերազմ է վարում վիետնամ ժողովրդի դեմ։ Ինքնաթիռներ, ուղղաթիռներ, ռումբեր, հրթիռներ, քիմիական թունավոր նյութեր, բնաջնջման և ավերման այս բոլոր միջոցներն ինտերվենտներն օգտագործում են, որպեսզի ընկճեն ազատասեր ժողովրդի կամքը, որպեսզի հասնեն պատերազմի ընթացքի բեկման՝ հօգուտ իրենց։ Բայց ԱՄՆ-ը այսօր Վիետնամում նույնքան հեռու է հաղթանակին հասնելուց, որքան հեռու էր պատերազմի սկզբում։

Վերջին ամիսների իրադարձությունները մի անգամ ևս աշխարհին ցույց տվեցին, որ ԱՄՆ-ը ագրեսիվ պատերազմ է վարում Վիետնամի ամբողջ ժողովրդի դեմ, որ ամերիկացիներն այդտեղ չունեն և չեն կարող ունենալ որևէ սոցիալական հենարան։ Ամենևին պատահական չէ այն, որ վերջին ժամանակներս ամերիկյան պաշտոնական անձինք, այդ թվում պրեզիդենտ Ջոնսոնը, պետական քարտուղար Ռասկը, պաշտպանության մինիստր Մակնամարան, այդքան հաճախ հանդես են գալիս ամենատարբեր լսարանների առջև, փորձելով արդարացնել Վիետնամի նկատմամբ Վաշինգտոնի դիրքը։

Կառավարության քաղաքականության դատապարտմամբ ավելի ու ավելի հաճախ հանդես են գալիս ամերիկյան հայտնի քաղաքագետներ Ֆուլբրայտը, Մորզեն, Մենսֆիլդը, Գրյունինգը, Ռոբերտ Քենեդին և ուրիշներ։ Օրինակ, Գրյունինգը հունիսի 22-ին սենատում հայտարարեց, որ Հարավ-Արևելյան Ասիայում ԱՄՆ-ի քաղաքականությունը «ոչ մի արդարացում չունի»։ «Մենք,— շարունակեց նա,— չենք պաշտպանում ազատությունը և չենք փրկում մարդկանց կյանքը, մենք աջակցություն ենք ցույց տալիս ինքնակոչ և մինչև ուղն ու ծուծը կաշառակերությամբ տոգորված բռնակալությանը»։ Մի շաբաթ հետո, Մորզեն ընդգծեց. «ռմբակոծումների ընդլայնումը ցույց է տալիս, որ Միացյալ Նահանգները գլխավոր սպառնալիք են ընդհանուր խաղաղության համար»։ Սենատորի կարծիքով, հանրաճանաչ բոլոր օրենքները խախտող Ջոնսոնի կառավարության այդ քայլի առնչությամբ ամբողջ աշխարհում պետք է ցած իջեցվեն ամերիկյան դրոշները։ Ամերիկյան «Կեպիտլ Թայմս» թերթն այդ կապակցությամբ գրել է. «Ողբերգական ճշմարտությունն այն է, որ մենք վտանգավոր կերպով մոտեցել ենք այն սահմանագծին, երբ աշխարհում մեր մասին այնպիսի կարծիք է ստեղծվում, ինչպիսին 25 տարի առաջ գոյություն ուներ նացիստների մասին»։

ԱՄՆ-ի կառավարությունը, հաշվի չառնելով ոչ մի բան, շարունակում է ուժեղացնել ագրեսիան։ «...Մենք,— ասաց Ջոնսոնը, հունիսի 18-ին, հանդես գալով պրես-կոնֆերանսում,— պետք է շարունակենք մեր այժմյան քաղաքականությունը... Այդ քաղաքականությունը կայանում է նրանում, որ մենք պետք է մեր ցամաքային, ռազմածովային և օդային կարողությունն օգտագործենք մեր նպատակին հասնելու համար»։ Սպիտակ տան, Պենտագոնի և պետական դեպարտամենտի քաղաքագետների թիկունքում կանգնած «ռազմաարդյունաբերական կոմպլեքսը, թելադրում է իր վտանգավոր գիծը, որը հիմնված է ոչ թե առողջ դատողության, այլ շահամոլության վրա։ Ռազմական բիզնեսի մեջ կապիտալ ներդրումները վիթխարի շահույթ են բերում։ 1965 թվականին ամերիկյան մոնոպոլիաների զուտ եկամուտը կազմել է մոտ 45 միլիարդ դոլար, 1964 թվականի համեմատությամբ ավելանալով 20%-ով։

Միացյալ Նահանգները վերջին ամիսներին մի քանի անգամ ավելացրել են իրենց զորքերի թիվը Վիետնամում։ Ենթադրվում է մինչև տարեվերջ դրանց թիվը հասցնել մինչև 350, թերևս՝ 400 հազարի, իսկ 1967 թվականին՝ մինչև 500 հազարի։ ԱՄՆ-ի պաշտպանության մինիստր Մակնամարան վերջերս հայտարարեց, որ ԱՄՆ-ը 1965—66 ֆինանսական տարում, նախորդ տարվա համեմատությամբ հարավ-արևելյան Ասիայում իր զինված ուժերի թիվը մեծացրել է 240 տոկոսով։ Այդ շրջանում ԱՄՆ-ի պատերազմական գործողություններն ամեն ամիս մեկ միլիարդ դոլարի բեռ են դնում հարկատուների վրա։

Ամբողջ աշխարհում վճռական բողոք առաջացրին Հանոյի և Հայֆոնի խիտ բնակեցված արվարձանների ռմբակոծումները։ Հասարակայնության ճնշումը Միացյալ Նահանգների նույնիսկ դաշնակից պետությունների ղեկավարներին ստիպեց դատապարտել այդ բարբարոսական գործողությունները։

Օգոստոսի 2—3-ին սովետական մարդկանց հայացքները, ամբողջ աշխարհի սևեռուն ուշադրությունը ուղղված էին Կրեմլին, որտեղ աշխատում էր ՍՍՀՄ յոթերորդ գումարման Գերագույն սովետի առաջին սեսիան։ Գերագույն սովետը լիակատար միաբանության մթնոլորտում ընդունեց պետական մեծ նշանակություն ունեցող որոշումներ։ Կազմվեցին Գերագույն սովետի նախագահություն և սովետական կառավարություն՝ ՍՍՀՄ Մինիստրների սովետ, ստեղծվեցին պալատների մշտական հանձնաժողովներ։ Բոլոր 1517 դեպուտատները հավանություն տվեցին կա-

ռավարության հայտարարության մեջ նշված ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում նրա գործունեության հիմնական ուղղություններին։ Ընդունվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի հայտարարություն Վիետնամում ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիայի կապակցությամբ։ Հայտարարության մեջ վստահություն է հայտնըվում, որ այն ժողովուրդներն ու պետությունների կառավարությունները, որոնք չեն ցանկանում միջազգային իրադրության վտանգավոր սրում և Միացյալ Նահանգների սանձազերծած ագրեսիվ պատերազմի ընդլայնում, վճռականորեն հանդես կգան Վիետնամի դեմ ուղղված ամերիկյան պատերազմը դադարեցնելու, Վիետնամի ժողովրդի արդար գործը պաշտպանելու օգտին։

Փորձելով արհամարհել պատմության դասերը, իմպերիալիստներն այժմ համախմբում են իրենց ուժերը, իսկ որտեղ հնարավոր է, անցնում են հակահարձակման, որպեսզի վերադարձնեն կորցրածը։ Առաջին հերթին, այդպես են վարվում ԱՄՆ-ի և Արևմտյան Գերմանիայի կառավարող շրջանները, որոնք ամեն կերպ ձգտում են սրել իրադրությունը Եվրոպայում և ամբողջ աշխարհում։ ԳՖՀ-ն ավելի ու ավելի է դառնում պատերազմական վտանգի օջախ Եվրոպայում։ Բոննի քաղաքականությունը ներկայումս որոշում են այն նույն մոնոպոլիստական շրջանները, որոնք ժամանակին իշխանության գլուխ կանգնեցրին Հիտլերին։ ԱՄՆ-ի, Անգլիայի և ՆԱՏՕ-ի մյուս երկրների հավանությամբ մոտենալով միջուկային զինանոցին, հռենոսյան ռազմամոլները բորբոքում են ռևանշիստական կրքերը, բունդեսվերի՝ արևմտագերմանական այդ ագրեսիվ բանակի համար ստեղծում են ռազմական բազաներ և պահեստներ։

Ինչպես ամերիկյան իմպերիալիստները, այնպես և նրանց արևմտագերմանական դաշնակիցներն արհամարհում են պատմության դասերը, ձգտելով սրել միջազգային լարվածությունը և նորից հրի ու սրի մատնել մեր մոլորակը։ Սակայն բարի կամքի մարդիկ ամեն ինչ կանեն որպեսզի ապահովվի երկարատև և կայուն խաղաղություն։

Ս. ՊԱՊՅԱՆ



# ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆԸ

## ՊԱՏՄԱԿԱՆ ՃՇՄԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ ՉԱՆՏԵՍԵԼ

Կարդալով ընկեր Ս. Տ. Ալիխանյանի՝ «Սովետական Ռուսաստանի դերը հայ ժողովրդի ազատագրման գործում» գիրքը, որպես այս շրջանի պատմության հարցերով զբաղվողի և որպես կոմունիստի չեմ կարող իմ դժգոհությունը չհայտնել այդ գրքում Հայաստանի կոմկուսակցության և հայհեղկոմի 1920 թ. վերջերին և 1921 թ. սկզբներին վարած քաղաքականության աղավաղման մասին և խնդրում եմ այս նամակը տպագրել Ձեր ամսագրում:

1920 թ. սովետական կարգերի հաղթանակը Ադրբեջանում և Հայաստանում ձախողեցին Արևմտյան տերությունների իմպերիալիստական պլանները՝ Անդրկովկասից Սովետական Ռուսաստանի դեմ նոր արշավանք կազմակերպելու գործում: Բայց իմպերիալիստները չհրաժարվեցին այդ պլաններից, խնդիր դրին պահպանել և ամրապնդել մենշևիկյան Վրաստանը, որպես ինտերվենցիոն բազա, հավաքել այնտեղ հակահեղափոխական ուժեր՝ մենշևիկյան Վրաստանի, Թուրքիայի, Հայաստանի, Ադրբեջանի, ինչպես և այդ հանրապետությունների սահմանային պետություններում հավաքված հակասովետական ուժերի օգնությամբ իրենց ձախողված պլանները կենսագործելու համար:

Այդ պատերազմը պատրաստվում էր Անտանտի իմպերիալիստների գլխավոր շտաբներում և նրանց բաժանմունքներից մեկում՝ մենշևիկյան Թիֆլիսում, որտեղ 1920 թ. աշնանը հավաքվել էին Դենիկինի և Վրանգելի ջախջախված բանակների մնացորդները, Ռուսաստանից, Ադրբեջանից, Հայաստանից, Հյուսիսային Կովկասից փախած հակահեղափոխականները, որոնք ֆինանսավորվում էին իմպերիալիստների կողմից՝ սովետական հանրապետությունները Անդրկովկասում տապալելու և այստեղից Սովետական Ռուսաստանի դեմ նոր արշավանք կազմակերպելու համար: Անդրկովկասից Սովետական Ռուսաստանի դեմ պատրաստվող պատերազմի մասին Վ. Ի. Լենինն ասել է. «...Կովկասում ներկայումս հյուսվում են շատ բարդ պայմաններ, որ վերին աստիճանի դժվար է ըմբռնել, բատ որում մեր վկին պատերազմ կարող է փաթաթվել, նույնիսկ օրավուր» (Լենին, Երկեր, հ. 31, էջ 520):

Այս տեսանկյունով, դաշնակների փետրվարյան ավանտյուրան հանդիսացավ Անտանտի, թուրքական պալթիչների և Թիֆլիսի հակասովետական կազմակերպությունների պլանների կենսագործման հիմնական օղակներից մեկը: Բայց, ցավոք, որոշ պատմաբաններ դաշնակների փետրվարյան ավանտյուրան բացատրում են Հայհեղկոմի և ՀԿԿ Կենտկոմի «սխալ» քաղաքականությամբ, որոնք, իբր թե դյուրին վերաբերմունք էին ցույց տալիս դեպի դաշնակցությունը, թերագնահատում նրա և առհասարակ դասակարգային թշնամու ուժերը, որ իբր Հայհեղկոմը իր վարքագծով նպաստեց ավանտյուրայի կազմակերպմանը և այլ անհիմն մեղադրանքներ: Եթե այսպես էր գնահատվում Հայհեղկոմի և Կենտկոմի գործունեությունը անհատի պաշտամունքի ժամանակ՝ դա որոշ չափով հասկանալի է, բայց անհանդուրժելի է դառնում, երբ դա շարունակվում է մեր օրերում:

Այսպես, օրինակ, պատմական գիտությունների թեկնածու ընկեր Ս. Տ. Ալիխանյանն իր «Սովետական Ռուսաստանի դերը հայ ժողովրդի ազատագրման գործում» աշխատության մեջ քննարկելով այս հարցը, գրում է, որ Կենտկոմի և Հայհեղկոմի անդամներ «Ս. Կասյանը և Ա. Մռավյանը չէին նկատում սովետական իշխանության համար ստեղծված իրադրության վտանգավորությունը, իսկ Կենտկոմի մեծամասնությունը սխալ էր գնահատում դաշնակցականների ուժը: Նրանց թվում էր, որ մի հարվածով կարելի է ի չիք դարձնել դաշնակցականների ելույթը: Այդ ժամանակ դաշնակների ավանտյուրան կանխելու պայմանը ոչ թե դաշնակցականների նկատմամբ ռեպրեսիաներ կիրառելն էր,— գրում է հեղինակը,—այլ այն օբյեկտիվ պայմանների վերացումը, որը հող էր ստեղծում դաշնակների հաջողության համար» (Ս. Տ. Ալիխանյանի նշված գիրքը, էջ 298): Որո՞նք էին այդ օբյեկտիվ պայմանները: Ըստ Ս. Ալիխանյանի դա նախ Հայաս-

# ԱՆԲԱՐՅԱՑԱԿԱՄ ԽԵՂԱԹՅՈՒՐՈՒՄ

Ամեն մի գիրք տարբեր ընթերցողներ է ունենում: Լինում են նաև անբարյացակամ ընթերցողներ: Դրանցից է մեր գրքի «ընթերցող» Ս. Կարապետյանը: «Ընթերցող» Կարապետյանին, անշուշտ, հայտնի պետք է լինի Վ. Ի. Լենինի ասույթը պատմական փաստերի ընտրության և օգտագործման մասին, ըստ որի պատմական իրողությունները գնահատելիս, երբ առանձին փաստեր դուրս են կորզվում իրենց կապակցություններից, ապա միշտ և ամենուրեք հանգեցնում են միակողմանի ու սխալ հետևությունների:

Կարապետյանն իր նամակում վարվում է սրան հակառակ, այսինքն իրեն սեփական և իրեն հատուկ սկզբունքներով: Ներկա դեպքում նա հանդես է գալիս ՀԿԿ Կենտկոմի և Հայաստանի հեղկոմի պաշտպանության դերում, խոսելով մեր գրքի միայն մի ենթագլխի՝ դաշնակցականների փետրվարյան ավանտյուրայի ջախջախման հարցի մասին: Նա գրքի այս բաժինը ներկայացնում է ծուռ հայելու մեջ: Գրքի մնացած գլուխների և բաժինների մասին չի խոսում, դա նշանակում է, որ կամ առարկություն չունի, կամ չի կարողացել:

Նախ և առաջ նշենք, որ մենք հանձն չենք առել շարադրել 1921 թվականի փետրվարյան ավանտյուրայի ամբողջական պատմությունը (տե՛ս էջ 293): Բայց, չնայած դրան, գրքում ընդգծված է, որ «Անտանտը օգտվելով ստեղծված դրությունից, Կովկասում կոորդինացված հակահեղափոխական ելույթ էր նախապատրաստում, որի օղակներից մեկը դաշնակներն էին...» (էջ 295):

Եվ մի՞թե կարիք կար փետրվարյան ավանտյուրայի պատճառների հարցում քաղաքացիություն ստացած այդ դրույթը կրկնել իբրև «հայտնագործություն» և իր այդ նոր ձևակերպումը հիմնավորելու նպատակով բերել Վ. Ի. Լենինի և Գ. Կ. Օրջոնիկիձեի գրքում արդեն իսկ տեղ գտած մտքերը: Նամակի նպատակը կապվող հարցում, այսինքն փետրվարյան ավանտյուրայի ժամանակ Հայաստանի հեղկոմի գործունեության գնահատման հարցում, Կարապետյանն անկախ իր դիտավորությունից, նույն կարծիքին է, ինչ որ մենք: Նա ևս գտնում է, որ փետրվարյան ավանտյուրայի պատճառները չի կարելի որոնել հեղկոմի սխալների մեջ: Առարկելով նրանց, ովքեր դաշնակների «հաջողությունները» բացատրել են միայն հեղկոմի սխալներով, մենք թվարկել ենք դաշնակների ավանտյուրային նպաստող այն օբյեկտիվ պայմանները, որոնք գոյություն ունեին խռովության նախօրեին: Այդ առթիվ հրապարակել ենք նոր փաստաթղթեր, այդ թվում Գ. Վ. Չիչերինի զեկուցագրերը Վ. Ի. Լենինին:

Կարապետյանն «անուշադիր» կարդալով գրքի 298—300 էջերը, չհասկանալով կամ չկամենալով հասկանալ, յուրովի մեկնաբանելով մեր մտքերը, անհիմն մեղադրանքներ է հարուցում մեր դեմ և մեր հարցադրման տրամաբանությանը հակառակ, անհեթեթ եզրակացություններ անում: Բերելով քաղվածք մեր գրքի 298 էջից, անում է քմահաճ կռահումներ, «գտնում հիմնական սխալներ», հայտարարում, որ մենք իբրև թե, չենք տարբերում ժողովուրդը ավանտյուրիստներից», որ չենք հասկացել, որ ավանտյուրան կազմակերպվել է «ոչ թե սովը վերացնելու, այլ սովետական իշխանությունը տապալելու, դաշնակցական իշխանությունը վերականգնելու համար», և նման անիմաստ ու անհիմն արտահայտություններ: Փորձելով առարկել մեր այն տողերին, որտեղ ասված է, թե «Հեղկոմը իր տրամադրության տակ չուներ ոչ հաց, ոչ բանակ ոչ փող, հետևաբար՝ իշխելու ռեալ հենակետեր, տերիտորիալ հարցերից ոչ մեկը չէր լուծված (էջ 299), նա հայտարարում է, որ «սա արդեն լուրջ չէ» և առանց մի հիմնավորող փաստ բերելու, վերանալով պատմական իրականությունից, պնդում է. «նա ուներ և՛ հենակետեր, և՛ իշխանություն, և՛ բանակ»:

Հարց է ծագում, եթե հեղկոմն ուներ այդ ամենը, հապա ինչպե՞ս պատահեց, որ դաշնակցականները բոլոր կողմերից շրջապատելով գրավեցին Երևանը: Կարապետյանի այս և մյուս հիմնավուրկ պնդումները իրոք որ լուրջ չեն, որոնք միաժամանակ հաստատում են, որքան էլ դա տարօրինակ է, որ Կարապետյանը խորապես չգիտե փետրվարյան ավանտյուրայի պատմությունը: Կարապետյանի «ամենահիմնավորված» առարկությունն այն է, որ իբր թե մենք մեղադրում ենք հեղկոմին այն բանի համար, որ նա չի պայքարել թուրքական զորքերը Հայաստանից



հանելու, Ալեքսանդրապոլի պայմանագիրը վերացնելու, տերիտորիալ հարցերը լուծելու համար: «Այդ պատճառով էլ,— գրում է Կարապետյանը,— հակասովետական ապստամբություն տեղի ունեցավ»: Այստեղ Կարապետյանը սովետահայ պատմագրության մեջ առաջին անգամ դաշնակցականների փետրվարյան ավանտյուրան որակում է որպես ապստամբություն, դրանով իսկ կրկնելով դաշնակցականներին, որոնք այդ անում են ավանտյուրային լայն ժողովրդական բնույթ տալու նպատակով: Ըստ երևույթին Կարապետյանը «ավանտյուրա» և «ապստամբություն» բառերի իմաստը չի տարբերում:

Բացի այդ, իր խառնաշփոթ շարադրանքում նա բերում է մտքեր, որոնք ոչ մի կապ չունեն մեր գրքի հետ և հակասում են նրա ոգուն ու տառին: Իր առարկությունը հիմնավորելու նպատակով բերում է հեղկոմի մի քանի նոտաները Թուրքիայի կառավարությանը: Սրանք ցույց են տալիս, որ «ընթերցող» Կարապետյանը չի կարդացել գրքի հետևյալ բաժինները. «Ալեքսանդրապոլի պայմանագիրը և պայքարը նրա վերացման համար» (էջ 217—250), «Պայքար Սովետական Հայաստանը Թուրքիայի թշնամական գործողություններից պաշտպանելու համար» (էջ 323—365), «Ալեքսանդրապոլի ազատագրումը» (էջ 365—373):

Թվարկված բաժինների վերնագրերն անգամ լիովին հերքում են Կարապետյանի անհիմն պնդումները: Բայց այս մասին անհրաժեշտ է մի քանի խոսք ասել: Կարապետյանը նշում է Հայաստանի հեղկոմի 1920 թվականի դեկտեմբերի 10-ի նոտան և 1921 թվականի հունիսի 7 և 10-ի նոտաները (վերջին երկու «նոտաները» իրականում չեն եղել) և հայտարարում, որ «Մի շարք հեղինակների կողմից հրապարակված պատմական փաստաթղթերը ապացուցում են Հայհեղկոմի վճռական պայքարը Թուրքիայի կողմից գրավված հողերը վերադարձնելու համար»: Ընթերցելով այս տողերը, անտեղյակ մարդիկ կըկարծեն, թե մենք այդ հարցերը շրջանցել ենք: Ավելին, Կարապետյանն իր ընթերցողների վըրդովմունքը մեր դեմ ուղղելու նպատակով ասում է, որ մենք իբրև թե մեղադրում ենք Հայհեղկոմին թուրքական օկուպացիայի դեմ չպայքարելու համար: Բայց մի՞թե կարելի է գրվածն այդպես ժխտել ու կեղծել: Գրքի նշված 50 էջերում մենք հանգամանորեն խոսել ենք Հայաստանի հեղափոխական կոմիտեի և ՌՍՖՍՀ կառավարության ռազմադիվանագիտական ու քաղաքական այն բազմաթիվ միջոցառումների մասին, որոնց նպատակն էր հարկադրել Թուրքիայի կառավարությանը ետ քաշել զորքը Սովետական Հայաստանի տերիտորիայից, վերջ դնել հայ ժողովրդի նկատմամբ բնաջնջման հին քաղաքականությանը, չեղյալ հայտարարել Ալեքսանդրապոլի պայմանագիրը և Սովետական Հայաստանի կառավարության հետ կնքել արդարացի հաշտության պայմանագիր:

Գրքի 323 էջում ասված է. «Ինչպես տեսանք, քեմալականները դրժելով Հայաստանի վերաբերյալ ՌՍՖՍՀ-ի կառավարությանը արած իրենց բոլոր հայտարարություններն ու հավաստիացումները, հրաժարվեցին Ալեքսանդրապոլի նվաստացուցիչ պայմանագրի վերանայումից: Նրանք անամոթաբար ձգտում էին այդ պայմանագիրը գործադրել Սովետական Հայաստանի դեմ, մինչև Ալեքսանդրապոլի ազատագրումը օկուպացված շրջաններում, շարունակելով ջարդարարական, կողոպտչական հին քաղաքականությունը»: Ցույց տալով, որ քեմալականները Հայաստանում սովետական իշխանություն հաստատվելուց հետո էլ շարունակեցին հայ ժողովրդի դեմ ուղղված բնաջնջման ու կողոպուտի հին քաղաքականությունը նոր պատրվակներով, բերվում են Հայաստանի հեղափոխական կոմիտեի 1920 թվականի դեկտեմբերի 10-ի, 1921 թվականի հունվարի 8-ի և 19-ի նոտաները, վերլուծվում դրանց բովանդակությունը, պատմական անհերքելի փաստերով ցույց տրվում թուրքական զինվորների գազանությունները Սովետական Հայաստանում: Գրքում շարադրված է Հայաստանի արտաքին գործերի ժողկոմի պաշտոնակատար Ա. Մռավյանի 1921 թվականի հունվարի 21-ին գրած նամակը, ՌԿԲԿ Կենտկոմի կովկասյան բյուրոյի նախագահ Օրջոնիկիձեին, թվարկվում են այնտեղ բերված փաստերը քեմալականների գազանությունների մասին: Թվարկելով թուրքական օկուպացիոն զորքերի թշնամական գործողությունները, Հայաստանի հեղկոմի հունվարի 19-ի նոտայում բերված փաստերը, գրքում ասված է. «Նոտայում վճռական բողոք հայտնելով մատնացույց է արվում, որ թուրքական բանակի բոլոր գազանությունները Սովետական Հայաստանի տերիտորիայում ոչ թե անպատասխանատու անձանց ինքնագլուխ գործողություններն են, այլ հրամանատարության կողմից կանխամտածված և պլանավորված գործողություններ՝ ուղղված հայ ժողովրդի և նորաստեղծ սովետական իշխանության դեմ» (էջ 335—336):

Այս բաժինների բազմաթիվ էջերում խոսվում է Կասյանի, Ավիսի, Օրջոնիկիձեի, Լեգրանի, Չիչերինի գրագրությունների մասին: Գրքում հանգամանորեն լուսաբանված են Ալեքսանդրապոլի հեղկոմի նկատմամբ թուրքական հրամանատարության գործադրած բռնությունները և Հայաստանի հեղկոմի ու ՀԿԿ Կենտկոմի վճռական միջոցառումները (տես էջ 338—358): Գրքի 358—364 էջերում խոսվում է քեմալական կառավարու-

*թյան հակասովետական գործողությունների մասին փետրվարյան ավանտյուրայի օրերին, իսկ 365—372 էջերում ցույց է տրվում Հայաստանի հեղկոմի և ՌՍՖՍՀ կառավարության ռազմա-դիվանագիտական գործողությունները Ալեքսանդրապոլի գավառը թուրքական կորքերից ազատագրելու համար:*

*Այս բոլորից հետո, Ս. Կարապետյանը գործն այնպես է պատկերում, որ մեր գրքում ոչ խոսվում է Թուրքիայի կառավարության հայաջինջ քաղաքականության մասին, ոչ էլ նրա դեմ Հայաստանի հեղափոխական կոմիտեի պայքարի մասին: Նա ակնարկելով «մի շարք հեղինակների կողմից հրապարակված պատմական փաստաթղթերը», առաջին հերթին նկատի ունի, իհարկե, իրեն:*

*Նման վեճերը լուծվել կարող են միայն պատմական իրողությունների ու վավերագրերի բազմակողմանի ու անաչառ հետազոտությամբ, և ոչ թե իրադարձությունների քմածին մեկնաբանությամբ: Ցավոք սրտի, Կարապետյանը շոշափված ոչ մի հարցում նման փորձ չի արել: «Ընթերցող» Կարապետյանը, ինչպես բխում է նամակի վերջին էջերի երկարաձիգ դատողություններից, ժխտում է դաշնակցության նկատմամբ ունենալիք վերաբերմունքի հարցում ՀԿԿ Կենտկոմում ծավալված ներկուսակցական տարաձայնությունների պատմական իրողությունը, չնայած նրան, որ գրքում պատմա-կուսակցական վավերագրերի, ՀԿԿ Կենտկոմի և ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի որոշումների հիման վրա շարադրված է ներկուսակցական պայքարի պատմությունը: Նա վերանալով իրականությունից, գրում է. «Պետք է վճռական կերպով հայտարարել, որ Հեղկոմի և Կենտկոմի քաղաքական գիծը մասնավորապես դաշնակների նկատմամբ, մշակվեց Կավբյուրոյի կողմից և հիմնականում ճիշտ կիրառվում էր կյանքում, առանձնապես դաշնակների հարցում»: Նախ նկատենք, որ այս ձևակերպումը ճապաղ ու չփոթ է: Ապա սա մի ավելորդ անգամ ապացուցում է, որ Կարապետյանը ծանոթ չէ դաշնակցության նկատմամբ ունենալիք վերաբերմունքի հարցում տեղի ունեցած սուր վեճերի փաստաթղթերին՝ Գ. Կ. Օրջոնիկիձեի, Ս. Կասյանի, Ա. Մռավյանի, Ա. Նուրիջանյանի, Գ. Ալիխանյանի, Գ. Աթարբեկյանի աշխատություններին, նամակագրություններին, բացատրագրերին, ՀԿԿ Կենտկոմի և ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի որոշումներին, որոնք մասամբ բերված են մեր գրքում: Այդ բոլորից լինելով անտեղյակ, կամ անտեղյակ ձևանալով, Կարապետյանը «վճռական կերպով» հայտարարում է, որ մենք իբրև թե փորձում ենք վերանայել Կավբյուրոյի և Հայհեղկոմի ճիշտ քաղաքականության գնահատականը: Ավելին: Ինչպես հատուկ է իրեն, Կարապետյանը աղճատելով փաստաթղթերի մեր շարադրանքը, քաղվածք է արել Կասյանի և Մռավյանի մասին, «սխալմամբ» բաց թողել մեր «ինչպես պարզվում է փաստաթղթերից» բառերը, որպեսզի դրանով իսկ փաստաթղթերի մտքերը վերագրի գրքի հեղինակին, իսկ ինքը հանդես գա Ս. Կասյանի և Ա. Մռավյանի պաշտպանի դերում: Կարապետյանը մեզ կշտամբում է այն բանի համար, որ մենք վերլուծելով պատմական իրողությունը, ասում ենք, որ հունվարի կեսից մինչև փետրվարի 18-ը, հեղկոմի իշխանություն փաստորեն գոյություն չուներ:*

*Ընթերցող Կարապետյան, ինչո՞ւ եք մեղանչում պատմական ճշմարտության առաջ: Եթե ծանոթ չեք պատմությանը, ապա գոնե ուշադիր կարդացեք մեր բերած փաստաթղթերը, չէ՞ որ փաստերը ավելի համառ են, քան ձեր «վճռական հայտարարությունները»:*

*Մենք Կարապետյանի հետ համաձայն ենք միայն մի հարցում, որ պետք է վերջ դնել ՀԿԿ Կենտկոմի և Հայաստանի հեղկոմի 1920—1921 թվականների գործունեության գնահատման հարցում եղած հակագիտական մոտեցմանը և պատմական իրադարձությունների նենգափոխություններին:*

Ս. ԱԼԻԽԱՆՅԱՆ


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

*Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24*

ՎՖ 06062 Պատվեր 2466 Տիրաժ 9710 Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ Ստորագրված է տպագրության 29/X 1966 թ.:

*Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51:*




# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

*ՄԱՐՔՍ Կ. ԵՎ ԷՆԳԵԼՍ Ֆ.*— Ընտիր երկեր: *Երեք հատորով: Հատ. I, Մ., Քաղհրատ, 1966, 540 էջ:*

*ՍՄԿԿ ԿԿ-ին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի պատրաստած այս ժողովածուի I հատորում զետեղված են՝ Լ. Ֆոյերբախի մասին, Կոմունիստական մանիֆեստը, Դասակարգային պայքարը Ֆրանսիայում, Հեղափոխությունը և հակահեղափոխությունը Գերմանիայում և այլ երկեր:*

*ՍԵՐԵԲՐՅԱԿՈՎԱ Գ. Ի.*—Մարքս և էնգելս: *Մ.,* «Молодая гвардия» *հրատ., 1966, 880 էջ:*

*Աշխատավորների ազատագրության նոր տեսության ստեղծողների, պրոլետարիատի առաջին մարտական կուսակցության կազմակերպիչների և նրանց բեղմնավոր գործունեության մասին է գիտա-գեղարվեստական այս գիրքը:*

*ՏԱՐՏԱԿՈՎՍԿԻ Բ. Գ.*—Ֆրիդրիխ էնգելսը միջազգային պրոլետարիատի խորհրդատու և ուսուցիչ *(1875—1895): Մ.,* «Мысль» *հրատ., 1966, 343 էջ:*

*Հեղինակն աշխատել է բացահայտել Ֆ. էնգելսի բացառիկ դերը միջազգային բանվորական ընկերության գործունեության դադարեցմանը հաջորդած քսանամյակում (1875—1895), նրա անխոնջ գործունեությունը միջազգային հեղափոխական ուժերի համախմբման, կազմակերպման և դաստիարակման ուղղությամբ:*

*ԱՖԱՆԱՍԵՎ Վ. Գ.*—Փիլիսոփայական գիտելիքների հիմունքները: *Հանրամատչելի դասագիրք: Ե., «Հայաստան» հրատ., 1966, 469 էջ:*

*Այս խիստ օգտակար դասագրքում լուսաբանված են փիլիսոփայության էությունը, մարքսիստական փիլիսոփայության ծագումը, դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմը և այլ հարցեր:*

*ԼԵՆԻՆ Ի. Վ.*—Քաղաքական համառոտ բառարան: *Ե., «Հայաստան» հրատ, 1966, 327 էջ:*

*Այս բառարանում հեղինակը հավաքել և համառոտ բացատրել է հասարակական-քաղաքական շատ կարևոր բառեր, տերմիններ:*

*ՄՈՎՍԻՍՅԱՆ Ս. Հ.*— Հայաստանը երեկ, այսօր, և վաղը: *Ե., «Հայաստան» հրատ., 1966, 290 էջ:*

*Այս ուրվագծում հեղինակը տեղեկություններ է տալիս Սովետական Հայաստանի, նրա բնության և բնակչության, պատմական անցյալի և սովետական տարիներում նրա տնտեսության ու մշակույթի բուռն ծաղկման և հեռանկարային աննախընթաց վերելքի մասին:*

*ԿՈՄԱՐՈՎ Վ. Ն.*—Գաղտնիքի մյուս կողմում: *Ե., «Հայաստան» հրատ. 1966, 149 էջ:*

*Հեղինակը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ մեզ շրջապատող աշխարհի բոլոր երևույթներն ունեն իրենց բնական պատճառները, գերբնական հրաշքներ գոյություն չունեն, աշխարհը պետք է ըմբռնել մատերիալիստորեն: Գիրքը մերկացնում է տգիտությունն ու սնոտիապաշտությունը:*

Գիտական աթեիզմի հարցեր: *Պրակ I: «Мысль» հրատ., 1966, 472 էջ:*

*ՍՄԿԿ ԿԿ-ին կից հասարակական գիտությունների ակադեմիայի գիտական աթեիզմի ինստիտուտի հրատարակած այս պրակում (այսուհետև յուրաքանչյուր տարի հրատարակվելու է երկու պրակ) զետեղված են հոդվածներ՝ փիլիսոփայության, գիտա-աթեիստական դաստիարակության, սոցիալական փորձի հետազոտման, աթեիզմի ու կրոնի պատմության և այլ հարցերի մասին:*

digitised by A.R.A.R.@

# ԲԱՑՎԱԾ Է

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ»

ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳՐԻ

## 1967 ԹՎԱԿԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*հրապարակում է ՍՄԿԿ և ՀԿԿ պատմության, հեղափոխական շարժման, քաղաքատնտեսության, փիլիսոփայության, արդյունաբերության և գյուղատնտեսության էկոնոմիկայի, միջազգային կյանքի վերաբերյալ հոդվածներ։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է հանրապետությունում կոմունիստական շինարարության պրակտիկան, զետեղում է նյութեր կուսակցական, կոմերիտական, պրոֆմիութենական և սովետական շինարարության, պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական աշխատանքի հարցերի մասին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է գիտության, գրականության ու արվեստի զարգացման հարցերը, տպագրում է կոնսուլտացիաներ, տեղեկանքներ, մամուլի տեսություններ, քննադատական-գրախոսական հոդվածներ, պատասխանում է ընթերցողների հարցերին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*տպագրում է նյութեր եղբայրական սովետական հանրապետությունների, ժողովրդական դեմոկրատիայի երկրների, միջազգային կոմունիստական շարժման մասին։*

### ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ԱՐԺԵՔԸ

Մեկ տարին — 3 ռ.

Վեց ամիսը — 1 ռ. 50 կ.

Երեք ամիսը — 75 կ.

### ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝

*Կապի գրասենյակներում, բաժանմունքներում, «Սոյուզպեչատ»-ի քաղաքային բաժիններում, գործարաններում, ֆաբրիկաներում, հիմնարկ-ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, սովխոզներում, կոլտնտեսություններում՝ մամուլի հասարակական լիազորների միջոցով։*

*«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»*